# ԿՇԻՌ

## ՄԱՐԴԿԱՅԻՆ ԻՐՈՂՈՒԹԵԱՆՑ

ԿԱՄ

## ԳՈՐԾՆԱԿԱՆ ՍԿԶԲՈՒՆՔ

ԲԱՐՈՅԱԿԱՆՈՒԹԵԱՆ

Altunean Karapet

# ԿՇԻՌ

## ՄԱՐԴԿԱՅԻՆ ԻՐՈՂՈՒԹԵԱՆՑ

ԿԱՄ

## ԳՈՐԾՆԱԿԱՆ ՍԿԶԲՈՒՆՔ

## ԲԱՐՈՅԱԿԱՆՈՒԹԵԱՆ

Kshir mardkayin …



ՅՕՐԻՆԵԱԼ

**Ի ԿԱՐԱՊԵՏԷ ԱԼԹՈՒՆԵԱՆ ԱԿՆԵՑԻՈՅ**

ՆՊԱՍՏԻՒՔ

**ՈՒՍՈՒՄՆԱՍԵՆԱՑ ԲԱՐԵՐԱՐԱՑ**

240 p. + ?



Կ. ՊՕԼԻՍ
ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Ռ. ՔԻՒՐՔՃԵԱՆ
— 1866 —

Ի ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԵԱՆ

ՍՐԲՈՑ ԵՐՈՒՍԱՂԵՄԻ

# ՏԵԱՌՆ ՏԵԱՌՆ ԵՍԱՅԵԱՅ

ՍՐԲԱԶԱՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ

ԵՒ

Ի ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԵԱՆ

ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼՍՈՑ

# ՏԵԱՌՆ ՏԵԱՌՆ ՊՕՂՈՍԻ

ՍՐԲԱԶԱՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Ընթերցեալ մեր 'ի պատմութիւնս ազգաց հնոց եւ նորոց, եւ անձամբ եւս հմուտ եւ ականատես լեալ բազմադիմի վնասուց որ դիպեալ են եւ դիպին իսկ հանապազօր բազմաց, մտադիւր եւ խնամով զմտաւ ածեալ քննէաք զպատճառս նոցա։ Արդարեւ զարմանք են տեսանել զարագ արագ եւ զյանկարծադէպ անկումն մեծամեծ տանց ազնուականաց, զաղքատանալ մեծատանց, զկորուստ վաճառականաց եւ զսեղանաւորաց, զգձձել իշխանաց, նա մանաւանդ զախտս եւ զհիւանդութիւնս եւ ըզ մահս տարաժամս։ Այլ եթէ միտ դիցուք հաւաստեաւ սկզբան եւ պատճառաց այնր ամենայնի, գտանեմք զի բազում անգամ եւ գրեթէ հանապազ իսկ տգիտութիւն եւ անբարոյականութիւն են որ նիւթեն եւ պատրաստեն եւ ածեն 'ի վերայ չարիս եւ աղէտս անհնարինս։ Վասն այսորիկ մտախոհ լեալ ամս բազումս եւ 'ի փորձ իրացն եւս մատուցեալ՝ ջան յանձին կալաք ածել յայտ զօրէնս եւ զսկզբունս ճշմարտի բարոյականութեան։ Վախճան բազմամեայ քննութեան մերոյ եղեւ բովանդակեալ ածել յարդիւնս զդրութիւնս զայս զորոյ զհամառօտն պատկեր ընծայեցաք 'ի լոյս ամօք ինչ յառաջ որում եդաք անուն Կշիռ մարդկային իրողութեանց։ Յորդորեալ ապա 'ի խնդրանաց արանց

ոմանց նշանաւորաց ազգիս յորոց մի էր բարեաց յիշատակաց արժանի առաքելաշնորհ հայր ազգիս Յակոբոս Պատրիարք, որ եւ իւրուրոյն նամակաւ քաջալերեաց զմեզ, ձեռն արկանել յօրինել զընդարձակ մեկնութիւն դրութեան մերոյ զոր եւ աւասիկ ընծայեմք 'ի լոյս առատաձեռն եւ յօժարական նպաստիւք ուսումնասէր բարեկամաց որոց բարեախորժ կամացն չբաւեմք յայտնել զշնորհակալու միտս մեր։

Աստ արժան է մեզ համառօտիւ յանդիման կացուցանել զուրուագիծ դրութեան մերոյ։ Զհաւատ, զյոյս եւ զսէր որ են աստուածաբանական առաքինութիւնք՝ դնեմք մեք իբր հիմն եւ խարիսխ ամենայն իրողութեանց մարդոյ այնու զի է բանաւոր օժտեալ հոգւով, որոյ բանական կարողութիւնք են միտք եւ կամք, իբրեւ սկզբունք բնական, բարոյական կենաց նորա։ Նա որ զուրկ է 'ի հաւատոյ, 'ի յուսոյ եւ 'ի սիրոյ՝ խաբի, վնասի եւ 'ի դերեւ ելանէ յամենայն ձեռնարկութիւնս իւր, եթէ իցէ ձեռնարկութիւնն 'ի բնականս, եթէ յիմացականս կամ 'ի բարոյականս եւ եթէ 'ի քաղաքականս կամ յընկերականս։ Երեքին այնոքիկ՝ հաւատք, յոյս եւ սէր՝ պարտին կից ընթանալ զի յաջողեսցի մարդ յամենայնի։ Սէր առանց յուսոյ է յարումն ինչ կամ բերումն որ եւ յանշունչս եւ յանզգայս, որպէս 'ի բոյսս եւ 'ի մետաղս, գտանի. այլ սէր բանաւոր մարդոյ, եւս եւ զգայուն կենդանեաց, է միշտ խառն ընդ յուսոյ. այն է՝ ծագէ եւ դայ յառաջ յակնկալութենէ վայելելոյ ինչ։ Ապա յայտ է զի եթէ ակընկալութիւնն իցէ ընդունայն եւ սին առանց հաստատութեան, սէրն որ առ իրն ակնկալեալ՝ է նոյն-

պէս անհաստատ եւ յողդողդ, զի 'ի դերեւ ելանել ակնկալութեանն եւ յուսոյ՝ ցնդի եւ անհետ լինի սէրն՝ կամ փոխի յատելութիւն եւ 'ի գարշանս: Այլ վրիպումն յակնկալութենէ եւ ցնդումն կամ փոփոխումն այն սիրոյ՝ չլինի առանց մեծի վնասու եւ կորստեան: Արդ զի զերծ գտցի մարդն 'ի վնասուց աստի եւ 'ի կորստենէ, հարկ է զի ակնկալութիւն նորա եւ յոյս իցէ աներկեւան, յորմէ եւ սէրն լինի ճշմարիտ եւ անյողդողդ: Իսկ աներկեւանութիւն յուսոյ կամ հաստատութիւն ակնկալութեան ոչ այլով իւիք լինի եթէ ոչ հաւատով: Հաւատով իմանամք մեք զգիտութիւն իրաց եթէ բնականաց, եթէ իմացականաց կամ բարոյականաց եւ եթէ քաղաքականաց. այնպէս զի յայս միտս, այնչափ կատարեալ են հաւատք մարդոյ, որչափ ընդարձակ եւ կատարեալ է գիտութիւն նորա: Որ ունի զայս հաւատս՝ ապաքէն հաստատուն լինի ակնկալութիւն նորա, կամ որպէս սովոր եմք ասել յընթացս գործոյս, աներկեւան լինի յոյս նորա: Եւ զի հաւատք, այն է՝ գիտութիւն, մարդոյ միայն որ բանաւորն է՝ է սեպհական եւ ոչ զգայուն կենդանեաց, ապա հաւատով մանաւանդ քան յուսով եւ սիրով ընտրեալ որոշի մարդն 'ի զգայականաց եւ յանշնչոց, ընդ որս իբրեւ զգայուն եւ մարմնաւոր ունի ինչ նմանութիւն, այլ ոչ հաւասարութիւն, այնու զի է բանաւոր եւ ընդունակ հաւատոյ. ապա թէ ոչ հաւասարէ նոցա: Ապաքէն լինի զգայուն կենդանի՝ եթէ յոյս նորա իցէ առանց հաւատոյ. լինի անշունչ բնութիւն ինչ՝ եթէ սէր նորա իցէ առանց յուսոյ:

Ը

Հաւատք, յոյս եւ սէր որ պարտին բխել կամ ծագել 'ի միմեանց, 'զի մին է ծնունդ միւսոյն, պարտին ունել կից թէութիւնս ինչ, նշանս եւ յատկութիւնս. զի 'ի սոցունց կախեալ կայ ճշմարտութիւն եւ սուտութիւն նոցա: Ի լինել հաւատոյ, յուսոյ եւ սիրոյ միացեալ եւ կից ընդ այսց հանգամանաց, առարկայ նոցա մարդն բանական՝ վայելէ զարգասիս երեցունցն: Զայս ամենայն տեսանէ ընթերցողն 'ի ցուցակին զոր կչիռ մարդկային իրողութեանց կոչեցաք եւ գտանէ զհամառօտ մեկնութիւն նորա 'ի բանական լուծման, իսկ զընդարձակն մեկնութիւն սորա կամ զբուն դրութիւն մեր պարզեալ եւ ցուցեալ 'ի չորս գիրս որ զկնի:

Զէ մեզ անկ կալ եւ գովել զօգուտ եւ զծառայութիւն զոր մարթի քաղել ամենայն այր հանճարեղ եւ զգաստ 'ի մատենէ աստի. եւ կէտ նպատակի մերոյ ոչ այլ ինչ էր, եթէ ոչ ցուցանել զկարեւորութիւն զհետ լինելոյ միջոցաց որ կարեն, որչափ ինչ հնար է, զերծ պահել զմարդ բանաւոր 'ի վտանգաց եւ 'ի չարեաց մեծամեծաց յորս գահավէժ արկանէ զնոսա սէր առանց յուսոյ, այն է՝ յարումն կամ բերումն կոյր, եւ սէր եւ յոյս առանց հաւատոյ, այն է՝ դիմումն անխորհուրդ 'ի գործ որոյ վախճան է անկանել 'ի խաբս եւ լինել նշաւակ ամբաւ վտանգաց եւ աղէտից:

Գիտեմք զի մթին իմն, եւ իբր այն թէ չնչին ինչ եւ ոչինչ իմն թուեսցի աշխատութիւն եւ գործ մեր ոմանց: Այլ այս դիպեսցի անմտակիտեաց ոմանց որ են նշաւակ երից այսոցիկ. տգիտութեան, անձնահաճ զուռողութեան եւ խաբէութեան: Զմեն ինչ

զարմանք. եթէ տգէտք եւ ռամիկք չհամարեցին ինչ զայս մեր վաստակ, զի չեն կիրթ միտք նոցա 'ի քննութիւն եւ յընտրութիւն սկզբանց եւ ճշմարտութեան ։ Անձնահաճք եւ գոռոզք սովոր են արհամարհանօք հայել յայն ամենայն որ նոր ինչ է վասն նոցա · զի այսպիսիք ըստ հին իմաստակաց ոմանց սովոր են սուտ կամ ոչինչ համարել զոր ինչ ինքեանք ոչ գիտեն, եւ նախատինս եւ ամօթ անձանց համարել ուսանել՝ ինչ յայլմէ ։ Իսկ խաբեբայք եւ խարդախք որոց գործ է զճրագ ընդ գրուանաւ դնել՝ վասն անձանց եւ խափանումն շահուց իւրեանց համարին զտարածել եւ ունել մուտ ճշմարիտ սկզբանց 'ի միտս , 'ի բարս եւ 'ի վարս հասարակաց ։ Վասն երկուց կարգացս այսոցիկ , ամբարտաւանից եւ խաբեբայից , ասէ Տէրն թէ Ինքեանք ոչ մտանեն եւ որոց մտանելն կամին չտան թոյլ մտանել ։

Մեք ոչ առ այսպիսիս ուղղեմք զմատեանս , այլ առ անձինս լաւախորհուրդս եւ լաւակամս որ պատրաստ եւ յօժար լեալ ընդունել զճշմարտութիւն , 'ի նոյն ինքն 'ի ճշմարտութիւն հային , եւ չէ ինչ փոյթ նոցա , յումմէ եւ գայցէ այն , եթէ աւագ ոք իցէ եւ եթէ դուզնաքեայ , եթէ նշանաւոր ոք եւ եթէ աննշան , եթէ հրապարակածանօթ ոք եւ քարոզեալ յատեանս եւ 'ի ժողովս , եւ եթէ յանկեան ուրեք առանձնացեալ 'ի խոկումն բարւոյն եւ ճշմարտի ։



## ԲԱՆԱԿԱՆ ԼՈՒԾՈՒՄՆ ՑՈՒՑԱԿԻ

ՈՐ ԿՈՉԻ

# ԿՇԻՌ

## ՄԱՐԴԿԱՅԻՆ ԻՐՈՂՈՒԹԵԱՆՑ

ՀԱՆԴԵՐՁԵԱԼ *եմք ընդարձակագոյնս ճառել 'ի չորս գիրս զերից մարդկային իրողութեանց, զբնականէն, զբարոյականէն և զքաղաքականէն, աստ բովանդակեսցուք զամենայն 'ի համառօտ յօդուածս, որ և լիցի իբրև լուծումն կամ մեկնութիւն ցուցակին որպէս տեսանես զկնի, 'ի պէտս և 'ի դիւրութիւն որոց համառօտիւ և ամփոփ իմն կամիցին հասու լինել մտաց և նպատակի նորա ։*

*Որպէս յայտ է 'ի ցուցակէն, բովանդակ կշիռ մարդկային իրողութեանց ամփոփեալ բովանդակի 'ի մէջ ուղղանկիւն երեքանկեան, յորոյ 'ի ծայրն ուր միանան երկոքին կողմանք երեքանկեան՝ է իբրև միջավայր կամ կեդրոն, ուր կայ նշանագիրն Կ ։*

*Աստ շատ լիցի ասել թէ Կ տառն 'ի կեդրոնի անդ երեքանկեան նշանակէ կենդանի և է սկզբնագիր նորա ։*

## ՅՕԴՈՒԱԾ Ա․

*Յաղագս կենդանի մարդոյ եւ բանական յատկութեանց նորա ։*

—

Կենդանի մարդն է բանական, ապա ունի հոգի որոյ գլխաւոր կարողութիւնք են միտք և կամք, ուստի և կարէ տեսանել, այսինքն՝ իմանալ, դատել, կշռել. և զի կարող է դարձեալ՝ առնել, կրել, ունել, այսինքն ըմբռնել, ապա պարտի ունել հաւատս, 'ի հաւատոյ անտի կրել յոյս, զորոց, այսինքն՝ զհաւատոյ և զյուսոյ զհետ գայ առնել սէր ։ Այնպէս զի որ ոք ոչ սիրէ՝ ոչ յուսայ. և որ ոչն յուսայ՝ չունի հաւատս. և որ ոչն ունի հաւատս՝ չէ մարդբանական, այլ կամ մոլեգնեալ ոք է և կամ կենդանի ինչ զգայուն ։

## ՅՕԴՈՒԱԾ Բ․

*Յաղագս որպիսութեան հաւատոյ, յուսոյ եւ սիրոյ, թէ որպիսի՞ պարտին լինել սոքա 'ի մեզ ։*

—

Որպէս տեսանես 'ի ցուցակին, հաւատք պարտին լինել հաստատուն առ ճշմարիտն, յոյս՝ աներկեւան ըստ չափոյն, սէր՝ կատարեալ 'ի բարին ։ Որ ոչն ունիցի այսպիսի հա-

ւատս, գլոյս և զսէր՝ ոչ է նա մարդ բանական ճշմարիտ, ուղիղ և կատարեալ։

## ՅՕԴՈՒԱԾ Գ.

Յաղագս բաժանման հաւատոյ, յուսոյ եւ սիրոյ։

Գործք կամ ներգործութիւնք հաւատոյ, յուսոյ և սիրոյ մի ըստ ինքեան այլ յառաջկայից իւրեանց բաժանին իւրաքանչիւրն յերիս ազգս, այն է 'ի բնական, յիմացական կամ 'ի բարոյական և 'ի քաղաքական։

Բնական հաւատս կոչեմք զծանօթութիւն բնական իրաց զոր 'ի ձեռն գիտութեանց և արուեստից ստանամք, դիտողութեամբք, զննութեամբ և բանիւ, այն է՝ իմաստասիրութեամբ։ Այս հաւատք ոչ այլ ինչ են եթէ ոչ հմտութիւն կամ տեղեկութիւն։ Եթէ գիտութիւնս այս իցէ զքաղաքական իրաց՝ կոչի ըստ մեզ քաղաքական հաւատք որ ոչ այլ ինչ է եթէ ոչ վստահութիւն ըստ սովորական լեզուի։ Եթէ գիտութիւնն իցէ զվերացեալ կամ զիմացական և զբարոյական իրաց, ըստ մեզ կոչի իմացական կամ բարոյական հաւատք։ Իսկ եթէ իցէ գիտութիւն զբնական իրաց՝ կոչի ըստ մեզ բնական հաւատք։ Զնոյն պարտ է իմանալ զյուսոյ և զսիրոյ։ Քանզի յայտ է թէ 'ի բնական հաւատոց կրեմք բը-

նական յոյս և սէր, 'ի քաղաքականէն՝ քաղաքական, և յիմացականէն կամ 'ի բարոյականէն՝ իմացական կամ բարոյական։ Նոյնպէս յունել մեր բնական հաւատս և 'ի կրել մեր բնական յոյս՝ սէրն զոր առնեմք լինի բնական. յունել մեր քաղաքական հաւատս և 'ի կրել մեր քաղաքական յոյս՝ սէրն զոր առնեմք՝ լինի քաղաքական, յունել մեր իմացական կամ բարոյական հաւատս և 'ի կրել մեր իմացական և բարոյական յոյս՝ սէրն զոր առնեմք լինի իմացական կամ բարոյական։



## ՑՕԴՈՒԱԾ Դ.

**Ցաղագս շարագրութեան հաւատոյ, յուսոյ եւ սիրոյ։**



Նախ՝ շարագրութիւն է կարգ թուոց շարելոց ըստ թուաբանական յառաջատութեան, որպէս 1 2 3 4 5 . . . ։

Իսկ վասն շարագրութեան հաւատոյ յուսոյ և սիրոյ պարտ է գիտել զի, որպէս տեսանես 'ի ցուցակի անդ, սէրն ունի զթուանշանն 1. քանզի հասարակ է բանականաց և զգայնոց, ևս և անշունչ և անզգայ իրաց։ Յոյսն ունի զթուանշանն 2. քանզի է սա միջին իմն

’ի մէջ սիրոյ և հաւատոյ. և է հասարակ բանականաց և զգայնոց, այլ ոչ անշնչոց և անըղդայից։ Հաւատք ունին զԹուանշանն 3. զի զմիւս երկուսին, զսէր և զյոյս, բովանդակեն յինքեանս. ոչ են հասարակ ամենայն արտադրելոց, և ոչ իսկ զգայնոց, այլ յատուկ են միայն բանականաց։



## ՅՕԴՈՒԱԾ Ե.

*Յաղագս նոցին իսկ չարազոյգ Թուանշանաց որ եդեալ կան ’ի ներքոյ Թէութեանց հաւատոյ, յուսոյ եւ սիրոյ, եւ ընդէր։*



Որպէս տեսանես ’ի ցուցակի՝ նոյն չարազոյգ Թուանշանք եդեալ են ’ի ներքոյ Թէութեանց հաւատոյ, յուսոյ և սիրոյ։ Զոր օրինակ՝ ’ի ներքոյ ճշմարտութեան որ է մին ’ի Թէութեանց սիրոյ՝ եդեալ կայ Թուանշանն 1. ’ի ներքոյ սրբութեան որ է միւս Թէութիւն սիրոյ՝ եդեալ է Թուանշանն 2. և ’ի ներքոյ արդարութեան որ է վերջին Թէութիւն սիրոյ՝ եդեալ է Թուանշանն 3. ուստի և երեքին Թէութիւնքս՝ ճշմարտութիւն, սրբութիւն և արդարութիւն են չարազոյգ, այն է՝ 1 2 3. և պատճառ այսր չարազուգութեան այն է՝ զի

ճշմարտութիւնն է թէութիւն բարոյական սիրոյ, վասն այնորիկ ունի զթուանշանն 1. զի է առաջին 'ի կարգի. սրբութիւնն է թէութիւն բնական սիրոյ, վասն որոյ է միջին 'ի կարգի. իսկ արդարութիւնն է թէութիւն քաղաքական սիրոյ որ է վերջին 'ի կարգի։

Եթէ զմի մի 'ի թէութեանց սիրոյ համեմատեսցուք ընդ նոյնատեսակ թէութեանցյուսոյ և հաւատոյ, յայնժամ լինին տարագոյգ ընդ միմեանս, այսինքն՝ լինին 111, 222, 333. այսպէս են՝ ճշմարտութիւն, հոլովումն ժամանակաց և արիութիւն. երեքին ևս են տարագոյգք, այն է՝ ունին զթուանշանն 1. զի երեքին ևս են բարոյական կարգի թէութիւնք. ճշմարտութիւնն՝ սիրոյ. հոլովումն ժամանակաց՝ յուսոյ, և արիութիւնն՝ հաւատոյ։ Զնոյն իմա և զայլոց, այն է՝ զթէութեանց բնական և քաղաքական կարգի սիրոյ, յուսոյ և հաւատոյ, որպէս տեսանես 'ի ցուցակի։



## ՑՕԴՈՒԱԾ Զ.

Թէ զի՞նչ պարգեւեն հաւատք, յոյս եւ սէր։



Քաղաքական հաւատք ընդ իւրոց համանուանց, այն է՝ քաղաքական յուսոյ և սիրոյ

պարգեւէ յաջողութիւն ստորին. և ստորին ասի յաջողութիւնս այս զի է յաջողութիւն մարմնաւոր պիտոյից մարդոյ, որ են՝ կերակուր, հանդերձ, բնակութիւն, այլովքն հանդերձ, լի ու լի և անպակաս մինչև ցմահ։

Բնական հաւատք ընդ իւրոց համանուանց, այն է՝ բնական յուսոյ և սիրոյ, պարգեւէ յաջողութիւն միջին։ Յաջողութիւնս այս կոչի միջին, զի է յաջողութիւն իրաց որ ՚ի վեր և պատուական համարին առ բնական մարդիկ, որպիսի են փառք, պատիւ, իշխանութիւն, այլովքն հանդերձ, հանդերձ բնական պիտոյիւք, մինչեւ ցմահ, և յետ մահուան մարդոյ յորդւոց յորդիս։

Իմացականն կամ բարոյական հաւատք, ընդ իւրոց համանուանց, այն է՝ բարոյական յուսոյ և սիրոյ, պարգեւէ յաջողութիւն վերին. և յաջողութիւնս այս կոչի վերին, քանզի է փառաւոր և սքանչելի, վասն զի է յաւերժական և անտի կենաց, զոր մարդն աստէն իսկ սկսեալ վայելել մինչեւ ցմահ, և յետ մահուանն եւս վայելէ փառաւորագոյնս և վայելչագոյնս և լի բովանդակ։



## ՑՕԴՈՒԱԾ Է·

*Թէ որպիսի թէութեամբք մարթ իցէ ստանալ զբարիսն որ 'ի վերոյն նշանակեցան ։*

—

Նախ՝ ժրութեամբ. և ժրութիւնն պարտի լինել 'ի միտս, 'ի գործս և 'ի բանս ։

Երկրորդ՝ խոհեմութեամբ. և սա ևս պարտի լինել 'ի միտս, 'ի գործս և 'ի բանս ։ Խոհեմութիւնն պարտի լինել դարձեալ կից ընդ ժրութեան ։

Երրորդ՝ արիութեամբ. սա պարտի լինել 'ի սրտի, 'ի գործս և 'ի բանս ։. Արիութիւն պարտի լինել զոյգ ընդ ժրութեան և ընդ խոհեմութեան ։

Չորրորդ՝ զհամակիրն իւր ճանաչելով. և զի՞նչ ինչ պարտ իցէ մեզ ճանաչել 'ի համակրին. նախ զմիտսն, այսինքն՝ թէ իցէ՞ համամիտ ընդ մեզ. երկրորդ անգամ՝ զկամսն, այն է՝ թէ իցէ՞ համակամ ընդ մեզ. երրորդ անգամ՝ զխորհուրդս նորա, թէ իցէ՞ համախորհուրդ ընդ մեզ ։ Եթէ համակիրն գտանիցի այսպէս համամիտ, համակամ և համախորհուրդ, պարտ է հպել 'ի նա և ընդելնուլ կամ յարել ժրութեամբ, խոհեմութեամբ և արիութեամբ ։

Հինգերորդ՝ գտանելով զյարմարութիւն

երկրին․ Նախ՝ բնաբանապէս՝ (ֆիզիքապէս) զկլի֊մայն, զդրութիւն և զհայեցողութիւն երկրին․ երկրորդ բարոյապէս՝ զբարս և զվարս մարդկան տեղւոյն․ երրորդ՝ զբերս և զվաճառս երկրին։ Ի գտանել զյարմարութիւն երկրին պարտ է կից լինել ժրութիւն, խոհեմութիւն, արիութիւն և հանգամանք ճանաչելոյ զհամակիրն։

Վեցերորդ՝ որոշելով զհոլովումն ժամանակաց․ զի հոլովումն ժամանակաց է որ փոփոխէ զանսանոց չնչաւորաց, մանաւանդ ըզ մարդկան բանաւորաց զբարս և զվարս, և զամենայն արդեանց և ծննդոց զառատութիւն և զնուազութիւն, զխաղաղութիւն և զխռովութիւն այլովքն հանդերձ։ Յորոշել զհոլովումն ժամանակաց պիտոյ են՝ ժրութիւն, խոհեմութիւն, արիութիւն, գիտել զհանգամանս ճանաչելոյ զհամակիրն և գտանելոյ զյարմարութիւն երկրին։

Եօթներորդ՝ արդարութեամբ․ և արդարութեան պարտի երեւել ՚ի դատել, ՚ի կշռել և յառնել մերում, և ընդ սմա պարտի կից լինել ժրութիւն, խոհեմութիւն, արիութիւն, ճանաչել զհամակիրն ըստ անձին, գտանել զյարմարութիւն երկրին ըստ տեղւոյն և որոշել զհոլովումն ժամանակին ըստ քանակութեան։

Ութերորդ՝ սրբութեամբ․ և սրբութեան

պարտ է լինել 'ի սրտի , 'ի բանս և 'ի գործս . և ընդ սմին եւս պարտին կից լինել ժրութիւն , խոհեմութիւն , արիութիւն , ճանաչումն համակրի , գտանել զյարմարութիւն երկրին , որոշել զհոլովումն ժամանակին և արդարութիւն :

Իններորդ՝ ճշմարտութեամբ . և ճշմարտութեան պարտի լինել 'ի միտս , 'ի կամս , 'ի գործս և 'ի բանս . Եւ ընդ ճշմարտութեան ևս պարտին կից գտանել նախընթաց ութ թէութիւնք , ժրութիւն , խոհեմութիւն , այլովքն հանդերձ , որպէս վասն միոյ միոյ 'ի թէութեանց ասացաւ թէ պարտի զոյգ լինել ընդ նախորդքն :

Ահաւասիկ թէութիւնքս այսոքիկ են միջոցք վայելելոյ յերեսին յաջողութիւնս , այն է՝ 'ի ստորնումն , 'ի միջնում և 'ի վերնում :



## ՅՕԴՈՒԱԾ Ը.

Յաղագս առարկայի ընդհանուր հաւատոյ , յուսոյ եւ սիրոյ :



Ամենայն ինչ յառարկայէ անտի ուրմէ ճանաչի , նոյնպէս և հաւատք , յոյս և սէր ճանաչին յառարկայէ իւրեանց . Արդ առարկայն

հաւատոյ է մարդն բանական որ ունի ժրութիւն, խոհեմութիւն, արիութիւն. սոքօք ճանաչին հաւատք։ Առարկայ յուսոյ յաջողելոյ 'ի հաւատոց է նոյնպէս մարդն բանական որ գիտէ ճանաչել զհամակիր իւր ; գտանել զյարմարութիւն երկրին և որոշել զհոլովումն ժամանակին. սոքօք ճանաչի յոյսն որ 'ի հաւատոց։ Առարկայ սիրոյ յաջողելոյ 'ի հաւատոյ՝ է նոյնպէս մարդն բանական որ ունի արդարութիւն, սրբութիւն և ճշմարտութիւն, և 'ի սոցունց ճանաչի սէր։



## ՅՕԴՈՒԱԾ Թ.

Յաղագս նշանաց ընդհանուր հաւատոյ, յուսոյ եւ սիրոյ։

—

Հաւատք, յոյս, սէր ոչ միայն 'ի Թէութեանց, այլ և 'ի նշանաց եւս ճանաչին։ Արդ նշան ընդհանուր հաւատոյ է հաւատարմութիւն հանդերձ բերկրութեամբ և գթութեամբ։

Նշան ընդհանուր յուսոյ է՝ բերկրութիւն հանդերձ գթութեամբ և հաւատարմութեամբ։

Նշան ընդհանուր սիրոյ է՝ գթութիւն հանդերձ հաւատարմութեամբ և բերկրութեամբ։



## ՅՕԴՈՒԱԾ Ժ․

Յաղագս ճանաչման ընդհանուր հաւատոյ, յուսոյ եւ սիրոյ։

—

Միւս եւս միջոց ճանաչելոյ զհաւատս, զյոյս և զսէր, է ճանաչումն նոցա։ Ճանաչմունս հաւատոյ, յուսոյ և սիրոյ սովոր եմք կոչել մեք զյատկութիւնս ինչ. որպէս։

Ճանաչումն ընդհանուր հաւատոյ է՝ ողջախոհութիւն կամ ողջմտութիւն հանդերձ համբերութեամբ և թողութեամբ։

Ճանաչումն ընդհանուր յուսոյ է համբերութիւն հանդերձ թողութեամբ և ողջախոհութեամբ։

Ճանաչումն ընդհանուր՚ սիրոյ է՝ թողութիւն հանդերձ ողջախոհութեամբ և համբերութեամբ։



## ՅՕԴՈՒԱԾ ԺԱ․

Յաղագս յատկութեանց ընդհանուր հաւատոյ, յուսոյ եւ սիրոյ։



Բաց ՚ի թէութեանց, ՚ի նշանաց և ՚ի ճանաչմանց զորոց ասացաք, հաւատք, յոյս և

սէր ունին և առանձին հանգամանս ինչ զորս մեք մասնաւոր ինչ միօք յատկութիւնս կոչել ՚ի դէպ համարեցաք ։

Արդ յատկութիւն ընդհանուր հաւատոյ է՝ մեծանձնութիւն հանդերձ պատրաստութեամբ և ողորմութեամբ ։

Յատկութիւն ընդհանուր յուսոյ է՝ պատրաստութիւն հանդերձ ողորմութեամբ և մեծանձնութեամբ ։

Յատկութիւն ընդհանուր սիրոյ է ողորմութիւն հանդերձ մեծանձնութեամբ և պատրաստութեամբ ։



## ՅՕԴՈՒԱԾ ԺԲ.

Յաղագս արգասեաց ընդհանուր հաւատոյ , յուսոյ եւ սիրոյ ։



Զիք ինչ ճշմարիտ և իրական որ ոչ ունիցի արդիւնս ինչ կամ արգասիս . ապա հաւատք , յոյս և սէր եւս , եթէ իցեն ճշմարիտք , պարտին ունել զիւրեանց արգասիս ։ Արդ իւրաքանչիւրն ունի զիւր առանձին արգասիս ։

Արգասիք քաղաքական հաւատոյ , յուսոյ և սիրոյ են՝ անդորրութիւն մտաց , երկարու-

*թիւն կենաց, և ստացուած արդար դարուց 'ի գալու.*

*Արդասիք բնական հաւատոյ և սիրոյ են՝ արիութիւն և հանճար, բերկրութիւն սրտի, և իշխանութիւն երկրի ազդէ յազգ.*

*Արդասիք իմացական կամ բարոյական հաւատոյ, յուսոյ եւ սիրոյ են՝ ձայն երանաւէտ, տեսութիւն աստուածային և վայելումն անզրաւ փառաց.*

*Զայս ամենայն զոր յերկոտասան յօդուածս համառօտիւ ամփոփեցաք, և զոր տեսանես 'ի ցուցակի անդ՝ գտցես լայնագոյնս և ընդարձակագոյնս մեկնեալ և յայտ արարեալ 'ի չորեսին գիրս որ զկնի.*



թիւն կենաց, և տուացուած արդար դատուց ՚ի դարս ։

Արդասիք բնական հաւատոյ և սիրոյ են՝ արիութիւն և հանճար, բերկրութիւն սրտի, և իշխանութիւն երկրի ազգէ յազգ ։

Արդասիք իմացական կամ բարոյական հաւատոյ, յուսոյ եւ սիրոյ են՝ ձայն երանաւէտ, տեսութիւն աստուածայնն և վայելումն անզրաւ փառաց ։

Զայս ամենայն զոր յերկրաւոր յօդուածս համառօտիւ ամփոփեցաք, և զոր տեսանես ՚ի ցուցակի անդ՝ գտցես լայնագոյնս և ընդարձակագոյնս մեկնեալ և յայտ արարեալ ՚ի չորեսին գիրս որ զկնի ։



# ԳԻՐՔ ԱՌԱՋԻՆ



## ԳԼՈՒԽ Ա.

*Ցաղագս թէ զինչ իցէ կենդանին։*



Ամենայն գոյացութիւն աճուն, շարժուն և զգայուն յինքենէ՝ է կենդանի։ Այսու մտօք առեալ՝ կենդանին բաժանի յերիս. 'ի Տնկականս, 'ի Զգայականս և 'ի Բանականս։

Տնկական կենդանիք են տնկականք և բուսականք։ Սոքա կոչին կենդանիք, զի ունին զօրութիւն կամ կենդանութիւն տնկական, և նովին զօրութեամբ աճին, և շարժին տարածական շարժմամբ, այլ ոչ զգան և ոչ իմանան։

Զգայուն կենդանիք են բուն կենդանիք որ և շնչաւորք կոչին, որպէս սողունք, թռչունք, չորքոտանիք և այլք որ 'ի կարգին։ Սոքա ոչ միայն աճին տնկական զօրութեամբ և շարժին տարածական շարժմամբ ըստ օրինակի բուսոց և տնկոց, այլ և շարժին ևս տեղափոխ շարժմամբ, և ունին ոգի զգայական որով զգան, և 'ի զգալոյ անտի է զի ցանկան և ցասնուն։ Սոքա որպէս աճմամբ կամ տարածական շարժմամբ հանգոյն են տնկակա-

նաց , նոյնպէս տեղափոխ շարժմամբ և զգալով նման են բանականաց , այլ ոչ բանականութեամբ որով տարբերին 'ի նոցանէ , որպէս տեսցուք ։

Բանական կենդանիք եմք մեք մարդիկ որ նախ ըստ նմանութեան տնկականաց ունիմք ոգի տնկական որով և աճիմք և տարածիմք · և ըստ օրինակի զգայականաց ունիմք զգայական ոգի՝ որով ցանկամք և ցասնումք , այն է՝ ախորժանս կամ չախորժութիւն իմանամք · այլ 'ի վեր քան զնոսա ունիմք հոգի բանական , զոր նոքա ոչ ունին , և որով տարբերիմք մեք 'ի նոցանէ և նոքա 'ի մէնջ ։

Բանական հոգիս այս ունի կարողութիւնս որ են թուով և ընդհանուր բանիւ միտք կոչին · այն է՝ Ազդումն , իմացումն , Ըմբռնումն , Գաղափար , Հանճար , Ճանաչումն , Ընտրութիւն , Դատել , Կշռել զորոյ զհետ գան ազատ կամք ։ Եւ զի բանականն հոգի և կարողութիւնք նորա մարդոյ միայն սեպհական են , վասն այնորիկ մարդ 'ի մէջ ամենայն կենդանեաց կատարելագոյն և ազնուագոյն է · նա մանաւանդ նոքիմբք է զի մարդ կոչի պատկեր Աստուծոյ , և 'ի մէջ ամենայն կենդանեաց է միայն ընդունակ վարձուց և պատժոց , փառաց և անարգութեան ։

Այժմ տեսցուք առանձինն թէ զի՞նչ իցէ մարդ և սահման նորա , և յորում կայանայցէ

բանականութիւն նորա ։ Զանկականս և զզգայականս թողեալ որ արտաքոյ են նպատակի մերոյ, առցուք խօսել զբանական կենդանւոյ ։

---

## ԳԼՈՒԽ Բ.

*Թէ զի՞նչ իցէ սահման մարդոյ եւ յորում կայանայցէ բանականութիւն նորա ։*

---

Նախնի և արդի փիլիսոփայք սահմանեն զմարդ կենդանի բանական ։ Սահմանս այս է տրամաբանական բաղկացեալ 'ի սեռէ և 'ի տարբերութենէ ։ Կենդանին է սեռ, և բանականութիւնն է տարբերութիւն մարդոյ ։

Դարձեալ սահմանի մարդ կենդանի բանական և ծիծաղական, յաւելեալ 'ի վերայ և զծիծաղականութիւնն որ չիք յայլս 'ի կենդանեաց, այլ է յատկութիւն մարդոյ ։

Կենդանին անուն ունի և այլ միտս. զի նշանակէ և զայն որ չէ մեռեալ ։ Պարտ է գիտել զի միայն կենդանի մարդն է բանական, զի հոգին բանական 'ի կենդանւոջ միայն է և ոչ 'ի մեռեալն որ մարմին լոկ է և դի կոչի ։

Այլ յորում կայանայցէ բանականութիւն մարդոյ ։ Ցայտ է թէ բանական ասելով իմանամք զայն որ բանիւ վարի, այսինքն զխոր֊

հուրդս մտացն առ մերձաւորս իւր բանիւ և ձայնիւ յայտ առնէ ։ Եւ զի բանականութիւնն սեպհական է հոգւոյ մարդոյն, և հոգին է հոգի իննեքումբք կարողութեամբքն զորոց վերադոյն ասացաք, ապա յայտ է թէ բանականութիւնն կայանայ 'ի կարողութիւնսն յայնոսիկ ։ կարողութեամբքն այնոքիւք մարդն կամ հոգին վարի այսպէս. Նախ 'ի ձեռն արտաքին զգայարանաց առնու ազդումն, զազդեալն իմանայ, զիմացեալն ըմբռնէ, ըմբռնեալն լինի գաղափար, զգաղափարս բաղդատէ հոգին ընդ միմեանս. այս բաղդատութիւն գաղափարաց հանճար կոչի որ է լոյս մտաց և կամ տրամաբանութիւն. հանճարովն ճանաչէ և սկսանի ընտրել, զկնի ընտրութեան դատէ, և յետ դատելոյն կշռէ. սոյն այս կշռելն է կամք ։

Այս ինն կարողութեամբք իմանամք զառարկայս, եթէ բանք իցեն, եթէ իրք և եթէ գործք. զճշմարիտն, զբարին և զչահաւէտն ընդունիմք, այսինքն՝ հաւատամք. զսուտն, զչարն և զվնասակար մերժեմք ։

Ասացաք եթէ սովին բանականութեամբ տարբերի մարդ յայլոց կենդանեաց ։ Գտանի և յայլ կենդանիս ինչ ճանաչումն և ընտրութիւն. այլ այն չէ 'ի բանականութենէ ։ Մարդ խորհի և դատէ. զճշմարիտն, զբարին և զօգտակարն որոշէ ներքին ճանաչմամբ.

նաև մակաբերէ 'ի փոքունց զմեծամեծս, և 'ի մեծամեծաց զփոքունս· յընդհանրոյ զմասնաւորն, և 'ի մասնաւորէ զընդհանուրն· զոր օրինակ՝ 'ի փոքր ինչ հրդեհէ, հայեցեալ 'ի նիւթս որ ենթակայ են հրոյն, գուշակէ եթէ մեծ ինչ արդեօք լինելոց իցէ հրդեհն եթէ փոքր· 'ի դոյզն ինչ սերմանէ, հայեցեալ 'ի թէական պայմանս, այն է՝ 'ի հողն, յեղանակն, և յայլս որ սոցին սակի են, իմանայ թէ լինիցի՞ ծառ մեծ թէ թուփ, տացէ՞ ծաղիկս և պտուղս թէ ոչ։ Գոյ և յանասունս ինչ մակաբերութիւն, որպէս շուն 'ի նուազագոյն ինչ հոտոյ, և գայլ 'ի սակաւ ինչ լուսոյ լինին հասու և գտակ իրաց որ թագուն կամ հեռի են· այլ այս զգացումն իմանալոյ յանասունս ոչ է 'ի բանականութենէ, և ոչ ընդհանուր յամենեսին, այլ յոմանս 'ի նոցանէ, և պէս պէս յիւրաքանչիւրումն։

## ԳԼՈՒԽ Գ.

*Յաղագս հոգւոյ թէ զինչ իցէ եւ քանիօն։*

Հոգի կոչի առ հասարակ գոյացութիւն ինչ հոգեղէն, այն է՝ պարզ և աննիւթ։ Սովին մտօք՝ հոգին բաժանի 'ի Զգայական որ Ոգի կամ Շունչ անուանի, և 'ի Բանական հոգի որ է բուն Հոգի ըստ մերում լեզուի։

Զգայականն հոգի կամ ոգին՝ ունի կարողութիւնս հինգ. 1. աճել, 2. շարժել, 3. զգալ, 4. ցասնուլ, 5. ցանկալ։ Իսկ բանական հոգւոյ կարողութիւնք ինն են, որպէս վերագոյն ասացաւ։

Ասասցուք նախ զզգայական հոգւոյ թէ զինչ իցէ։ Ոմանք ասացին թէ իբրեւ զհուր ինչ կամ իբրեւ զօդ է։ Այլ հուր կամ օդ չէ պատշաճ ասել զոգւոյ. զի ոգին ոչ է շօշափելի, հուր և օդ շօշափին կամ զննին մարմնոյ։

Զգայական ոգին որ միեւնոյն է ՚ի մարդ և յանասունս, է ջերմութիւն զգալի ոգեղէն։ Այս ոգի շուրջ գայ յերակս կենդանեաց, և է ՚ի սրտի նոցա իբրեւ ՚ի կեդրոնի, և տայ նոցա զկենդանութիւն. այն է՝ զաճումն, զշարժումն և զզգացումն ցասնլոյ և ցանկանալոյ։ Նովին ոգւով է զի ներքին չորեքին խառնուածք կենդանեաց, ՚ի բնական կազմութեան, հաւասարակշիռ են միմեանց յորակութիւնս բնականս։ Իբրեւ չորեքին խառնուածքն կորուսանիցեն զիւրեանց հաւասարակշռութիւն, բնական որակութիւնք նոցա փոփոխին, և անդէն տկարանայ կենդանին, նաև մեռանի իսկ, այսինքն՝ ոգին հրաժարի ՚ի մարմնոյն, և երթայ ՚ի կեդրոն իւր ուստի եկեալն էր։

Բանական հոգին ևս է պարզ էութիւն աննիւթ, այլ ստեղծեալ և հեղեալ յԱստուծոյ

՚ի պատկեր և ՚ի նմանութիւն իւրոյ պարզն և անհուն էութեան ։ Որպէս էութիւն Աստուծոյ է իմանալի , նոյնպէս և բանական հոգի մարդոյ է էութիւն իմանալի · այլ նա անհուն է ըստ զօրութեանն և ըստ ներգործութեան , սա սահմանաւոր է եթէ ըստ զօրութեան և եթէ ըստ ներգործութեան ։ Զօրութիւն հոգւոյն են միտք , և ներգործութիւն նորա են կամք ։ Դարձեալ հոգին է ՚ի մարդն որպէս զլոյս , և հանգոյն լուսոյ տարածեալ է ՚ի ջիղս , և կեդրոն նորա է ուղեղն ։ Ի վեց ազգ որպիսութենէ ուղղոյն բանական հոգին լինի զօրաւոր կամ տկար և թոյլ ։ Զորպիսութեանց ուղղոյն ճառեալ եմք յուրոյն գիրս հոգեբանութեան որ չէ տակաւին ՚ի լոյս ընծայեալ ։

Բանական հոգին ՚ի ձեռն բարեխառնութեան պահոց և անշփոթն և սուրբ աղօթից զօրանայ · Թէպէտ սոքօք զգայական ոգին տըկարանայ յերակս , ըստ առաքելոյն թէ « Յորժամ տկարանամ , յայնժամ զօրանամ »։ Իսաստկանալ բորբոքման և ջերմութեան հրոյ՝ տկարանայ լոյս և պայծառութիւն նորա · և ՚ի խարոյկ կրակի եթէ մերձեցուցանիցեմք զճրագ , խարոյկ հրոյն չիջուցանէ զճրագն կամ գէթ նուազեցուցանէ զլոյս նորա ։ Նոյնպէս ոգին զգայական է խարոյկ , իսկ բանական հոգին լոյս և ճրագ · ՚ի զօրանալ զգայականին տկարանայ բանականն , և ՚ի խարուկեալ կրակէ նորա չի֊

Ջանի կամ գէթ նուազի լոյս սորա. և 'ի նուազել կամ 'ի մթագնել լուսոյ բանական հոգւոյ սկսանիմք անդէն և անդ մերկանալ զպատկերն Աստուծոյ, և մոլեգնիմք և լինիմք այլք ընդ այլոց։ Արդ զի այս այսպէս է, պարտ և պատշաճ է մեզ որ բանաւորքս եմք՝ տկարացուցանել զզգայականն ոգի 'ի ձեռն պահոց անդուլթեան և ստէպն և սուրբ աղօթից. զի նովին զօրացեալ բանականն հոգւոյ և արծարծեալ լուսոյ նորա՝ տեսանիցեմք զարարիչ մեր զԱստուած միայն աչօք և ծանուցեալ զճշմարիտն էութիւն նորա՝ հաւատասցուք 'ի նա և յուսասցուք ուղղութեամբ, ճշմարտութեամբ և կատարեալ սրտիւ, և սիրեսցուք հանապազ 'ի բոլոր սրտէ նախ զնա, և ապա զընկերս մեր իբրեւ զանձինս մեր. զի եմք իսկ ամենեքին պատկեր Աստուծոյ։ Այլ զպահոց և զաղօթից ընդարձակագոյնս ճառեալ եմք յայլում մատենի որ չէ տակաւին 'ի լոյս ընծայեալ։

## ԳԼՈՒԽ Դ.

*Թէ զինչ իցեն միտք եւ զինչ պաշտօն նորա։*

---

Միտք մարդոյ է զօրութիւն բանականն հոգւոյ որպէս ասացաք. Զի զորօրինակ զօրութիւն արեգական է լոյս նորա, և զօրու-

թիւն ճրագի՝ լուսաւորութիւն ճրագին , նոյնպէս և բանական հոգւոյ զօրութիւն միտք են ։ Դարձեալ միտք նման են լուսանկարի , զի առնուն յինքեանս զպատկերս իրաց և պահեն 'ի յիշողութեան և յերևակայութեան որպէս յարկեղ ։ Արդ ընդունել բանս ինչ կամ իրս կամ գործ և պահել զնոսա՝ է ըմբռնումն և գաղափար ։ Յետ առնլոյ մտաց զգաղափարս, սկիզբն առնէ տեսանել և բաղդատել զնոսա ընդ միմեանս բնական լուսով ․ յետ բաղդատելոյ՝ ճանաչէ զնոսա և ընտրէ ․ ընտրելովն դատէ , և դատելովն կշռէ ․ և յետ կշռելոյ՝ ազատ կամօք ընդունի այսինքն՝ հաւատայ զբարին իբրև զբարի , և զճշմարիտն՝ իբրև զճշմարիտ ․ նոյնպէս ընդունի կամ հաւատայ զչարն որպէս զչար , և զսուտն իբրև զսուտ ։

Զօրօրինակ՝ դիցուք թէ իցեն մետաղք երկու , քանակութեամբ և որակութեամբ որոշք 'ի միմեանց , որպէս՝ մասն ինչ ոսկւոյ և մասն ինչ արծաթոյ կամ այլոյ իրիք նիւթոյ , կամ այլ ինչ որ չիցէ գոյացութիւն ինչ , զոր օրինակ՝ բան ինչ կամ գործ ։ Ի տեսանել մեր զնոսա կամ 'ի լսել իսկոյն ազդիմք , և ազդումն այն անդէն հաղորդի 'ի միտս մեր ․ իմանամք և ըմբռնեմք , և լինի այն գաղափար ։ Վաղվաղակի սկսանի միտք բնական լուսով , այն է՝ հանճարով , բաղդատել զնոսա ընդ միմեանս , և 'ի բաղդատելն ճանաչէ և ընտրէ թէ

սա ոսկի է և նա արծաթ ։ Ապա սկիզբն առնէ դատել թէ անխառն արդեօք իցեն ոսկին և արծաթն եթէ ոչ ։ Յայնժամ սկսանի 'ի ձեռըն արուեստի, զորօրինակ՝ փորձաքարիւ փորձել, և ասել թէ ատրճան (այար) ոսկւոյն քսան և մի է, և արծաթոյն՝ ութսուն ։ Սակայն չգիտէ տակաւին թէ զի՞նչ իցէ չափ նոցա․ յայնժամ ապա կշռէ, 'ի կիր արկեալ կըշռորդս, և լինի տեղեակ եթէ ծանրութիւն ոսկւոյն է ունկիս երկուս և կէս, և ծանրութիւն արծաթոյն՝ ունկիս քսան և հինգ ։

Ապա յայտ եղեւ թէ զի՞նչ իցեն միտք և զինչ պաշտօն նորա ։ Արդ քանզի զօրութիւնն այն է միշտ 'ի մեզ պարգեւեալ յԱստուծոյ, պարտ է մեզ 'ի կիր արկանել զնա 'ի տեսանել, 'ի դատել և 'ի կշռել․ խոստովանել իբրեւ սուտ զայն որ սուտն է, մերժելով զնա և հեռանալով անտի․ իսկ զայն ինչ որ ճշմարիտն և ուղիղ է՝ ընդունելով հաւատալ և հանապազ կալ հաստատուն 'ի նմա ։ Զոր ինչ և առնիցեն մարդիկ առանց այնց գործողութեանց մտաց զորոց ասացաք, զղջասցին ընդ այն յաւուրն յետնում․ այլ 'ի զուր է այնպիսի զղջումն, զի յանդիմանեսցին 'ի դատաւորէն թէ ընդէր ոչ վարեցայք կարողութեամբք բանականն հոգւոյ, այսինքն՝ մտօք որ տուեալն էր ձեզ յինէն․ այլ գնացէք ըստ ցանկութեանց (տենչմանց) մարմնոյ և ըստ կրից և ցանկութեանց զգայա-

կան ոգւոյ ։ Եւ զի ոչ վարձեցայք մտօք , յայտ է թէ և ոչ ճանաչէիք զիս ․ ապա չէք յինէն , և որոյ էքդ՝ նա իշխեսցէ 'ի վերայ ձեր ։ Ոչ գիտեմ զձեզ ամենայն մշակքդ անհաւատութեան և անիրաւութեան , թշնամիք իմոյ էութեանս և անձանց ձերոց ։



## ԳԼՈՒԽ Ե․

*Թէ զինչ իցեն կամք ։*



Կամք են հաճութիւն և յօժարութիւն հոգւոյ , կամ որպէս 'ի վեր անդր ասացաւ , ներգործութիւն նորա , բղխէ 'ի մտաց , և է սկիզբն ամենայն բանից և գործոց ։ Կամք , այսինքն՝ հաճութիւն և յօժարութիւն կամ տհաճութիւն , որ չիցէ 'ի մտաց , ոչ ասի կամք , այլ զգայական բաղձանք կամ կիրք ։ Եւ զի այս այսպէս է , պարտ է մեզ որ բանաւորքս եմք՝ հանապազ 'ի բանս և 'ի գործս մեր 'ի կիր արկանել զաստուածապարգեւն զօրութիւն բանական հոգւոյ , զմիտս , զի ամենայն գործք մեր լիցին յազատ կամաց , և մի 'ի զգայական բաղձանաց և 'ի կրից ։

Եւ զի առարկայ կամաց է բարին , օգտակարն և մնայուն , որպէս առարկայ մտաց է

ճշմարիտն և ուղիղ և հաստատուն , ամենայն բան կամ գործ որ չիցէ բարի , չահաւէտ և միայուն` չէ յաղագս կամաց , այլ է 'ի զգայական բաղձանաց կամ 'ի կրից զգայական ոգւոյ ։ Այսպէս զորօրինակ պարտ է մեզ միշտ զճշմարիտն և զուղիղ և զհաստատուն խնդրել և քննել և գտանել . իսկ զսուտն , զթիւր և զյողդողդուն մերժել կարողութեամբք հոգւոյ , նոյնպէս արժան է մեզ զբարին , զօգտակարն և զմիայուն առնել ազատ կամօք , զի գործովք բարեաց և առաքինութեան եղիցուք արդարեւ պատկեր Աստուծոյ և մարդ կատարեալ , և մի կերպարանօք միայն և բանիւ մարդ , իսկ գործովք և արդեամբք իբրեւ զմոլեգնեալս , և կամ իբրեւ զայլս 'ի զգայուն կենդանեաց , մեռեալ բանական հոգւով ։ Այս ներգործութիւն հոգւոյն յօժարելոյ 'ի բարին , յօգտակարն և 'ի միայուն` է առաջին գործ հանճարոյ կամ բնական լուսոյ ։ Այլ վասն ազատ կամաց ընդարձակագոյնս ճառեալ եմք յուրոյն գիրս ։

---

## ԳԼՈՒԽ Զ.

*Յաղագս թէ զինչ իցէ ճանաչումն , եւ քանիօն ։*

---

Ճանաչումն որ է տեսութիւն հոգւոյն` է նկատել նորա յայն ինչ որ առաջի կայ նմա ,

և որոշել թէ զի՛նչ կամ որպիսի իցէ ։ Մարմնոյ աչաց տեսութեամբ հաւասար է մարդ ընդ զգայուն շնչաւորս, և տեսութիւն մարմնոյ լինի 'ի ձեռն տարրական լուսոյ, վասն այնորիկ ասի տեսութիւն զգալի աչաց կամ աչօք տեսանել ։

Մտաւորն տեսութիւն որ է ճանաչումն մտաց՝ սեպհական է միայն մարդոյ որ բանաւորն է, և ոչ այլոց կենդանեաց որ զգայուն ևեթ են ։ Եւ միջնորդ այսր մտաւորն տեսութեան է բնական լոյսն որ հանճարն կոչի ։

Ասացաք եթէ մարմնաւորն տեսութիւն որ լինի մարմնոյ աչօք և 'ի ձեռն լուսոյ, հասարակ է մարդոյ և անասնոց, իսկ մտաւորն տեսութիւն որ լինի մտօք 'ի ձեռն հանճարոյ՝ մարդոյ միայն սեպհական է ․ զի մարդ միայն որ բանականն է՝ իմանայ և ըմբռնել գաղափարէ զանցեալն, զաներեւոյթն, զանզգալին և զապառնին ․ և իմանալովն երեւակայէ, և երեւակայելովն յիշէ, և այնպէս իմանալն և երեւակայել և յիշել ասի տեսանել մըտաւոր աչօք զանցեալն, զաներեւոյթն, զանզգալին և զապառնի ․ և տեսանելովն հաւատայ ։

Վասն այսորիկ ասեն գիրք արարչութեան եթէ իբրեւ կերաւ Ադամ զպտուղն, նոյնժամայն բացան աչք նորա ։ Ոչ եթէ կոյր ինչ արարաւ Ադամ յԱստուծոյ, և յորժամ կերաւն 'ի

պտղոյն, յայնժամ բացան աչք նորա. ապա թէ ոչ զիարդ տեսանէր զԵւա զկին իւր, և զամենայն գազանս և զանասունս որոց դնէր անուանս: Ապա յայտ է թէ վասն հոգւոյն աչաց ասեն գիրք. և արդարեւ յետ ուտելոյ զպտուղն՝ իբրեւ յանդիմանեցաւ յԱստուծոյ և ընկալաւ զպատիժ պատուհասին, ծագեաց լոյս հանճարոյն 'ի խիղճ մտաց նորա, և առ 'ի միտ եթէ արար չար. և ծնան 'ի նմա հակաւակ գաղափարք բարւոյ և չարի. վասն այնորիկ և ծառն այն կոչեցաւ ծառ գիտելոյ զբարի և զչար: Ապա յաւելուն գիրք թէ եւ ասէ Աստուած. ահա եղեւ Ադամ իբրեւ զմի 'ի մէնջ: Ապաքէն վասն տեսանելոյ հոգւոյ նորա կամ հանճարոյ ասէր Աստուած. թէպէտ ոմանք ասացին թէ հեգնելոյ վասն ասացեալ իցէ Աստուծոյ: Այլ մեզ չթուի պատշաճ զայդ ասել՝ նախ զի հեգնել չէ օրէն ասել զԱստուծոյ. երկրորդ՝ կամէր Աստուած յայտ առնել եթէ Ադամ՝ որոյ բացան աչք հոգւոյն և առ անձամբ զփորձ զընտրութեան բարւոյ և չարի, կարող է այնուհետեւ, եթէ վարիցի լուսով բանականն հոգւոյ, զբարին, զօգտակարն և զմնայունն միայն առնել:

Այս ներգործութիւն մտաց տեսանելոյ հոգւոյն աչօք, այն է՝ իմանալոյ, երեւակայելոյ և յիշելոյ զանցեալն, զներեւոյթն, զանրդդալին և զապառնին, է գործ հանճարոյ:

# ԳԼՈՒԽ Է.

*Թէ զի՛նչ դատելն իցէ եւ ո՛յք գործք նորա։*

---

Դատելն է առնել վճիռ 'ի մէջ ճշմարտին և ստոյ, 'ի մէջ ուղղոյն և թիւրոյ, 'ի մէջ բարւոյն և չարի. և է դարձեալ սեպհական բանական մարդոյ։ Դատելն այլ է 'ի ճանաչելոյ և յընտրելոյ. զի ճանաչմամբ տեսանեն միտք զգոյութիւն իրիք, այլ դատողութեամբ զպէս պէս հանգամանս իրաց, բանից և գործոց։ Այսպէս դատելով դատեմք նաև զպատճառս և զնշանակութիւն նոցա. խնդրեմք դարձեալ եթէ այս ինչ գործ որով օրինակաւ գործիցի կամ գործեալ իցէ և գործելոց իցէ.

Դատողութիւն է սկիզբն կամ պատճառ ուսմանց և գիտութեանց և արուեստից, և առանց դատողութեան չէ հնար հմուտ և տեղեակ լինել նոցա. քանզի ամենայն ուսումն և գիտութիւն և արուեստ 'ի դատողութենէ ծնանի։

Այս ներգործութիւն միայն դատելոյ 'ի մէջ ճշմարտին և ստոյ, 'ի մէջ ուղղոյն և թիւրոյ, 'ի մէջ բարւոյ և չարի. դարձեալ գիտելոյ զօրպիսութիւն, զօրինակ, զպատճառ և զնշանակութիւն իրիք, է նոյնպէս գործ հանճարոյ։

# ԳԼՈՒԽ Ը.

*Թէ զի՞նչ իցէ կշռելն, քանիօն, և որպիսի։*

---

Ամենեցուն յայտ է թէ կշռել է գտանել զտարբերութիւն քանակութեանց, և լինի 'ի ձեռն գործեաց որ կշիռ և չափ կոչին․ Գըտանել զչափ կամ զքանակութիւն իրաց ըստ չափաբերական սկզբանց յերիս ազգս բաժանի․ թուել, չափել և կշռել։ Սովին երեք ազգ գործողութեամբ ինն ազգս տարբերութեանց որոշեմք յիրս զորոց զքանակութիւն ունիմք գտանել․ 1. զբազումն և զսակաւ, 2. զմեծն և զփոքր, 3. զհեռաւորն և զմօտաւոր, 4. ըզբարձրն և զխոնարհ, 5. զխորն և զանխորն, 6. զերկայնն և զկարճ, 7. զլայնն և զնեղ, 8. զծանրն և զթեթեւ, 9. զթաւն և զնուրբ։ Յայս ամենայն տարբերութիւնս գտանելոյ զքանակութիւն իրաց, որպէս տեսաք, կրկին են հանգամանք, այն է՝ բազմութիւն և սակաւութիւն, մեծութիւն և փոքրկութիւն, և այլքն ևս նոյնպէս։ Յայսոսիկ ինն ազգս տարբերութեանց մարթ է յաւելուլ և զտասներորդըն որ է համեմատութիւն 'ի մէջ երկուց տարբերութեանց։

Ի կշռողութեան նիւթական իրաց պիտոյ են գործիք․ այլ ոչ այնպէս 'ի կշռողութեան

մտաց ։ Մտաւորն կշռողութիւն լինի 'ի ձեռն բանից․ բանք են գործիք կշռելոյ մտաց․ և նոյն ինքն բանն կշռի ըստ տրամաբանական օրինաց մտաց որ յառաջ բերեն զմակածութիւն, այն է՝ զհետեւութիւն կամ զմակաբերութիւն ։ Լինի դարձեալ կշռել աչօք կամ հայեցուածով որով մակաբերեմք ինչ 'ի դիմաց, 'ի ձայնէ և 'ի պէս պէս շարժմանց, նաև 'ի բարուց և 'ի գործոց, և յայլոց բազմաց ։ Վախճան կշռողութեան մտաց է գտանել զորպիսութիւնս ներքին ոգւոյ և հոգւոյ մարդոյ, որով իմանամք զբարս և զվարս այլոց ։

## ԳԼՈՒԽ Թ․

*Թէ զի՞նչ իցէ առնելն, եւ զինչ պարտիմք առնել ։*

Առնել ասի գործել ինչ գործ վերացեալ կամ թանձրացեալ ։ Վերացեալ ինչ գործ գործէ ոք, յորժամ օրհնէ կամ գովէ, անիծանէ կամ պարսաւէ, քամահէ կամ բամբասէ, և այլ ինչ որ սոցին նման են՝ առնէ․ Թանձրացեալ ինչ գործ գործէ ոք, յորժամ սպանանէ կամ հարկանէ, գրկէ կամ գգուէ, բառնայ, տանի, այլովքն հանդերձ որ սոցին նման են ։ Եւ զի չէ մարթ ումեք առնել ինչ առանց կը-

ընելոյ, եթէ վերացեալ ինչ իցէ զոր առնէ և
եթէ թանձրացեալ, ապա յայտ է թէ զոր ինչ
առնէ ոք՝ զնոյն և կրէ. և այս են օրէնք 'ի
մէջ ամենայն զգայուն արարածոց, զի չիք
ներգործութիւն առանց կրողութեան: Եւ
զի այս այսպէս է, ապա պարտ է մեզ կամել
և առնել զբարիս այլոց, զի և մեք զբարին
կրիցեմք, և զբարին կրել է վայելել 'ի բար-
ւոջ: Ամենայն բարիք, եթէ հոգեւորքն և ե-
թէ մարմնաւորք, բովանդակին 'ի սէր, և 'ի
սիրոյ գան յառաջ. և ամենայն կենդանի ըզ-
գայուն, մանաւանդ մեք բանաւորքս, ցան-
կամք հանապազ զի այլք, մանաւանդ բանա-
ւորքն իբրեւ զմեզ, սիրեսցեն զմեզ, և
'ի սիրոյ անտի յորդորեալք կամիցին և
առնիցեն մեզ բարիս: Վասն այնորիկ և
Տէրն ասէ յԱւետարանի անդ թէ՝ «Մի դա-
տիք, զի մի դատիցիք. զի որով դատաստա-
նաւ դատիք՝ դատելոց էք. և որով չափով
չափէք՝ չափեսցի ձեզ». և դարձեալ թէ՝
«Այլ ես ասեմ ձեզ. Սիրեցէք զթշնամիս ձեր.
օրհնեցէք զանիծիչս ձեր. բարի արարէք
ատելեաց ձերոց. աղօթս արարէք 'ի վերայ
այնոցիկ որ լլկենն զձեզ և հալածեն». և
դարձեալ այլ ուրեք ասէ. «Որպէս կամիք
թէ արասցեն ձեզ մարդիկ, այնպէս արասջիք
և դուք նոցա»: Այս բանք Տեառն, և այլ եւս
բազումք որ յաստուածեղէն գիրս՝ զնոյն միտս

ունին զոր ասացաք թէ չիք առնել առանց կրելոյ, և զոր ինչ առնէ ոք՝ զնոյն կրելոց է։ Եւ թէպէտև բազումք բարոյական ինչ և կրօնական միայն ասեն լինել զայս, այլ մեք ասեմք եթէ ոչ բարոյական և կրօնական միայն է, այլ մանաւանդ բնական ևս։

Աստի զհետ գայ նախ՝ զի սիրեսցուք զԱստուած որ կենդանին է միշտ և միայն կատարեալ, և արարիչ ամենայնի որ են, բանաւորաց և անբանից, շնչաւորաց և անշնչոց։ Եւ եթէ սիրեմք զԱստուած, պարտիմք հաւատալ 'ի նա, պաշտել զնա և զպատուիրանս և զօրէնս զոր ետ նա մեզ 'ի ձեռն ծառայից իւրոց՝ առնել և պահել հոգւով և ճշմարտութեամբ, և կալ 'ի նոսա մինչև 'ի մահ, զի և նա արասցէ զմեզ երանելիս յաստի և յանտի կեանս։ Երկրորդ՝ պարտ է մեզ սիրել զնմանիս մեր զի պատկեր են Աստուծոյ։ Եւ եթէ սիրեմք զմարդիկ, պարտ է մեզ կամել և առնել նոցա բարիս, գթալ 'ի նոսա, ներել նոցա, եթէ յանդէտս ինչ մեղանչիցեն մեզ, ողորմել ևս և նպաստել նոցա։ Զայս ամենայն եթէ առնիցեմք, կրեսցուք և մեք զփոխարէնն 'ի մարդկանէ, և գտցուք 'ի նոյն ինքն յԱստուծոյ գթութիւն, թողութիւն և ողորմութիւն։ Երրորդ՝ պարտ է մեզ սիրել և զայլ ևս կենդանիս որ պիտանիք են մեզ, դարման տանել այնոցիկ որ օգնենն մեզ, և զգուշանալ

նոցա յիրաց որ վնասակար են նոցա , զի մի վնասեսցեն և անօգուտ մեզ լինիցին : Պարտիմք սիրել և զայնս եւս 'ի կենդանեաց որ չիցեն մեզ վնասակարք , չատենել նոցա վնաս ինչ յորժամ չեն նոքա մեզ 'ի վնաս , այլ չէ արժան դարմանել զնոսա և պաշտպանել նոցա : Արժան է սիրել և զիրս անշունչս և անզգայս որ չեն մեզ մեղանչականք , նա մանաւանդ պիտանիք և օգտակարք մեզ և մերայոց :

## ԳԼՈՒԽ Ժ.

*Թէ զինչ իցէ կրել , եւ իւ իւիք հնար իցէ մեզ ազատ լինել 'ի կրելոյ զվնասակարս :*

---

Կրելն է ընդունել յայլոց վերացեալ ինչ կամ թանձրացեալ . զոր օրինակ՝ կրեմք , յորժամ գովիմք յումեքէ կամ անիծանիմք , և կամ յորժամ գան ըմպեմք , և զայլ ինչ որ առ ցին նման են՝ ընդունիմք .

Յայսպիսի գործողութիւնս է միշտ ոք կամ ինչ որ ներգործէ , և այլ ոք կամ ինչ որ ընդունի զներգործութիւնն : Ներգործողն կոչի առնող , և ընդունողն անուանի կրող . և ներգործութիւնն լինի կրողութիւն յայնմ որ կրէ :

Բայց դարձեալ է կրողութիւն ինչ որ 'ի ներքս 'ի մեզ լինի , որպէս ուրախութիւն կամ

տրտմութիւն , բարկութիւն , նախանձ , այլովքն հանդերձ : Եթէ 'ի ներքուստ 'ի մէնջ , և եթէ արտաքուստ յայլոց , կրողութիւն մեր լինի յառնելութենէ և 'ի ճանաչմանէ : Ցառնելութենէ ասի կրելն , յորժամ ընդունիմք ինչ փոխանակ այնր զոր արարաք . ըստ այնմ՝ յորժամ սիրեմք զոք , 'ի հարկէ ընդունիմք սէր 'ի նմանէ . նմին համեմատ՝ եթէ ատեմք զոք կամ չառնեմք նմա բարիս , ոչ սիրիմք 'ի նմանէ . այսպէս յառնելութենէ անտի մերմէ կրեմք ինչ եթէ բարի և եթէ չար :

Այլ է կրելն 'ի ճանաչմանէ զոր աստ պարզեսցուք սակաւուք : Բազում անգամ կրեմք ինչ 'ի փոփոխմանէ ժամանակաց , 'ի յարմարութենէ տեղւոյ և 'ի համակրութենէ կամ 'ի հակակրութենէ մարդոց , և այս երեքին պատճառք կրելոյ ազդեն ըստ իրին , ըստ գործոյ և ըստ քանակութեան :

Բնապէս , այն է ֆիզիքապէս , կրեմք աստէն առողջութիւն կամ հիւանդութիւն , յաջողութիւն կամ ձախողութիւն , երկարութիւն կենաց կամ մահ տարաժամ , իշխանութիւն կամ ստրկութիւն , և 'ի հանդերձելումն փառս կամ տանջանս : Ցայսմ ամենայնի ժամանակն և տեղին և անձինք կարեն փոխել զմեր բարս , զվարս և զգործս : Եթէ բարի իցեմք , կարեն չարացուցանել . եթէ առողջ՝ տկարացուցանել կամ հիւանդացուցանել . եթէ մեծատուն՝

ազքատացուցանել· եթէ 'ի պատուի՝ անպատիւս առնել· և եթէ իշխանք իցեմք, առնել ստրուկս։ Ապա յայտ է թէ յայսմ ամենայնի կրեմք 'ի ժամանակէ, 'ի տեղւոջէ և յանձանց· բայց ոչ ամենեքին զնոյն օրինակ, այլ պէս պէս ըստ իրին, ըստ գործոյ և ըստ չափոյ կամ քանակութեան։

Արդարև այս ամենայն գործի ըստ տեսչութեան կամացն Աստուծոյ որ պատճառն է ամենայնի, և ըստ նորա հրամանաց և սահմանելոյ լինի շարժել և ընթանալ, առնել և կրել։ Սակայն վճիռ հրամանին սահմանելոյ յԱստուծոյ վասն մեր բանաւորացս՝ թէական իմն է· այնպէս զի դէթ ըստ մասին ազատ կամօք առնեմք և կրեմք· և եթէ կամիցիմք, մարթ է մեզ զչար 'ի բարի փոխել։ Եւ զի զայդ առնել հնար իցէ մեզ, պարտիմք միտ դնել ժամանակի և ընտրել զդիպող ժամ, և ապա ձեռնամուխ լինել 'ի գործ· և եթէ չիցէ ժամանակն 'ի դէպ, դադարեցուցանել զգործս և առնել յայլ ժամանակ դիպողագոյն։

Պարտ է երկրորդ և զտեղին դիտել և ընտրել, եթէ ո՛ր տեղի իցէ պատշաճ և դիպող, և ըստ այնմ առնել անդ զոր առնելոցն եմք։ Նոյն բանք են և զանձանց· եթէ չիցեն մարդիկ համակարիք մեզ, հեռանալ 'ի նոցանէ, և խնդրել գտանել զայնպիսիս որ ունիցին ընդ մեզ համակրութիւն։

Այլ յընտրել մերում զժամանակ և զտեղի դիպող և զմարդիկ համակիրս մեզ՝ պարտ է հայել և յիրն և 'ի գործ զոր առնելոց իցեմք, և 'ի քանակութիւն նոցա ։ Դարձեալ յառնել զայնպիսի ընտրութիւնս չէ բաւական իմացական կարողութիւն և հանճար մարդոյ միայն առանձինն, այլ պարտ է պահօք և աղօթիւք և սուրբ սրտիւ կալ յաղօթս առ Աստուած զի բացցէ զաչս մտաց մերոց ։ Այլ զորպիսութենէ պահոց և զաղօթից, և զաղատ կամաց Աստուծոյ և զանձնիշխանութենէ մարդոյ ունիմք ճառել յայլ գիրս ուրոյն 'ի սմանէ, և չէ տակաւին ընծայեալ 'ի լոյս ։

Ի վերայ այսր ամենայնի կրկին են պատճառք վասն որոյ չկարեմք ընտրել և ճանաչել զժամանակ և զտեղի դիպող և զմարդիկ համակիրս մեզ. ուստի և դէպք անյաջողք և աղէտք անհնարինք դիպեալ՝ տան մեզ կրել վիշտս չարաչարս և՛ աստ և 'ի հանդերձեալումն ։ Եւ պատճառքն կրկին զորոց ասացաք՝ են տգիտութիւն հանդերձ մոլութեամբ, և սնապաշտութիւն որ է ապաւինել 'ի սնոտիս ։

Մոլութիւնք մեր չտան մեզ թոյլ գտանել արս առաքինիս, այլ տան մեզ յարել 'ի չարս և յանզգամս որ կործանեն զմեզ 'ի չարիս. իսկ տգիտութեամբ չկարեմք ընտրել զյարմարութիւն ժամանակաց և տեղեաց, և ճանաչել զմարդիկ որ համակիրք իցեն մեզ ։ Իսկ սնա֊

պաշտութիւն արկանէ զմեզ 'ի խաւար, հեւացուցեալ զմեզ 'ի բնական լուսոյ հանճարոյ, յաստուածպաշտութենէ, 'ի շաւղաց և 'ի խորատուց աստուածեղէն գրոց ։

Ի հաստատութիւն ճշմարտութեան ասացելոցս ունիմք վկայութիւնս բազումս եթէ 'ի գրոց սրբոց, եթէ 'ի պատմութենէ և 'ի դիտութենէ իրաց, և եթէ 'ի գործոց որ յարքունի և 'ի քաղաքական իրս և 'ի վաճառականութեան դիպին, և որոց համապազ ականատես և ականջալուր եմք ։



## ԳԼՈՒԽ ԺԱ·

*Թէ զինչ իցէ ունելն եւ զինչ միջոցք կամ եղանակք նորա։*



Ունելն է ըմբռնել կամ ստանալ ինչ, եթէ վերացեալ ինչ իցէ և եթէ թանձրացեալ։ Ասացաք յառաջագոյն թէ յորժամ առնեմք ինչ՝ զնոյն և կրեմք. արդ յորում պահու կրեմք ինչ՝ 'ի նմին պահու ունիմք զնա. այնպէս զի՝ մարթ է ասել թէ զոր կրէ ոք՝ ունի, և զոր ունին՝ կրէ ։

Այժմ պարտ է մեզ ցուցանել թէ ոյք ի֊

ցեն միջոցք կամ եղանակք ունելոյ , և ո՛ր միջոց ունելոյ իցէ սեպհական մարդոյ և լաւագոյն ։ Արդ առաջին միջոց ունելոյ ինչ կամ ստանալոյ սէրն է , զի նա որ սիրէ՝ 'ի հարկէ կրէ ինչ , ուստի և ունի ։ Այս միջոց ունելոյ 'ի ձեռն սիրոյ՝ ոչ մարդոյ միայն սեպհական է , այլ և ամենայն էից , ես և անշնչոց և անզգայից ։ Զի ամենայն իրք սիրեն զմիմեանս , և սիրելով իւրեանց հակին և կցին առ իրեարս , ուստի և ունին ինչ , որպէս մագնիս ձգէ զերկաթ և յարի 'ի նա ․ ոսկին՝ զսնդիկ , և կցի ընդ նմա ․ և արմաւենի զարմաւենի ձգէ յինքն և փարի զնովաւ ․ և այլ ևս բազում իրք են որ զնոյն բնական սէր կամ զմիտումն ունին առ միմեանս , և նովին յարին 'ի միմեանս ․ այս է ունել նոցա ։ Այլ սէրն որ 'ի զգայուն արարածս է՝ առաւել է քան զայն ․ զի սոքա ոչ բնական ինչ ձգմամբ միայն բերին առ միմեանս , այլ և զգացմամբ և զգայական ախորժանօք , և նովին կրեն և ունին ․ այլ կրեն և ունին յուսով թէ վայելելոց են ինչ ։ Ապա սէր անշնչոց և անզգայից առանց յուսոյ է ; իսկ սէր զգայնոց՝ յուսով ․ կամ՝ 'ի սէր անզգայից չիք յոյս ․ այլ 'ի սէր զգայականաց խառն է յոյս , նա մանաւանդ 'ի յուսոյ անտի է սէր նոցա ։ Անզգայքն ունին բնական սիրով ․ զգայունք ունին սիրով և յուսով ։

Մարդիկ ևս իբրեւ զանզգայս՝ մարմին

ունել բնական ինչ սիրով. և իբրեւ զզգայունս՝
յուսալից սիրով. սակայն այնու զի բանա-
կանք են՝ պարտ է ունելոյ նոցա այլազգ լինել
յունելոյ անտի ոչ միայն անզգայից այլև զգայ-
նոց. այսինքն՝ պարտ է մարդոյ իբրեւ բանա-
կան այլով սկզբամբ և յայլոց պատճառաց ու-
նել: Եւ զի՞նչ իցէ սկիզբն և պատճառ որով
պարտին մարդիկ ունել, և ունելովն կրել.
— Հաւատք: Ունելն 'ի յուսոյ որ 'ի զգայունս
է՝ յողդողդուն իմն է և առժամանակեայ.
միայն ունելն որ 'ի հաւատոց է՝ կարէ լինել
հաստատուն և յաւերժական. ապա վայել իսկ է
բանական մարդոյ ունել 'ի հաւատոց, զի և այն
զոր ունի կամ ստանայ, լիցի նոյնպէս հաստա-
տուն և յաւերժական. զի բարիք որ չեն 'ի
հաւատոց՝ յողդողդունք են: Թերեւս ասիցեն
ոմանք. Են բազումք յաշխարհի որ ունին մե-
ծութիւնս և բարիս բազումս, և ոչ ունին ու-
ղիղ և ճշմարիտ հաւատս. ապա են բարիք որ
չեն 'ի հաւատոց: Արդարեւ են բարիք որ չեն
'ի հաւատոց այնոցիկ որ ունինն զնոսա, այլ
յայլոց պատճառաց և 'ի դիպաց. սակայն
այնոքիկ չեն սեպհականք նոցա որ ունին
զնոսա. ոչ են պատճառք բարեաց և ոչ տե-
ւեն յորդւոց յորդիս. այլ առժամանակեայ և
յողդողդ, և պատճառք զրկելոյ 'ի բազում
բարեաց, զորօրինակ՝ յառողջութենէ, յերկա-
րութենէ կենաց, 'ի բերկրութենէ սրտի, յի-

մաստութենէ, 'ի հանճարոյ, յայլոց կարեւոր գիտութեանց, յիշխանութենէ և, 'ի վերջոյ, յանտի փառաց։ Զայս այսպէս գիտեմք 'ի փորձոյ և յիրաց դիպելոց, 'ի պատմութենէ, 'ի վկայութենէ իմաստնոց և արանց լաւաց, նաև 'ի վճռոյ Աստուածեղէն գրոց։ Որ զհակառակն սորա պնդեն, անդէտ են որպիսութեան և զօրութեան հաւատոյ, զուրկ 'ի գիտութենէ գրոց և իմաստնոց, և ոչ խօսին 'ի փորձառութենէ, այլ ըստ իւրեանց ախորժակաց յորոց խաբեալն են։

Եւ զի հաւատք չեն յամենեսին նոյնպիսի և նոյնչափ, ապա յայտ է թէ և բարիքն զոր 'ի հաւատալոյ անտի ընդունի և ունի ոք, կախեալ կան յորպիսութենէ և 'ի չափոյ հաւատոց. որպէս և Տէր 'մեր ասաց թէ Ըստ հաւատոց քոց եղիցի քեզ։ Եւ զի այս այսպէս է, ապա որչափ արժան է փոյթ յանձին ունել ստանալոյ և ունելոյ հաւատս ճշմարիտս, ուղիղս և կատարեալս։ Հաւատք պատճառ են ամենայն առաքինութեանց, մանաւանդ յուսոյ և սիրոյ. զի 'ի հաւատոյ անտի, ունիմք յոյս աներկբայ, և 'ի յուսոյ անտի սէր առ Աստուած և առ ընկերս։ Թէպէտ հաւատք, յոյս և սէր են աստուածաբանական առաքինութիւնք, սակայն առանց հաւատոյ ոչ յոյս և ոչ սէր ոչ կարեն լինել այնպիսի. զի, որպէս 'ի վեր անդր ասացաք, յոյս և սէր կարեն յայ-

լոց եւս պատճառաց ծագել, այն է՝ ոչ 'ի հաւատոց, այլ 'ի բնութենէ կամ 'ի բնական զգացմանէ։ Նոյն բանք են և զայլոց բարոյական առաքինութեանց. ամենայն առաքինութիւն որ չիցէ յուղիղ, 'ի ճշմարիտ և 'ի կատարեալ հաւատոյ, չէ ճշմարտիւ առաքինութիւն, այլ է երբեմն բնական զգացումն և երբեմն 'ի ցոյց և սնապարծութեան վասն։ Արդ արովհետեւ այսպէս է, զի առանց հաւատոյ ամենայն· առաքինութիւնք ոչինչ են առաջի Աստուծոյ և մարդոյ աստուածապաշտից, պարտիմք, քան զամենայն առաքինութիւնս և քան զսէր և զյոյս եւս, ջանալ ստանալ կատարեալ հաւատս ըստ Աստուածաշունչ գրոց և ըստ սրբոց վարդապետաց։

Ոչ միայն ամենայն առաքինութիւնք 'ի հաւատոց են, այլ և գործք զարմանալիք և մեծամեծք վճարեալ են 'ի հաւատոց, 'ի ձեռն Նահապետաց, Մարգարէից, Առաքելոց և Աշակերտաց Քրիստոսի, Հայրապետաց և այլոց անձանց ճշմարիտ հաւատացելոց։

Հաւատով ստացան Նահապետք իշխանութիւն, ստացուածս, պատիւ և փառս աստ և 'ի հանդերձելումն. Մարգարէք հաւատով գուշակեցին զապագայս, Առաքեալք հաւատով քարոզեցին և ուսուցին զճշմարտութիւն և զգալուստ որդւոյն Աստուծոյ · մարմնով յաշխարհ։ Հայրապետք հաւատով յաջորդեցին Առաքե-

րոց և ուսուցին զնոյն ։ Եւ 'ի վեր քան զամենայն Տէրն մեր Քրիստոս որ միշտ զհաւատս ուսուցանէր և քարոզէր, և 'ի հաստատոց անոխ առնէր նշանս և արուեստս մեծամեծս քան զամենեսին որ յառաջ քան զնա եղեն ։ Նա մանաւանդ առնէր արդեամբք զոր ուսուցանէրն բանիւք, տուեալ օրինակ աշակերտաց և հետեւողաց իւրոց զի և նոքա զնոյն առնիցեն. որպէս և գրեալ է թէ Նշանք այնոցիկ որ հաւատանն երթիցեն զհետ նոցա. յանուն իմ դեւս հանցեն և լեզուս խօսեսցին, այլովքն հանդերձ ։ Եւ թէ ոչ միշտ նշանք լինին զոր Աստուծոյ միայն անկ է և նա միայն գիտէ շնորհել, այլ իրք մեծամեծք առնին և կատարին, ևս և 'ի բնական և 'ի քաղաքական կարգի, 'ի ձեռն արանց որ կատարեալքն են հաւատովք ։

Ապա պարտ է մեզ որ բանաւոր մարդիկ եմք և պատկեր Աստուծոյ, նա մանաւանդ Քրիստոնեայք 'ի ձեռն մկրտութեան սուրբ Աւազանին, և հաղորդակիցք ընդ Քրիստոսի Աստուծոյ 'ի ձեռն պատուական մարմնոյ և արեան սրբոյ պատարագին, ստանալ զճշմարիտ հաւատս որդւոյն Աստուծոյ, և ունել զնա 'ի սուրբ և յաստուածախօս մատենից որ են հոգի և կեանք, և դարձեալ 'ի բնական աղբերէ ճշմարտութեան, այն է՝ 'ի տրամաբանութենէ որ է մարմին և մտունդ. զի սոքա եր-

կոքին , գիրք սուրբք և փիլիսոփայութիւն , մի են և միաբան , և 'ի միասին լինին ակն և աղբիւր ամենայն ճշմարտութեանց ։

## ԳԼՈՒԽ ԺԲ.

*Թէ զինչ են հաւատք եւ ոյք իցեն աղբիւրք նորա։*

---

Բազումք յարանց նշանաւորաց և յաստուածապաշտից բազում օրինակօք սահմանեցին զհաւատս ։ Այլ մեք զհետ երթամք սրբոյ Առաքելոյն Պօղոսի որ 'ի թղթին առ Հեբրայեցիս սահմանէ զհաւատս այսպէս . « Զինչ են հաւատք եթէ ոչ յուսացելոց իրաց հաստատութիւն , և յանդիմանութիւն որոց ոչն երեւին » ։

Աստի զհետ գայ թէ , յորժամ չիցեմք հաւատացեալ իմիք , ոչ յուսամք այնմ . և եթէ յուսամք , յոյս մեր 'ի հաւատոց մերոց է , և 'ի հաւատոց անտի մերոց առնու յոյս մեր հաստատութիւն ։ Եւ դարձեալ՝ զաներեւոյթս 'ի զգալի աչաց մերոց 'ի ձեռն ուղիղ և ճշմարիտ հաւատոց մերոց կարեմք բերել և կացուցանել յանդիման առաջի աչաց մերոց և տեսանել ։ Գիտութիւն զանցելոց և զհանդերձելոց այսինքն զապառնեաց՝ հաւատովք միայն լինի ։

Ապա հաւատք են իմացութիւն, հանճար, զգօնութիւն, գիտութիւն, իմաստասիրութիւն և իմաստութիւն անցելոյն և ապագային. և նա որ չէ իմացական՝ ոչ է ընդունակ հաւատոյ և չկարէ ունել հաւատս։ Իմացութեամբ և հանճարով և այլովք ևս զոր վերագոյն ասացաք՝ կարեմք յանդիման կացուցանել մեզ զանցեալս, զապագայս զաներեւոյթս, այսինքն՝ զայնս որ եղեն և որ լինելոց են և չեն մեզ տեսանելի, իբրեւ զառաջիկայ տեսանել և հաւատալ նոցա. զի ըստ Սողոմոնի որ ինչ լինի՝ նոյն եղեալ է և լինելոց է։ Եւ եթէ միտ դնիցեմք այլոց ևս բանից Առաքելոյն որ 'ի նոյն գլուխ Հեբրայեցւոց թղթոյն գրեալ են, զնոյն մեր միտս գտանեմք. վասն որոյ ամենայն ճշմարիտ հաւատացեալ առ 'ի գիտել թէ զինչ իցեն հաւատք, պարտի զնոյն գլուխ 'ի սկզբանէ մինչեւ ցվախճան ուշի ուշով ընթեռնուլ և ածել զմտաւ թէ որով կանոնաւ և որպիսի տեսութեամբ գրեալ իցեն։ Պարտ է ընթեռնուլ հաւաստեաւ և զայլն ամենայն որ գրեալ կան 'ի գիրս սուրբս վասն հաւատոց, և 'ի նոցունց ուսանել և խելամուտ լինել քաջ թէ զինչ իցեն հաւատք։ Զորօրինակ՝ 'ի նոյն գլուխ Հեբրայեցւոց գրեալ է թէ Հաւատովք իմանամք հաստատեալ զյաւիտեանս բանիւն Աստուծոյ, յաներեւութից զերեւելիս եղեալ։ Այս հաստատէ աւասիկ զոր ասացաքս թէ զե-

բեւեռլիս տեսանելով ընդունիմք զաներեւոյթս, զանցեալս և զապագայս իբրեւ զառաջիկայ 'ի ձեռն քննունց կարողութեանց բանականութեան զոր յառաջագոյն ասացաք ։

Բայց արժան է ձեռնարկութեամբ ուղիղ տրամաբանութեան իմաստասիրել, կշռել զնե-տեւութիւնս նորին կանոնօք և այնպէս ըն-դունել և հաւատալ. որպէս և սովոր եմք առնել, 'ի սակաւուց զբազումս, 'ի մերձաւո-րաց զհեռաւորս, յառաջիկայէն զանցեալն և զապառնիս, յերեւելեաց զաներեւոյթս. պար-տիմք իմաստասիրել և մակաբերելով հետե-ւեցուցանել 'ի ձեռն փորձոյ և ապա հաւատալ այնոցիկ որ լինելոց են առյապայ. Զի առանց գլխոյ սրբոց վկայութեան և կանոնաց տրամա-բանութեան հաւատալ յիմարութիւն է. Տգէ-տաց, ռամկաց և մարդոց մոլորելոց է. հաւա-տալ ամենայն սնոտեաց. որպէս տեսանեմք զի հեթանոսք հաւատային և արդ ես հաւա-տան կռոց և մահկանացու մարդոց մեռելոց իբր աստուածոց, ունին և պէսպէս վարդա-պետութիւնս մոլարս, և այս ամենայն ոչ այլ ինչ է եթէ ոչ հայհոյութիւն առ ճշմարիտն Աստուած և թշնամանք ճշմարտութեան ։

Այլ պարտ է գիտել զի հաւատք պարտին լինել 'ի ներքին զգացմանէ և 'ի հաւանութենէ մտաց. և 'ի ճանաչել մերում միանգամ զճըշ-մարտութիւն ըստ կարողութեանց բանակա-

նութեան մերոյ՝ պարտիմք հոգւով և սրտի մտօք հայել 'ի նա , փարել զնովաւ և կալ հաստատուն 'ի նմա մինչև ցմահ ։

Բայց վասն թէ զինչ իցեն հաւատք , և ուստի ծագումն նորա և զիարդ ծնանի 'ի մարդ բանական՝ տեսցուք 'ի ստորև ։

## ԳԼՈՒԽ ԺԳ.

*Թէ զիարդ ծագին հաւատք եւ զի՞նչ զհետ գայ ծագման հաւատոյ ։*

---

Յայս գլուխս ունիմք նախ ճառել զծագմանէ հաւատոյ և ապա թէ զի՞նչ զհետ գայ ծագման հաւատոյ ։

Նախ ասասցուք թէ ծագումն հաւատոյ և արդիւնք այնր ծագման նման են ծագելոյ արեգական և արդեանց նորա ։ Արեգակն յորժամ ծագէ , լուսաւորէ մեծապայծառ լուսովն զերկիր և զերկինս , և տայ տեսանել մարդոյ զորս միանգամ են յերկրի և յօդս , զգոյն , զդեղ և զամենայն հանգամանս նոցա , նոյնգունակ և հաւատք , 'ի ծագել իւրեանց լուսաւորեն և յայտ առնեն առաջի մտաց մարդոյն զերկրաւորս և զերկնաւորս միանգամայն , զիւր իսկ անձն մարդոյ , և զԱստուած ինքն

գլխովին 'ի ձեռն բարձրագոյն պատճառաց իբրեւ ինքնագոյ և անեղ էութիւն, պարզ, անժամանակ, ամենուրեք և գոյութիւն 'ի վեր քան զբնաւ գոյութիւնս։

Այլ հաւատք նման են արեգական ոչ ըստ ծագման նորա միայն և ըստ արդեանց, այլև ըստ հանդամանաց նորա։ Արեգական բնութիւն լոյս է, և բնութիւն հաւատոց իմաստութիւն։ Արեգակն է չափ աւուրց և ժամանակաց. հաւատք չափ են և կշիռ վարուց և բարուց մարդկան։ Արեգակն զարթուցիչ է զօրութեանց թմրելոց 'ի ծննդականութիւն և 'ի բոյս. հաւատք են զարթուցիչ բնութեան մարդոյ թմրելով յաստուածպաշտութիւն և 'ի գործս բարեաց։ Արեգակն է ոգի ամենայնի. հաւատք ոգի են ամենայն առաքինութեանց։ Արեգակն պատճառ է երեցունց շարժմանց երկրի. հաւատք պատճառ են երից կարգաց գիտութեանց բանական մարդոյ, այն է՝ բնականին, բարոյականին և քաղաքականին։ Արեգակն ծնուցիչ է լուսոյ. հաւատք ծնուցիչ յուսոյ և սիրոյ։ Արեգակն է կշիռ հաւասարութեան խառնուածոց. հաւատք կշիռ են կատարելութեան որ բարոյական հաւասարութիւնն է յամենայն գործս մարդոյ։ Արեգակն կեդրոն է դրութեան մոլորակաց. հաւատք կեդրոն և միջավայր են ամենայն առաքինական զօրութեանց մարդոյ. Ամենայն լոյս և

ջերմութիւն որ չէ յարեգակնէ՝ չէ ընդհանուր և տեւական, այլ մասնաւոր և առժամանակեայ. նոյնպէս ամենայն իմաստութիւն որ չէ 'ի հաւատոց դոյզն ինչ է և անտեւական. և զորօրինակ 'ի հեռանալ արեգական 'ի հիւսիսային կիսագնտոյ և 'ի գտանել նորա 'ի կենդանակերպի այծեղջեր նուազէ ջերմութիւն և ազդեցութիւն նորա 'ի մէնջ 'ի հիւսիսայնոց, և կարօտանամք եկամուտ ջերմութեան և զօրութեան հրոյ, նոյնպէս յորժամ յուղիղ և 'ի ճշմարիտ լուսոյ և 'ի ջերմութենէ հաւատոց նուազեմք առ յիմարութեան և մոլութեան, նոյն ժամայն կարօտ լինիմք զգայական լուսոյ և ջերմութեան, այն է՝ զգայական յուսոյ և սիրոյ. Արդ քանզի չիք իմաստութիւն միայուն և ընդհանուր առանց հաւատոց, ապա որչափ պարտ և պատշաճ է փոյթ յանձին ունել գտանելոյ զհաւատս և ստացեալ ունել զնա, զի մի փախիցեն 'ի մէնջ յոյս և սէր, և յետոյ կարօտանայցեմք զգայական յուսոյ և սիրոյ նման զգայուն կենդանեաց, զի այս 'ի թերութիւն մեծ է 'ի մեզ որ բանաւորքս եմք.

Այժմ ասասցուք թէ զիարդ ծագեն 'ի մեզ հաւատք. Ապաքէն յայտնի են ամենեցուն հանգամանք նորածին մանկանց, և թէ զինչ անցք անցանեն ընդ նոսա մինչեւ հասանեն 'ի չափ հասակի մարդոյ կատարելոյ. Ի սկզբան անդ հազիւ ունին նոքա սակաւ ինչ զգա-

ցումն. այլ զի գոյ 'ի նոսա կարողութիւն իմացման և հանճարոյ, առ սակաւ սակաւ ըստ զարգանալոյ մարմնոյ նոցա՝ զօրանայ և հոգին, մինչև յետ աւուրց իբրև քառասնից սկիզբն առնէ ծիծաղել որով իբր թէ յայտ առնէն թէ են մարդ բանական. զի, որպէս տեսաք, ծիծաղել սեպհական է մարդոյ միայնոյ յամենայն շնչաւորս. Եւ որպէս ծիծաղականութիւն է արտաքին յատկութիւն մարդոյ, ճանաչումն և ընտրութիւն ներքին յատկութիւնք նորա են. վասն որոյ ըստ յառաջել զարգացման մարմնոյ մանկանն՝ տակաւ զարթնուն ճանաչումն և ընտրութիւն նորա, և սկսանի նա ճանաչել և ընտրել զիւր մայր կամ զստնտու, ճանաչէ և ընտրէ նաև զլոյս 'ի մթոյ. և այս է սկիզբն և իբր թէ նշանակ ծագելոյ բնական լուսոյ հաւատոց յանձն մանկանն. Ըստ զարգանալ ևս քան զևս մարմնոյ և մտաց նորա՝ ճանաչումն այն և ընտրութիւն երթալով զօրանայ մինչև ցեօթներորդ ամ հասակի. յայսմ միջոցի սկսանի մանուկն խօսել և յայտ առնել զիւր գաղափարս, այլ թերակատար իմն և կիսով չափ. զի միտք և իմացումն և հանճար, այլովքն հանդերձ, չեն տակաւին հասեալ 'ի չափ կատարելութեան վասն մարմնոյն խակութեան. վասն որոյ և չկարէ տակաւին ընտրել զբարին 'ի չարէ, և զճշմարիտն 'ի ստոյ համեմատեալ զնոսա ընդ միմեանս,

յօժարել 'ի բարին և խուսել 'ի չարէն , և ընդունել զճշմարիտն և զսուտն մերժել ։ Սոյն վիճակ իրաց տեւեն յեօթն ամաց մինչեւ 'ի հինգետասաներորդ ամ, թէպէտ ամ ըստ ամէ, նա մանաւանդ օր ըստ օրէ յառաջանայ 'ի կատարելութիւն , մինչեւ 'ի լինել նորա հնգետասանամեայ՝ մարմին նորա ըստ բաւականին հասեալ է 'ի զարգացումն . վասն որոյ և միտք և հոգի նորա զարգացեալ գտանի նովին չափով, այլ գաղափարք նորա չեն տակաւին յստակք և պարզք , այլ նսեմ և խառն . չունին հաստատութիւն , այլ հանապազ 'ի փոփոխութեան կան ։ Կարող է զոր ինչ զգայարանօքն ընդունի՝ ըմբռնել յիմացականութեան , այլ չկարէ տակաւին ուղիղ դատմամբ որոշել, ճանաչել և ստուգել թէ ոյք 'ի գաղափարաց իւրոց իցեն ճշմարիտք և ոյք՝ սուտք . և այսպէս կայ և մնայ տարտամ և անորոշ մինչեւ ցքսաներորդ երկրորդ ամ հասակի ։ Ցետ այնորիկ լինի մարմինն ամենեւին կատարեալ, այլ ոչ հոգին լիովին ունի ստացեալ զիւր լրումն և զկատարելութիւն , զի ոգին զգայական բուռն է յոյժ , և բանական հոգին տկար ։ Ի հասանել 'ի քսաներորդ իններորդ կամ յերեսներորդ ամ հասակի՝ լինին և՛ մարմինն և՛ հոգին կատարեալք ըստ կազմածոյ և ըստ բնական ձրից , և յայնժամ սկիզբն առնէ զգաղափարսն զոր ընդունի և ընկալեալն է արտա֊

քուստ 'ի ձեռն զգայարանաց՝ բերել 'ի կշիռ ընդ միմեանս մտօքն, այն է՝ ոչ միայն ըմբռնել և գաղափարել, այլ և բաղդատել հանճարովն, և ճանաչել, ընտրել, դատել և կշռել, և յայնժամ զբարին և զճշմարիտն ընդունի իբրև բարի և ճշմարիտ, և զչարն և զսուտ մերժէ իբրև արդարև չար և սուտ։ Այս ընդունելութիւն նորա են հաւատք, և գայ յառաջ 'ի կատարելութենէ մտաց, 'ի հաճութենէ, 'ի յօժարութենէ և յազատ կամաց։

Ունիմք գեղեցիկ օրինակ ծագման 'ի նախահայրն մեր յԱդամ, որպէս ասացաք այլուրեք, թէ զիարդ ընդ ուտել նորա 'ի պտղոյ անտի ծառոյն յորմէ արգելեալ էր նմա չուտել, բացան աչք նորա, և կարող եղեւ ճանաչել զբարի և զչար, որով յայտ առնի ծագումն հաւատոյ 'ի նա, վասն որոյ և Աստուած ասէր թէ Ահա եղեւ Ադամ իբրև զմի 'ի մէնջ։ Ուստի զորօրինակ էր ժամանակ յորում ոչ գիտէր Ադամ զբարի և զչար, զի չունէր տակաւին զընտրութիւն բարւոյ և չարի, ճշմարտի և ստոյ, և ապա յուտելն 'ի պտղոյն ծնաւ 'ի նմա այն ընտրութիւն, այն է՝ հաւատք 'ի փորձառութենէ անտի իւրմէ, նոյնպէս և յամենայն մարդ առ հասարակ՝ է ժամանակ յորում ոչ ունի նա զայն ընտրութիւն, այսինքն զհաւատս, մինչեւ 'ի հասանել նորա յերեսնեբորդ ամ հասակի կամ 'ի չափ կատարեալ մար-

դոյ, և 'ի լրանալ փորձառութեան նորա՝ գայ կամ ծնանի 'ի նմա այն ընտրութիւն հաւատոյ՝ և զորօրինակ 'ի ստանալ անդ Ադամայ զհաւատս և 'ի կարող լինելոյ ընտրել զբարի և զչար՝ ասացաւ զնմանէ թէ եղեւ իբրեւ զաստուած, նոյնպէս և ամենայն մարդ 'ի ստանալ իւրում յանձին զհաւատս՝ յայնժամ լինի մարդ կատարեալ կատարելութեամբ բանական հոգւոյ:

Այլ զոր ինչ ասացաք զայլևայլ ամաց տիոց յորս բանականութիւն նոր իմն զարգացումն ուստի և նոր կերպարանս և նոր երեւոյթ առնու, չէ պարտ նոյնօրինակ իմանալ զամենայն մարդոյ, և ոչ ճիշդ 'ի նոյն թիւս տարեաց: Ճշմարիտ է թէ առ հասարակ յայն տիս զորոց ասացաք լինին այն փոփոխութիւնք կատարելութենէ 'ի կատարելութիւն, այլ ճշդիւ զտարին և զամիս և զօր յորում այնք լինին՝ որոշել յամենայն մարդիկ անհնար է: Քանզի բազում ինչ պատճառք, որպէս ներքին և արտաքին կազմութիւն մարմնոյ, խառնուած բնութեան, կլիմայ երկրին, պէս պէս հանգամանք մարդկան ընդ որս կեայ ոք, և այլ եւս պատճառք անծանօթք մարթին փութացուցանել կամ յապաղել, նպաստել և արգելուլ զգործողութիւնս որպէս մարմնոյ, նոյնպէս զհոգւոյ:

Միւս ևս օրինակ ծագման հաւատոյ· տե-

տանեմք յԱբրահամ, զորմէ և գիրք վկայեն թէ հաւատաց Աբրահամ յԱստուած։ Նաև հաւատոք Աբրահամու, թուի ինձ, ծագեցան ի նմա նովին օրինակաւ որպէս յԱդամ և յայլ ամենայն մարդիկ. այն է 'ի փորձառութենէ գիտութեան. զի մարթ է կարծել թէ Աբրահամ որ էր յԱշխարհէն Քաղդէացւոց, ուսեալ էր զաստեղագիտութիւն և զայլ ևս ուսմունս գիտութեանց ազգին այնորիկ, և 'ի գիտութենէ անտի իսկ 'ի ձեռն ուղիղ հետեւութեան տրամաբանական կանոնաց յերեւելեաց աստի՝ որ են գործ անհուն իմաստութեան, մակաբերեալ ծանեաւ թէ գոյ էութիւն ինչ անսահման և բանաւոր յանհունս որ է ստեղծող և արարիչ նոցա, ուստի և հաւատաց 'ի նա։ Իսկ այս հաւատք արժանի արարին զնա յայտնութեանց նորին իսկ Աստուծոյ, յորմէ և վարձս ընկալաւ զլինելն հայր ամենայն հաւատացելոց, նա և նորին իսկ որդւոյն Աստուծոյ ըստ մարմնոյ։

Յայտնի է առա կալ և ցուցանել թէ որչափ բարիք մեծամեծք պարգեւին մարդկան 'ի ձեռն հաւատոց։ Ցայս և բաւական է Աբրահամ զորմէ արդ իսկ առացաք, թէ զիարդ եղեւ նա արժանի լինելոյ հայր ազգաց բազմաց, մինչեւ զայսօր իսկ արդարեւ ազգք բազումք զմիմեամբք մրցին յընդունել զնա յիւրեանց հայր։ Այլ ևս արք անուանիք յԱբրա-

համէ և այսր, այն է՝ նախահայրեաք և մարգարէք և թագաւորք եթէ 'ի հնումն և եթէ 'ի նորումն՝ եղեալ 'ի ձեռն հաւատոց որդիք Աբրահամու, եղեն անուանի 'ի մեծութեան, յիշխանութեան, 'ի փառս, նա ոմանք և յիմաստութեան, ոչ վասն այլ իրիք եթէ ոչ վասն հաւատոց ։

Սմին հակառակ՝ որչափ անհնարին աղէտք ծնանին առ 'ի չգոյէ հաւատոց ։ Զիք ժողովուրդ և ազգ յերկրի որ ոչ պնդիցէ թէ ունի հաւատս ճշմարիտս ։ Այլ ուստի յայտ է թէ ամենեցուն հաւատք իցեն ճշմարիտք և ուղիղք և կատարեալք, ոչ ապաքէն բազմաց հաւատք թիւր են և սխալ և անկատարք ։ Սուտ ինչ և սխալ չկարէ լինել ճշմարիտ և ուղիղ՝ համարելով միայն թէ է ճշմարիտ և ուղիղ ։ այսպէս բազումք համարին զսուտ և զթիւր հաւատս իւրեանց ճշմարիտ և ուղիղ, այլ այնու ոչ լինին ճշմարտահաւատք և ուղղադաւանք ։ Ճշմարիտ և ուղիղ հաւատք այն են որ 'ի ճշմարիտ յայտնութենէ Աստուծոյ 'ի գիրս ճշմարտապէս Աստուածաշունչս ցուցեալ և առաջի եդեալ են, և զոր կարողութեամբք բանական հոգւոյ կամ լուսոյ մտաց և հանճարով 'ի ձեռն ուղիղ տրամաբանութեան ճանաչեմք լինել ճշմարիտ և ուղիղ և կատարեալ, և այնպէս ընդունիմք ։

Արդ, որպէս տեսաք, ամենայն չարիք

ծնանին յանհաւատութենէ։ Այլ մարդիկ որ առհասարակ խաբեալ են 'ի մոլար դաստիարակութենէ կամ 'ի սուտ վարդապետաց կամ յայլոց պատճառաց՝ ոչ հաւատան թէ վնասքն և չարիք զորս կրեն, իցեն 'ի թիւր և 'ի մոլար հաւատոց կամ յանհաւատութենէ իւրեանց զոր ճշմարտութիւն համարին։ Այս ամենայն չարիք, ասեն, զորս կրեմք կամ կրեալ եմք և կրելոց ես եմք՝ ոչ թէ 'ի պակասութենէ անտի հաւատոց մերոց են, այլ յանօրէնութենէ մերմէ, և 'ի մեղաց մերոց։ Արդարեւ լինին չարիք վասն մեղաց և անօրէնութեան մարդկան, որպէս մահք տարաժամք, սովք, պատերազմունք և այլ ազգի ազգի չարիք. սակայն պարտ է գիտել զի երկու ազգք են մեղաց. մին 'ի տգիտութենէ, այն է՝ յանհաւատութենէ կամ 'ի թիւր և 'ի թերի հաւատոց, և միւս ևս՝ 'ի չար գործոց։ Եւ զի յերկուց պատճառաց աստի ևս կարեն լինել չարիք և աղէտք, պարտ է յերկոցունց ևս զգոյշ լինել։ Եւ ե՞ւ իւիք մարթ իցէ կալ մնալ զերծ կամ ապրել 'ի չարեաց, եթէ ոչ զհետ երթեալ ուսման և իմաստութեան։ Ուսմամբ և իմաստութեամբ հաստատ լինիմք ոչ միայն ճշմարտութեան առհասարակ, այլ և առաջնում ճշմարտութեան որ է Աստուած։ Դարձեալ և զճշմարիտ հաւատս և զհաւատոյ ճշմարտութիւնս 'ի ձեռն հանճարոյ և իմաստութեան, ո-

րոց գլխաւորն է ուսումն իմաստասիրութեան կամ տրամաբանութեան 'ի ձեռն իմաստասիրութեան որոյ գործիք են ներքին և արտաքին զգայութիւնք և բանն՝ ճանաչեմք զանձինս և զգոյութիւն մեր, զկարողութիւնս և զխորհուրդս մեր, զիրս արտաքինս, զյատկութիւնս և զգոյութիւն նոցա, և զամենայն էութիւն իմացական և վերացեալ. որ է ասել զամենայն ինչ որ է, զէն ինքնագոյ զպատճառ ամենայն իրաց եղելոց։ Առանց ճշմարիտ կանոնաց տրամաբանութեան չիք ստուգութիւն թէ զոր միանգամ գիտեմք՝ իցէ ճշմարիտ, ուղիղ և կատարեալ։ Տրամաբանութիւն է չափ և կշիռ, և եթէ արժան իցէ ասել՝ նա է ժանտաջուր որ լուծանէ և ընտրէ զճշմարիտն 'ի ստոյ, զուղիղն 'ի թիւրէ, զբարին 'ի չարէ։ Ուսցուք ուրեմն զայս կարեւոր ուսումն։

Աստ խօսել զտրամաբանութենէ և ուսուցանել զկանոնս նորա չէ պատշաճ տեղւոյս, և մեր նպատակ չէ յօրինել ուսումն իմաստասիրութեան։ Միայն ասասցուք զայլ և այլ բնութենէ կամ զկարգաց իրաց զորոց կարեմք ունել զգիտութիւն։ Արդ՝ երեք կարգք են բնութեան իրաց զգալեաց և իմանալեաց յորոց ճանաչի գոյութիւն նոցա։ Այս երեք կարգք են՝ Գոյութիւն, Զօրութիւն և Ներգործութիւն իրաց. զորօրինակ Հուր՝ գոյութիւն է, Ջերմութիւն՝ զօրութիւն, Այրելն է ներգործու-

թիւն։ Հոգի՝ գոյութիւն է, Միտք՝ զօրութիւն, հաճելն և կամելն՝ ներգործութիւն։ Յերեցունց կարգաց աստի՝ են որ յայտնի են մեզ, և են որ գաղտնի, և 'ի յայտնեաց անտի մակաբերեմք զգաղտնիս։ Տացուք օրինակս ինչ 'ի պատկերիս որ զկնի, ուր 1 թիւն նշանակէ զգոյութիւն, 2՝ զզօրութիւն, 3՝ զներգործութիւն՝ զորոյք ցուցանեն զգաղտնութիւն։ Յորժամ փոխանակ 1 թուոյ կայցէ զրոյ, պարտ է իմանալ թէ գոյութիւն իրին որոյ անունն կայ 'ի սկզբան տողին՝ է գաղտնի։ Եթէ զրոյն կայցէ փոխանակ 2 թուոյ, պարտ է իմանալ թէ զօրութիւն իրին է գաղտնի. և եթէ փոխանակ 3 թուոյ կայցէ զրոյ, պարտ է գիտել թէ ներգործութիւն իրին է գաղտնի։ Հնգեքին սոքա կան յաղխսակի անդ, Հուր, Մաղձայոյզ, Դեղորայք, Մագնիս, Գիսաւորք.

| | Գոյ. | Զօր. | Ներ. |
|---|---|---|---|
| 1 Հուր . . . . . | 1 | 2 | 3 |
| 2 Մաղձայոյզ. | 0 | 0 | 3 |
| 3 Դեղորայք . | 1 | 0 | 0 |
| 4 Մագնիս . . | 1 | 0 | 3 |
| 5 Գիսաւորք. | 0 | 2 | 0 |

Գիտութիւնք որ ըստ տրամաբանական կանոնաց են, այսինքն՝ 'ի վերացեալ գիտութիւնս կամ 'ի վերացեալ մասունս գիտութեանց, ճառեն զգաղտնեաց, այսինքն

զայնպիսի իրաց՝ որոց գոյութիւն կամ զօրութիւն կամ ներգործութիւն անյայտ են. Քանզի բանիւ կամ տրամաբանութեամբ մակաբերեալ իմանամք զգաղտնիս 'ի յայտնեաց. զի նախ՝ ամենայն ներգործութիւն 'ի գոյութենէ իմեքէ լինի, և գոյութիւն ինչ կամ բաղադրեալ ինչ է այսինքն՝ նիւթական կամ տարրական, և կամ պարզ, այն է՝ հոգեւոր և անմարմին։ Որպէս ներգործութիւնք տարերաց և ամենայն բնական իրաց 'ի բաղադրեալ գոյութեանց են, իսկ ներգործութիւնք հոգւոց, որպէս հրեշտակաց և հոգւոց մարդկան՝ 'ի պարզ գոյութեանց. Զպարզ գոյութեանց ունիմք բազում ինչ ճառեալ յուրոյն գիրս որ չէ տակաւին 'ի լոյս ընծայեալ.

Արդ է ինչ յորոց 'ի ներգործութենէ ճանաչեմք զգոյութիւն նոցա. զօրօրինակ՝ 'ի շնչառութենէ և 'ի շարժմանէ շնչաւորաց 'ի միտ առնումք թէ գոն նոցա ոգիք. 'ի խորհելոյ, 'ի խօսելոյ և 'ի ծիծաղելոյ մարդոյ՝ իմանամք թէ գոյ 'ի նմա հոգի բանական. Այսպէս 'ի ներգործութեանց ինչ շնչաւորաց և մարդոյ իմանամք, այսինքն՝ գիտեմք և հաւատամք թէ գոյ յառաջինսն, 'ի շնչաւորս՝ ոգի զգայական, և յերկրորդումն, այն է՝ 'ի մարդն, և՛ ոգի զգայական և հոգի բանական. և 'ի հաւատալոյ առաւել թէ կենդանի բանական է մարդն՝ յուսամք թէ կարող է զամենայն պաշտօն մար-

գոյ կատարել, և 'ի նմին յուսոյ սիրեմք զնա, միայն թէ հաւատք և յոյս և սէր մեր չիցեն սուտ և յողդողդուն, այլ ճշմարիտ և հաստատուն։

Դարձեալ յանձանց մերոց և յայլոց որ իբրեւ զմեզ բանականք են, 'ի պէս պէս բնութեանց, որպէս յանասնոց, 'ի տնկոց և 'ի մետաղաց որոց ազգի ազգի զօրութիւնք և ազդեցութիւնք են, 'ի լուսաւորաց որ թաւալին յերկինս և որոշեն զաւուրս, զամիս և զտարիս, մակաբերեալ իմանամք իբրեւ 'ի ներգործութենէ զպատճառ նոցա որ է Աստուած, զէն և զգոյն մշտնջենաւոր և անսահման, յորմէ ամենայն ինչ է և ինքն ոչ է յումեքէ։ Արդ քանզի այսպէս հաւատացեալ գիտեմք թէ առանց նիւթեղէն կամ աննիւթ գոյութեան չիք զօրութիւն, և առանց զօրութեան չիք ներգործութիւն, 'ի տեսանել մեր ներգործութիւն ինչ՝ նոյն ժամայն ասեմք թէ գոյ զօրութիւն ինչ. և 'ի տեսանել մեր զօրութիւն ինչ, իսկոյն մակաբերեմք թէ գոյ անդ գոյութիւն։ Եւ թէպէտ ոչ կարեմք ճանաչել թէ զինչ է գոյութիւն, սակայն գիտեմք թէ գոյ։ Այսպէս, ըստ վկայութեան ամենայն փիլիսոփայից, յերեւելի և յաներեւոյթ իրաց իմանամք զառաջինն զբուն գոյութիւն զԱստուած, և թէպէտ ոչ տեսանեմք զնա և ոչ հասու լինել կարեմք նմա, սակայն ոչինչ երկբայիմք թէ

գոյ նա ։ Յետ հաւատալոյ մերոյ թէ գոյ Աստուած՝ հաւատամք ևս թէ ունի զօրութիւն անյաղթ և ներգործութիւն անչափ և անհուն ։

Այլ և մեզ ուղղափառ Քրիստոնէից ոչ միայն պարտ է հաւատալ յԱստուած իբրև 'ի գոյութիւն յաւիտենական, անհուն, անճառ և անեղ, այլ և յամենասուրբ Երրորդութիւն նորա ․ այն է 'ի Հայրն Աստուած իբրև արդարև 'ի գոյութիւն իմանալի ․ յՈրդին Միածին իբրև 'ի զօրութիւն Հօր, և 'ի Հոգին սուրբ իբրև 'ի ներգործութիւն նորին իմանալի էութեան ։ Թէպէտ և գոն այլ հաւատացեալք որ 'ի մի միայն էութիւն Աստուծոյ հաւատան․, այլ ոչ հաւատան զօրութեանն և ներգործութեան, ուստի և հաւատք նոցա չեն կատարեալք, զի ոչ հաւատան յԱստուած իբրև յԵրրորդութիւն ․ այսինքն 'ի մի բնութիւն Աստուածութեան յերից անձնաւորութեանց ։ Եւ եթէ հաւատային յԱստուած իբրև յԵրրորդութիւն, հաւատային արդեօք և 'ի Յիսուս Քրիստոս, 'ի Բանն և 'ի Զօրութիւն Աստուծոյ, հաւատային ևս և 'ի Հոգին սուրբ որ է ներգործութիւն նորին Աստուծոյ ըստ հաւատոց ուղղափառ Քրիստոնէից ։

Աստ արժան է յաւելուլ զայս դիտողութիւն ։ Հաւատք բազում ինչ նշանակեն ․ հաւատք կոչի երբեմն գիտակցութիւն, է զի նշանակէ զվստահութիւն, և է երբէք զի յայտ առնէ զանզգալին զայն զգացումն իմացակա֊

նութեան ։ Զամենայն բնական բարիս առանամք 'ի ձեռն գիտակցութեան, այն է փորձոյ գիտութեան ․ զքաղաքական բարիս առնումք 'ի ձեռն վստահութեան ; և զբարոյական բարիս որ են փառք հանդերձելոց՝ առնումք 'ի ձեռն անզգալի զգացման իմացականութեան ․ Վասն այսր հաւատոց ասաց Տէրն մեր թէ Ըստ հաւատոց քոց եղիցի քեզ ։ Այսմ հաւատոյ պարտ է լինել ճշմարիտ և ուղիղ և կատարեալ ․ Միջոց ստանալոյ զհաւատս գիտակցութեան են գիտութիւնք և արուեստք, մանաւանդ տրամաբանականն, որ է գլուխ և դշխոյ ամենայն գիտութեանց ․

Ինն կարողութիւնք զորոց յառաջագոյն ասացաք՝ ածեն 'ի հաւատս իբր 'ի վախճան և 'ի կատարումն ամենայնի ․ նախ 'ի վերուստ 'ի վայր, ապա 'ի ներքուստ 'ի վեր ։ Զօրօրինակ՝ այն զոր զգայ մարդ բանական 'ի ձեռն զգայարանաց իւրոց՝ անցանէ 'ի միտս և լինի նախ իմացումն ․ երկրորդ՝ իմացումն լինի ըմբռնումն ․ երրորդ՝ ըմբռնումն լինի գաղափար ․ չորրորդ՝ գաղափարն լինի բաղդատութիւն ․ հինգերորդ՝ բաղդատութիւնն լինի ճանաչումն ․ վեցերորդ՝ ճանաչումն լինի ընտրութիւն ․ եօթներորդ՝ ընտրութիւն լինի դատումն՝ ութերորդ՝ դատումն լինի կշռութիւն ․ իններորդ՝ կշռութիւն լինի ընդունումն որ է հաւատք ․ Ուստի և մարդն կենդանի է բա-

նախկան․ ըստ որում բանականն՝ է միտաւոր․ ըստ որում միտաւորն՝ է իմացող․ ըստ որում իմացողն՝ է ըմբռնող․ ըստ որում ըմբռնողն՝ է գաղափարող․ ըստ որում գաղափարողն՝ է բաղդատող․ ըստ որում բաղդատողն՝ է ճանաչող․ ըստ որում ճանաչողն՝ է ընտրող․ ըստ որում ընտրողն՝ է դատող․ ըստ որում դատողն՝ է կշռող․ ըստ որում կշռողն՝ է ընդունող զճշմարիտն իբրեւ զճշմարիտ, և զսուտն իբրեւ զսուտ, այսինքն՝ հաւատացող․ Եւ քանզի հաւատայ, ապա և յուսայ և սիրէ․ և եթէ սէր նորա է առ ամենայն մարդ ճշմարտութեամբ, սրբութեամբ և արդարութեամբ, ապա ուրեմն է կատարեալ և առաքինի․ զի լրումն ամենայն առաքինութեանց է սէրն, նախ սէր Աստուծոյ ապա սէր ընկերին․ Իսկ եթէ ոչ ունիմք ճշմարտութեամբ, սրբութեամբ և արդարութեամբ կատարեալ սէր առ Աստուած և առ ընկերս մեր, ապա չունիմք յոյս, եթէ ոչ ունիմք յոյս, ապա չունիմք հաւատս․ եթէ ոչ ունիմք հաւատս, ապա չեմք կշռողք․ եթէ չեմք կշռողք, ապա չեմք դատողք․ եթէ չեմք դատող, ապա չեմք ընտրողք․ եթէ չեմք ընտրողք, ապա չեմք ճանաչողք․ եթէ չեմք ճանաչողք, չեմք բաղդատող այսինքն համեմատողք․ եթէ չեմք բաղդատող, ապա չեմք գաղափարող․ եթէ չեմք գաղափարող, ապա չեմք ըմբռնող․ ե֊

թէ չեմք ըմբռնող, ապա չեմք իմացող․ եթէ չեմք իմացող, ապա չեմք մտաւոր և բանական կենդանի, ուստի և եմք բանական հոգւով մեռեալ, կամ մոլեգնեալ և կամ կենդանի զգայուն, նա մանաւանդ մեքենայ։ Որ մեռեալն է՝ ոչ զգայ, որ մոլեգնեալն է՝ վնասէ, որ զգայուն անասունն է՝ պատառէ իբրեւ զգազան, և որ մեքենայն է ինքնաշարժ՝ ջախջախէ և խորտակէ։ Այսպիսի ոք որ ՚ի պակասութենէ հաւատոց լինի՝ արժանի է արտաքսելոյ ՚ի միջոյ մարդկան, կամ արգելեալ կալոյ յանմարդաբնակ ուրեք տեղւոջ։

## ԳԼՈՒԽ ԺԴ․

Յաղագս որպիսութեան ուղիղ եւ ճշմարիտ հաւատոց, թէ քանիօն են եւ իւ իւիք լինին կատարեալ։

---

Պատշաճ թուի մեզ խօսել աստ համառօտիւք զորպիսութենէ ուղիղ և ճշմարիտ հաւատոց որ պարտի լինել ՚ի մարդ բանական․ զի որ պարծինն լինել բանաւոր և մտաւոր ՚ի բընէ, պարտ է նոցա, ՚ի վեր քան զայլ ամենայն առաքինութիւնս և քան զամենայն գիտութիւն, ցուցանել յանձին հաւատս այնպէս կա֊

տարեալ և առանց այլայլութեան՝ որպէս հանդերձեալ եմք ցուցանել 'ի ստորեւ, զի յայտ լիցի 'ի ձեռն հաւատոյ թէ արդարև բանաւոր եմք և պատկեր Աստուծոյ ։

Արդ պարտ և պատշաճ է բանական մարդոյ հաւատալ նախ 'ի մի Աստուած անեղ, այսինքն՝ ինքնագոյ, պարզ, ամենուրեք, անժամանակ, այն է յաւիտենական, որոյ ոչ սկիզբն է և ոչ կատարած, ամենեւին կատարեալ, միայն բարի, այսինքն՝ թէ չիք այլ ոք բարի կատարեալ իբրև զնա · պատճառ ամենայնի, այսինքն՝ արարիչ երկնի և երկրի և ամենայնի որ 'ի նոսա՝ երեւելեաց և աներեւութից · միայն դատաւոր որ հատուցանէ բանաւոր արարածոց իւրաքանչիւր ըստ գործոց իւրեանց, եթէ բարի իցեն վարձս անեղծականս, և եթէ չարք՝ պատիժս անվախճանս · և է ինքն անփոփոխ, անյաղթ զօրութեամբ և անկշիռ ներգործութեամբ ։ Յետ հաւատալոյ 'ի նա այսպէս, պարտ է հաւատալ նաև թէ արժան է պաշտել զնա և երկիր պագանել նմա 'ի բովանդակ կեանս մեր ։

Այլ հաւատովս այսուիկ լինիմք լոկ մարդիկ բանաւորք և պատկեր Աստուծոյ ըստ հոգւոյ · և զի շնորհական, այն է՝ գործնական և կատարեալ լիցին հաւատք մեր և արժանի վարձուց, պարտ է յաւելուլ 'ի նա և զայն ևս զոր ասելոց եմք ։ Ի հաւատոյ անտի զորմէ ա-

ստացաք ծագի արդարութիւն, այլ ոչ շնորհք ։ Յայտ է 'ի սուրբ գրոց և յառողջ մտաց թէ վասն արդարութեան մերոյ չպահանջին վարձք և փառք, պարտք մեր են լինել արդար զի արդարութիւն ապրեցուցանէ ։ «Հաւատով արդարանամք», ասէ Առաքեալ, այլ վասն շնորհաց ասէ թէ «Շնորհք և ճշմարտութիւն 'ի ձեռըն Յիսուսի Քրիստոսի եղեն» . և դարձեալ թէ «'Ի լրութենէ նորա մեք ամենեքին առաք շնորհս փոխանակ շնորհաց» ։ Այս յայտ է թէ առ ընդունելոյ շնորհս պարտ է մեզ ունել զշնորհական հաւատս, և այսպէս կոչեմք մեք զհաւատս որ 'ի Քրիստոս Յիսուս ։ Նմին իրի պարտ է մեզ 'ի դաւանութիւն մեր անդր Աստուծոյ յաւելուլ և զհաւատալ մեր 'ի Քրիստոս Յիսուս իբրև յՈրդի Հօր ամենակալի, յէութենէ նորա, բան և զօրութիւն Աստուծոյ ։ Բայց ոչ յայսմանէ միայն, այլ և պարտ է մեզ հաւատալ 'ի մարմնանալ նորա և 'ի ծնանելն 'ի կուսէն, որով լինին հաւատք մեր 'ի Քրիստոս, իբրև յԱստուած և 'ի մարդ կատարեալ ։ Դարձեալ 'ի մեռանել նորա 'ի խաչին, 'ի յառնելն և 'ի համբառնալ, և սովին լինին հաւատք մեր 'ի Քրիստոս ոչ միայն իբրեւ յԱստուած և 'ի մարդ, այլ և իբրև 'ի Փրկիչ ։ Դարձեալ և 'ի հանդերձեալ գալուստ նորա առ 'ի դատել . և սովին եւս լինին հաւատք մեր 'ի նա եւս և իբրեւ 'ի հատուցանող վար-

ձուց և պատժոց։ Ցետ այսորիկ առ 'ի գործել ամենեւին կատարեալ զհաւատս մեր, պարտ է մեզ ուսանել զկարգս և զգործս նորա որպէս գրեալ կան յԱւետարանսն, և զհետ երթալ և ջանալ նմանող լինել նոցա։ Այսպէս հաւատալով մեր՝ լինիմք ոչ միայն լոկ բանական մարդիկ, այլ և Քրիստոնեայք, և յայնժամ ստացեալ մեր զշնորհական և զգործնական հաւատս, լինիմք բաւական ընդունելոյ շնորհս փոխանակ շնորհաց։ Ըստ ամենայնի միաբան է ասացելոց մերոց և ուղղափառ վարդապետութիւն ամենայն առաքելական եկեղեցեաց, որպէս եղաւ առաջի 'ի Սուրբ ժողովն Նիկիոյ, ուր յօրինեցաւ իբրև օրինակ դաւանութեան համօրէն հաւատացելոց հանգանակն զոր ընթեռնումք իսկ հանապազ թէ «Հաւատամք 'ի մի Աստուած Հայր ամենակալ արարիչ երկնի եւ երկրի, երևելեաց և աներևութից. և 'ի մի Տէր Յիսուս Քրիստոս յորդին Աստուծոյ». այլովքն հանդերձ։

Եւ զի գոն և մարթին լինել այլ ևս հաւատք որք հակառակին միմեանց փոքր 'ի շատէ, և զմիմեանս եղծանեն և հերքեն, դատապարտեն և մերժեն, և ամենեքին պնդեն թէ յԱստուծոյ կամ յազդեցութենէ Աստուծոյ առեալ իցեն, զիարդ կամ որով իւիք հնար իցէ ճանաչել թէ զոր 'ի նոցանէ ընդունել արժան իցէ։ Դաստիարակութիւն, ծնողք և ուսուցիչք,

և որ եւ իցէ հեղինակութիւն մարդոյ չկարէ որոշել զայս խնդիր ։ Լուծումն սորա կախեալ կայ զտրամաբանութենէ ։ Տրամաբանութիւն որ ոչ այլ ինչ է եթէ ոչ բովանդակութիւն կանոնաց ուղիղ բանի կամ բնական լուսոյ, 'ի մէջ մտեալ լուծանէ և պարզէ զամենայն դժուարութիւն ։ Տրամաբանութիւն որ, որպէս վերագոյնն ասացաք, իբրև զժանտաչուր զտէ և զատանէ յամենայնի զճշմարիտն 'ի ստոյ, զուղիղն 'ի թիւրէ, զբարին 'ի չարէ՝ զտէ և որոշէ նոյնպէս 'ի հաւատս զճշմարիտն 'ի ստոյ ։ Ի ձեռն տրամաբանութեան կշռելով մեր 'ի պատճառաց զգործս, 'ի գործոց զպատճառս, 'ի ներգործութենէ զզօրութիւն, 'ի բանից զիրողութիւնս, 'ի պէս պէս հանգամանաց պատմութեան զճշդութիւն ժամանակին, տեղեաց և անձանց, 'ի հանգամանաց անձանց զճշմարտախօսութիւն, զկարողութիւն, զիմաստութիւն նոցա, և զայլ բազում ինչ, հասու լինիմք ճշմարտութեան, և այնպէս հաւատք մեր զոր ընդունիմք յաւանդութենէ, 'ի գրոց և 'ի հեղինակութենէ մարդկան, լինին բանաւոր և ճշմարիտ ։ Նա որոյ հաւատք բանաւոր են՝ ոչ միայն ընդունի զնա հաստատութեամբ և ոչ խոտորի անտի կամ ուրանայ զնա, այլ և յօրինեալ յարդարէ զվարս իւր ըստ ճշմարիտ բարոյականի հաւատոյ և տայ եւս զկեանս իւր և զամենայն ինչ վասն նորա, որպէս արարին վը-

կայք, այն է մարտիրոսք յամենայն դարս։ Ընդհակառակն՝ նոքա որոց հաւատք չեն բանաւոր՝ յողդողդ են 'ի հաւատս իւրեանց, կեան ըստ զգայական ախորժանաց և ըստ ազդեցութեան անկարգ կրից, և են մանաւանդ մոլեգնեալ ինչ կենդանի, քան մարդ բանական. շարժին յամենայն հողմոյ խաբէութեան, 'ի թելադրութենէ մոլար մարդոց, յերկիւղէ և 'ի շահուց, և փոխանակ տալոյ զամենայն ինչ վասն պահպանութեան հաւատոց՝ տան զհաւատս իւրեանց վասն ամենայնի։ Վասն այսորիկ Առաքեալ ասէ զճշմարիտ հաւատացելոց որոց հաւատք բանաւոր են, թէ Ոչինչ կարէ մեկնել զնոսա 'ի հաւատոց իւրեանց, ոչ մահ, ոչ կեանք, ոչ հրեշտակք, ոչ մարդիկ, ոչ որ կանս և ոչ հանդերձեալքն։ Զորին հակառակն պարտ է իմանալ զայնցանէ՝ որոց հաւատք չեն զտեալ և հաստատեալ բանական լուսով ուղիղ բանին կամ տրամաբանութեան, ուստի և չեն բանաւորք։



# ԳԼՈՒԽ ԺԵ·

*Յաղագս պէս պէս բաժանմանց հաւատոյ եւ մեկնութիւն նոցա։*

---

Աստ ունիմք խօսել զբաժանմանէ հաւատոյ։ Պարտ է գիտել զի հաւատք ըստ բնութեան են մի և անբաժին. այլ բաժանին միայն ըստ առարկայից, որպէս յետ սակաւ միով տեսցուք։ Զայսոսիկ այլ և այլ բաժանմունս հաւատոյ արժան է քաջ գիտել և ընտրել 'ի միմեանց, զի մի լիցի 'ի սխալանս անկանել. զի առ 'ի չգիտելոյ զպէսպէս ազգս հաւատոյ և զընտրութիւն նոցա բազումք հանապազօր բազում վնասս կրեն, ընդ որ արդարեւ ցաւ է մեզ։

Արդ՝ առարկայք կամ իրք որոց որ և իցէ օրինակաւ հաւատամք, կամ որ լինին մեզ հաւատալիք, են՝ կամ բնական, այսինքն՝ ֆիզիկական, որպէս ամենայն իրք նիւթականք կամ մարմնաւորք որք անկանին ընդ զգայութեամբ. կամ՝ մտաւորք այսինքն աննիւթք որ մտօք և եթ ըմբռնին, և կամ՝ այնպիսի ինչ՝ որ զդըրութենէ կամ զսովորութենէ մարդկան կախեալ կան։ Ըստ այսց երից բաժանմանց իրաց կամ առարկայից, հաւատք եւս որ առնուն զանուանումն. ուստի նախ՝

բնական կոչին հաւատք որ են զմարմնաւոր զֆիզիքական իրաց, երկրորդ վերացեալ կոչին հաւատք որ են զմտաւոր իրաց, երրորդ՝ քաղաքական կոչին հաւատք որ են զդրական իրաց։

Այս երեքին բաժանմունք հաւատոյ ունին դարձեալ զիւրեանց երկրորդական բաժանմունս։ Բնական հաւատք բաժանին յերկուս՝ ՚ի Զգայական, և ՚ի Մտացական։

Վերացեալ հաւատք բաժանին յերիս՝ ՚ի Բարոյական, ՚ի Բնազանցական և ՚ի Կրօնական։

Քաղաքական հաւատք յերկուս՝ յԱնհատական և ՚ի Դրական կամ յիրաւաբանական։ Այժմ արժան է մեզ ճառել զոցունց մի ըստ միոջէ։

Առաջին բաժանումն հաւատոյ, որպէս ասացաք, Բնականն է. և բաժանի ՚ի Զգայական և ՚ի Մտացական։ Զգայական ասի, քանզի յառաջ գայ ՚ի զգացմանէ կամ զգալով, այսպէս զգայական հաւատով գիտեմք, կամ զգալով հաւատամք եթէ հուր ջերմէ. և ջուր՝ ցուրտ և խոնաւ։ Մտացական ասին այն բնական հաւատք որ յառաջ գան ՚ի ծանօթութենէ գիտութեանց և արուեստից, և այս գիտութիւնք կամ արուեստք կոչին բնական գիտութիւնք և բնական արուեստք, որոց գլխաւորք են, Բնաբանութիւն, Բնաբուծութիւն, Բժշկականութիւն, Հանքաբանութիւն,

Տնկաբանութիւն, կենդանաբանութիւն, Ներկարարութիւն, Ջափաբերութիւն և Աստեղագիտութիւն։

Բնաբանութիւն է գիտութիւն որ քննէ զպատճառս բնական երեւութից։ Բնալուծութիւն զօրէնս բաղադրութեան բնական մարմնոց լուծանելով զնոսա 'ի մասունս իւրեանց։ Բժշկականութիւն որ ունի այլ և այլ օգնական գիտութիւնս՝ քննէ գլխաւորաբար զպատճառս հիւանդութեանց կենդանեաց մանաւանդ մարդոյ, և զհնարս դարմանելոյ զնոսա։ Հանքաբանութիւն է ուսումն ամենայն անգործարան մարմնոց, որպէս քարանց, մետաղաց, աղից և այլոց։ Տնկաբանութիւն է ուսումն տնկոց, և քննէ զկազմութիւն, զգործարանս և զբաժանումն թագաւորութեան բուսականաց։ Կենդանաբանութիւն հանդերձ բնախօսութեամբ ուսուցանէ զգործարանս մարդոյ և այլ և այլ ազգաց շնչաւորաց, զպաշտօն իւրաքանչիւր գործարանաց և զպէս պէս բաժանմունս նոցա ըստ առանձինն յատկութեանց նոցա։ Ներկարարութիւն է արուեստ պէս պէս գունոց և խառնուածոց նոցա, որպէս և ճշմարիտ և սուտ ներկոց։ Ջափաբերութիւն է գիտութիւն թուական և տարածական քանակութեանց։ Աստեղագիտութիւն ճառէ զշարժմանց երկնային մարմնոց, և զպէս պէս փոփոխմանց նոցա։

Զգայական հաւատով, այն է գիտութեամբ որ 'ի ձեռն զգացողութեան՝ 'ի վերայ հասանեմք պէս պէս յատկութեանց և զօրութեանց մարմնոց 'ի ձեռն փորձառութեան, և կարեմք 'ի կիր արկանել զնոսա յօգուտ և 'ի պէտս մեր կամ խորշել 'ի նոցանէ։ Ստացական հաւատով, այն է՝ 'ի ձեռն ուսմանց և գիտութեանց զգացողական հաւատք մեր կատարելագոյն ևս լինին. այնպէս զի՝ այն որ 'ի ձեռն զգայական հաւատոյ թերի էր, և բազում անգամ անհնար էր մեզ նովաւ պահել, դիւրացուցանել և երջանիկ գործել զկեանս մեր՝ 'ի ձեռն ստացական հաւատոյ ծառայէ մեզ առ բազում ինչ։ Բնաբանութիւն և Բնալուծութիւն ծառայէ յարուեստս և 'ի ձեռագիտութիւնս. բժշկականութիւն զառողջութիւն և զկեանս մեր պահէ, և է զի ապրեցուցանէ ևս 'ի թշուառութենէ և 'ի մահուանէ։ Հանքաբանութիւն, տնկաբանութիւն և կենդանաբանութիւն ծանօթս գործէ զմեզ բնական մարմնոց եթէ գործարանաւորաց և եթէ անգործարանաց, և ծառայեցուցանէ զնոսա մեզ։ Զափաբերութիւն 'ի բազում ինչ օգտակար է մեզ, 'ի հաշիւս, 'ի վաճառականութեան, 'ի զինուորութեան, 'ի ճարտարապետութեան և յայլ բազում ինչ։ Աստեղագիտութիւն տեղեկացուցանէ զմեզ ազդեցութեան որ լինի յերկնային մարմնոց առ միմեանս, և ոմանց նաև յերկիր

մեր յորում բնակիմք. բազում ինչ փոփոխ-
մունք, որպէս բեղմնաւորութեան և անպտ-
ղութեան, առատութեան և երաշտութեան,
նուազութեան արեգական և լուսնոյ, երբեմն
եւս հիւանդութեանց, եղանակաց, տարեաց,
ամսոց և աւուրց, 'ի ձեռն աստեղագիտու-
թեան ծանօթ լինին մեզ. Ամբաւ է և անհամար
են օգուտք և շահք որ լինին մեզ 'ի գիտու-
թեանց աստղական հաւատոյ.

Գիտութիւնք որ են արդիւնք դիտողու-
թեան և փորձոյ ուսուցանեն մեզ զհաստա-
տուն օրէնս բնութեան, զմիակերպ և զմիօրի-
նակ կարգս և զանխախտ ընթացս իրաց. և
այնպէս յանցելոց անտի հաւատամք ապագա-
յին. որպէս Սողոմոն ասէ թէ Որ ինչ եղեալ է՝
նոյն է որ լինելոց է. Այս սկզբունք են խելա-
մտութեան ըստ տրամաբանից որով 'ի փորձոյ
և 'ի քննութենէ մասնաւոր իրաց հասանեմք
կամ մակաբերեմք զընդհանուր օրէնս նոցա.

Վասն վերագրեալ հաւատոյ աստղաց թէ
բաժանի 'ի Բարոյական, 'ի Բնագանցական և 'ի
կրօնական. Բարոյական հաւատք ծնանին 'ի
մեզ 'ի ձեռն իմացական կարողութեանց, յոր-
ժամ 'ի ձեռն զգայութեանց և ըմբռնման առա-
նամք զգաղափարս իրաց, ճանաչեմք զնոսա
և բաղդատելով կշռեմք, յայնժամ ընդունիմք,
և հաւատամք եթէ այս ինչ գործք կամ խոր-
հուրդք ծնանին բնականապէս զայս ինչ բա-

րոյական զզգացումն և զյօժարութիւն տալոյ ՚ի մեզ նոյնպէս յայլս . և այնպէս մանկաբերեմք ե-թէ զոր ինչ առնեմքն այլոց՝ զփոխարէն ազդե-ցութիւն նոցա կրելոց եմք ՚ի մեզ ՚ի նոցանէ , որպէս այլք կրեն ՚ի մէնջ զփոխարէն բնական ազդեցութիւն գործոց նոցա որ ՚ի մեզ . Զայս փորձառութիւն իմացական օրինաց կոչեմք բա-րոյական հաւատս : Այս բարոյական հաւատք ուսուցանեն մեզ զբարին առնել միշտ առ նմա-նիս մեր , եթէ կամիմք փոխարէն բարեաց հան-դիպել ՚ի նոցանէ . և զգուշանալ յառնելոյ նո-ցա չարիս զի մի ըստ արժանւոյն կրիցեմք և պատժիցիմք , եթէ ոչ այս , ապաքէն ՚ի հան-դերձելումն յօրէնսդրէն բնական օրինաց իմա-ցականութեան որ է Աստուած . Բնազանցա-կան հաւատք են ծագին ՚ի մեզ ՚ի ձեռն բանի և հանճարոյ . տալով ճանաչեմք զընդհանուր ճշմարտութիւնս գոյութեանց , թուոց , քանա-կութեանց , համեմատութեան , նմանութեան և այլոց բազմաց . այս ճշմարտութիւնք են իւ-րեւ առածք կամ ինքնայայտ ճշմարտութիւնք : Այսր բնազանցական հաւատոյ աղբիւր է ի-մաստասիրութիւն կամ տրամաբանութիւն , և որ ինչ սովին ճանապարհաւ ստացեալ ունիմք՝ է ճշմարիտ և անհակառակելի :

Կրօնական հաւատք են գիտութիւն և ծա-նօթութիւն այն ամենայն իրաց զորս ՚ի յայտ-նութենէ գրոց Սրբոց և ՚ի վարդապետութենէ

ուղղափառ վարդապետաց ուսանիմք ։ Եղեն և են բազումք որ , քանզի չեն կատարեալ և զօրաւոր միօք և դատողութեամբ , և կամին զամենայն ինչ ըստ իւրեանց հասողութեան իմանալ և դատել , մերժեն և ուրանան զճշմարտութիւն կրօնական հաւատոյ ։ Այլ այսպիսիք են տխմարք , երբեմն ևս անձնասէրք և արծաթասէրք ոչ միայն յաշխարհականս , այլ և յեկեղեցականս որք արծաթով են ընտրեալ և ոչ յԱստուծոյ , ըստ բանի Մովսէսի Խորենացւոյ որոյ վաղագոյն իսկ ողբացեալ է վասն նոցա 'ի գիրս իւր ։ Նոքա որ չունին բաւական իմաստութիւն և դատողութիւն կամ գիտութիւն քննելոյ և դատելոյ զճշմարտութիւն որ բովանդակեալ կան 'ի Սուրբ Գիրս և 'ի մատեանս հարց սրբոց և Աստուածախօս վարդապետաց , պարտին անսալ իմաստուն և բարեպաշտ առաջնորդաց և ուսուցչաց որ քաջածանօթ և փորձ են քան զնոսա , և այնպէս ընդունել և հաւատալ , և կալ մնալ 'ի նոյն հաւատս ։

Վասն քաղաքական հաւատոյ ասացաք թէ յերկուս բաժանի , յԱնհատական և 'ի Դրական կամ յիրաւաբանական ։ Անհատական հաւատով իմանամք զվստահութիւնն որով երկուք կամ բազումք 'ի միջի իւրեանց հաստատեն դաշինս ինչ կամ ուխտ , եթէ 'ի ձեռն գրոյ կամ մուրհակի և եթէ անգիր փոխադարձ պար֊

տաւորութեամբ կապելով զանձինս 'ի կատարումն իրիք կամ 'ի խորշումն յիմեքէ ։ Այս հաւատք քանզի յառաջ գան 'ի վստահութենէ զոր ունին երկոքին կողմանք առ իրեարս, առանց իշխանութեան կամ դրական ինչ օրինաց հեղինակութեան՝ ունելով միայն զսկզբունս բնական արդարութեան և պատուոյ որ կախեալ կայ 'ի կատարմանէ խոստման տուելոյ . վասն այնորիկ կոչեցաք անհատական հաւատս ։ Դրական կամ իրաւաբանական հաւատք ունին հիմն 'ի դրական օրէնս եդեալս . 'ի վերագոյն օրէնսդիր իշխանութենէ, որպիսի են ամենայն պայմանք և ուխտք և դաշինք 'ի տուրեւառս, 'ի գինս, 'ի վաճառս և յայլ ևս պարտաւորութիւնս որ կատարին ըստ օրինաց ինչ կամ իրաւանց 'ի մէջ եթէ անհատից, եթէ ընկերութեանց և եթէ տէրութեանց ։

Պարտ է գիտել նախ՝ զի վասն հաստատութեան կամ օրինաւորութեան և վստահելի լինելոյ այսր քաղաքական հաւատոյ՝ հարկ է զի իցեն պայմանադրութիւնքն համեմատ բնական օրինաց արդարութեան յանհատականին, և դրական կամ քաղաքական օրինաց տեղւոյ, քաղաքի, աշխարհի և ընկերութեան, եթէ քաղաքային իցէ ընկերութիւնն, եթէ արուեստական, եթէ առեւտրական, եթէ ուսումնական և եթէ կրօնական ։ Զի եթէ պայմանադրութիւնն չիցէ ըստ սահմանաց կամ կանո֊

նաց պահանջելոց , և չիցէ կատարեալ ըստ ա-
րարողութեան և հանդիսութեան որ օրինօք
կամ սովորութեամբ սահմանեալ է առ այս ,
ոչ պայմանադրութիւնն լինի օրինաւոր , և ոչ
հաւատք մեր որ առ այն կարէ լինել հաստա-
տուն և վստահելի ։ Աստի զհետ գայ թէ պարտ
է քաջ տեղեկանալ , ուսանել և գիտել զսկըզ-
բունս իրաւաբանութեան , զօրէնս և զսովորու-
թիւնս , և ճանաչել զօրինաւոր իշխանութիւն
երկրին կամ տեղւոյն կամ ընկերութեան , յո-
րում կամ ընդ որում ունիմք կալ ել ինչ դաշն
կամ պայման , կամ դնել ուխտ կամ կնքեալ
մուրհակ , կամ տալ և ընդունել ձեռնագիր ։

Երկրորդ պարտ է գիտել զի մեք պէս պէս
տեսակաց զորոց ճառեցաք , սոսաք ընդ հա-
նուր բանիւ զանուն հաւատոյ , կոչեցեալ զամե-
նեսին հաւատս ։ Այլ բազումք ՚ի սոցանէ ՚ի
հասարակաց լեզուէ ունին այլ և այլ անուանս ։
Զոր օրինակ զգայական հաւատոյ ասի փոր-
ձառութիւն , ստացական հաւատոյ՝ գիտու-
թիւն , բարոյականին ասի խիղճ մտաց , ընա-
զանցականին՝ գիտակցութիւն և բան , կրօնա-
կանին՝ բուն հաւատք , քաղաքականին՝ վստա-
հութիւն ։

Այսչափ ինչ չափ համարեալ վասն հաւա-
տոյ , եկեսցուք այժմ ճառել զՅոյս ։



## ԳԼՈՒԽ ԺԶ.

Յաղագս յուսոյ։

---

Յոյսն է զօրութիւն հաւատոյ։ Հանդարտեցուցանէ զմիտս և բերկրեցուցանէ զսիրտ։ Դարձեալ՝ յոյսն է իբրև զլոյս արեգական, զի լուսաւորէ զմիտս բանաւորաց, և նովաւ տեսանեմք զոր միանգամ ընկալեալ եմք 'ի հաւատոց։ Եթէ հաւատք նման են գոյութեան արեգական, որպէս յառաջն ասացաւ, ապա և յոյս նման է զօրութեան նորին գոյութեան, կամ որ նոյն է՝ հաւատք գոյութիւն են, և յոյս՝ զօրութիւն։ Եւ զորօրինակ անհնար է լինել լուսոյ առանց արեգական, նոյնպէս չէ հնար լինել յուսոյ առանց հաւատոց 'ի բանաւորս։ Աստի զհետ գայ թէ որ ոչն ունիցի զճշմարիտ և զուղիղ հաւատս՝ անմասն է 'ի հաստատուն յուսոյ։ Եւ զի այս այսպէս է, ապա պարտ է մեզ որ բանաւորքս եմք՝ ջանալ ունել զճշմարիտն և զուղիղ հաւատս, զի ունիցիմք և յոյս, և յոյս մեր լիցի աներկեւան ըստ չափոյ հաւատոց մերոց։

## ԳԼՈՒԽ ԺԷ.

*Յաղագս ծագման յուսոյ թէ ուստի իցէ ։*

---

Ի ստանալ մերում զուղիղ և զճշմարիտ հաւատս 'ի ձեռն աստուածապարգեւ բնական լուսոյ և 'ի ձեռն գիտութեանց և արուեստից, անդէն և անդ ծագէ 'ի ներքս 'ի մեզ լոյս, և սկիզբն առնումք յուսալ։ Այլ առանց ունելոյ զհաւատս մի ոք խաբեսցի և կարծեսցէ ունել յոյս ճշմարիտ. քանզի զիարդ հնար իցէ ծագել յուսոյ որ լոյս է, մինչչեւ ծագեալ հաւատոց որ է արեգակն ։

---

## ԳԼՈՒԽ ԺԸ.

*Յաղագս թէ որպիսի պարտի լինել յուսոյ ։*

---

Բանական մարդոյ չէ արժան վարկպարազի կամ վայրապար առանց օրինաց և կանոնաց յուսալ։ Օրէնք և կանոնք յուսալոյ այս են ։ Նախ՝ պարտ է յուսալ ըստ բնութեան իրաց, երկրորդ՝ ըստ գործոց, երրորդ ըստ չափոյ, չորրորդ ըստ անձանց, հինգերորդ ըստ տեղւոյն, վեցերորդ ըստ ժամանակի ։ Որ

ոք ընդ հակառակն սոցա ունիցի լոյս՝ խաբի և վնասի. զորօրինակ՝ չէ մարթ 'ի ձիոյ ակնունել այծ, կամ յայծէ ձի. այլ 'ի ձիոյ ձի, և յայծէ այծ. այս է յուսալ ըստ բնութեան իրաց. չէ արժան յուսալ 'ի ստախօսէ ճշմարտութիւն, քանզի պարտ է յուսալ ըստ գործոց, և ճշմարիտն ասել հակառակ է գործոց ստախօսին։ Որ յուսայն ունել արմաւ 'ի Պաղեստին յուսայ ըստ տեղւոյն, այլ ոչ նա որ 'ի Կարին զնոյն յուսայ. նոյնպէս յիմարութիւն է յուսալ ջեր և տօթ 'ի Յունուարի, կամ ցուրտ և սառամանիս յամսեանն Յուլիսի. քանզի, որպէս ասացաք, պարտ է յուսալ ըստ ժամանակի։ Այսպէս պարտ է իմանալ և զայլոցն։

Դարձեալ 'ի վեր անդր բաժանեցաք զհաւատս 'ի բնական, 'ի բարոյական և 'ի քաղաքական։ Արդ քանզի ասացաւ թէ լոյս ծագէ 'ի հաւատոց, ապա չէ արժան կարծել թէ 'ի բնական հաւատոց կարէ ծագել 'ի մեզ լոյս բարոյական կամ քաղաքական, որպէս ոչ 'ի բարոյականէն և 'ի քաղաքականէն բնական. այլ 'ի բնական հաւատոց ծագի բնական լոյս, 'ի բարոյականէն բարոյական և 'ի քաղաքականէն քաղաքական։ Այսչափ շատ լիցի վասն որպիսութեան յուսոյ. յայլում տեղւոջ խօսեսցուք ընդարձակագոյնս։



## ԳԼՈՒԽ ԺԹ․

Յաղագս բաժանման լուսոյ ։

---

Որովհետև ասացաւ թէ լոյս զհետ երթայ ամենեւին և յամենայնի հաւատոյ, զի 'ի նմանէ ծնանի և նովաւ կայ, ապա յայտ է թէ և բաժանումն նորա պարտի լինել ըստ հաւատոյ․ ուստի և աւելորդ իմն է աստ երկայնաձիգ բանիւք ջանալ բաժանել զլոյս ։ Որպէս գոն բնական հաւատք, գոյ նոյնպէս բնական լոյս․ զոր օրինակ են հաւատք բարոյականք, է և լոյս բարոյական․ և որպէս գոն հաւատք քաղաքականք; ըստ նմին օրինակի պարտի լինել և լոյս քաղաքական ։ Որպէս հաւատամքն, և առ որ հաւատամքն՝ նոյնպէս և առ այն լուսամք․ չէ մարթ այլ ազգ հաւատալ և այլ ազգ լուսալ․ ապա որոյ սեռի են հաւատք մեր, նորին սեռի է և լոյս մեր ։

---

## ԳԼՈՒԽ Ի․

Յաղագս սիրոյ, եւ սահմանի նորա ։

---

Բազումք 'ի բարոյագիտաց և 'ի գիտնոց բազում օրինակաւ ետուն սահման սիրոյ․ քան֊

զի պէս պէս մտօք իմանան զսէրն ։ Մեք այլ ազգ ունիմք սահմանել զնա , աննման ամենեւին յայլոցն ամենեցունց ։ Արդ ըստ մեզ Սէրն է կապ կամ պատկ իմանալի որ զերկուս ինչ կամ բազումս , զանհատս և զազգս միանգամայն կապէ կամ պատկէ ընդ միմեանս ։ Այս կապ կամ պատկ յօդի և կազմի յերից , այն է՝ ՚ի համակրութենէ , ՚ի բարոյական և ՚ի քաղաքական յարաբերութենէ ։ Մարթի և այլ բազում ինչ խառն լինել ընդ երեսին սոսա ՚ի կազմութեան սիրոյ , այլ սոքա են գլխաւոր և էական կազմիչք սիրոյ , այլքն ամենեքին իբրեւ հանգամանք սոցա մնանեն ՚ի ներքս ։ Այլ զայսմանէ տեսցուք ընդարձակագոյնս ՚ի բաժանման սիրոյ ։

Բազում տեսութեամբ մարթ է ըստ բնութեան և այլաբանաբար նկատել զսէր ։ Նախ ըստ բնութեան նկատելով՝ սէրն է պատճառ ամենայն արարած գոյացութեանց , պատճառ խաղաղութեան նոցա , մանաւանդ բանաւորաց , դարձեալ պատճառ և կենաց ։ Քանզի ՚ի սիրոյ ծնանիմք , զօրաջինամք ՚ի յուսոյ տածիմք և հաւատով զարգանամք , զօրանամք և լինիմք երջանիկ ։

Երկրորդ սէրն ըստ բնութեան է սկիզբն ամենայն օրինաց և պատուիրանաց Աստուծոյ ։

Այլաբանաբար՝ սէրն է իբրեւ զջերմութիւն արեգական , զի նովաւ յառաջ գան ա֊

մենայն բարիք, որպէս 'ի ջերմութենէ գան 'ի գոյութիւն և յարդիւնս ամենայն մարմինք բնականք, մետաղք, բոյսք և շնչաւորք։ Սէրն է պսակ ամենայն առաքինութեան։

Ի վերջոյ՝ սէրն երկոտասաներորդ ներգործութիւն է բանական հոգւոյ։ Քանզի յետ հինգ կարողութեանց որ են՝ միտք որ 'ի ձեռն հինգ զգայութեանց լինի իմացումն, ըմբռնումն, գաղափար, հանճար որ է բաղդատութիւն, ճանաչել, ընտրել, դատել և կշռել՝ գան անձնիշխան կամք որով ընդունի հոգին, այսինքն՝ հաւատայ. յետ հաւատոյ յոյս, հուսկ ուրեմն սէր որ է երկոտասաներորդն 'ի ներգործութիւնս հոգւոյ։

## ԳԼՈՒԽ ԻԱ.

Յաղագս ծագման սիրոյ։

Սէրն 'ի բնէ հեղեալ է յԱրարչէն յամենայն արարած գոյութիւնս և 'ի գոյացութիւնս։ Մեք աստ 'ի բաց թողեալ զսէր ամենայն արարած գոյութեանց և գոյացութեանց, խօսեսցուք միայն զսիրոյ բանական մարդոյ։

Արդ՝ խնդիր մեր այն է թէ ուստի՞, երբ և ո՞րպէս ծագիցի սէր բանական մարդոյ։ Մեք

բանաւորքս զգամք նախ 'ի ձեռն հնգից զգայարանաց, և նոյն արտաքին զգայարանք ազդառնեն ներքին զգայարանաց թէ հաճոյ իցէ արդեօք նոցա եթէ անհաճոյ զգացումն այն. ներքին զգայարանք ևս՝ զնոյն ազդ առնեն ներքին գործարանաց, և ներքին գործարանք համեմատեն զզգացումն, այն է՝ դատեն և որոշեն զյարմարութիւն և զանյարմարութիւն յատկութեանց զգացմանն և ազդ առնեն արտաքին զգայարանաց, և հրամայեն նոցա մերձենալ յառարկայն զգացման, եթէ իցէ հաճոյ զգացումն, և հեռանալ 'ի նմանէ, եթէ իցէ անհաճոյ. այս է աւասիկ սէրն և ատելութիւն։ Ապա յայտ է թէ սէրն բանական մարդոյ 'ի զգացմանէ ծագի 'ի մարդն։ Քանզի զառարկայն հաճոյական զգացման, եթէ իր իցէ, եթէ յատկութիւն ինչ, սկսանի սիրել հոգին։

Այս է առաջին օրինակ ծագման սիրոյ 'ի ձեռն զգացման։ Այլ սէր ոչ ծագի միայն 'ի զգացմանէ, այլ երբեմն ծագի և յիմացմանէ, այսինքն՝ 'ի հաւատոց կամ 'ի գիտութենէ իրիք զոր յառաջագոյն իմացեալ և ընկալեալ է։ Զորօրինակ 'ի պատմելոյ ոմանց ուսանիմք եթէ այս ինչ ոք իմաստուն է և առաքինի. և նոյնժամայն, առանց արտաքին զգայարանաց օգնութեան, 'ի գործոց իմաստութեան և առաքինութեան նորա հասու լեալ թէ է այնպէս, սիրեմք զնա 'ի հարկէ. զի, որպէս ասի.

ծառ 'ի պտղոյ իւրմէ ճանաչի, և դարձեալ ասի թէ նման զնման իւր սիրէ. կամ յորժամ 'ի լրոյ արժանահաւատ մարդոց տեղեկանամք թէ յայս ինչ տեղւոջ է խաղաղութիւն, հանգիստ, երջանկութիւն և առողջութիւն, սկսանիմք սիրել զայն տեղի, զկլիմայ նորա, զդիրս, զբերս և զայլ ևս հանգամանս նորա. Յայտ է թէ յայսպիսի դէպս ծագի 'ի մեզ սէր ոչ 'ի զգայարանաց, այլ 'ի վկայութենէ առանց ճշմարտախօսաց.

Սէրն Աստուծոյ ևս ծագի 'ի մեզ յիմացմանէ. զի որպէս յայլում տեղւոջ ասացաւ, յուղիղ և 'ի ճշմարիտ յայտնութենէ ուսեալ թէ գոյ Աստուած, արարիչ մեր ամենեցուն և ամենայնի որ են, 'ի միտ առնումք թէ արժան է սիրել զնա, պաշտել և երկիր պագանել նմա.

Իսկ ժամանակ ծագման սիրոյ յայնժամ է՝ յորժամ զգայարանք մեր 'ի տղայական թմրութենէ զարթնուն. յետ զարթնլոյ զգայարանացն սկսանի ծագել 'ի մեր սէրն.

Այլ թէ որպէս կամ զիարդ ծագէ սէրն, պարտ է գիտել զի որպէս ընդ ծագել արեգական ծագէ ընդ նմա լոյսն և ջերմութիւն միանգամայն, նոյնպէս 'ի ծագել հաւատոյ ծագէ ընդ նմին յոյս և սէր. Դարձեալ ծագէ 'ի մեզ սէրն անդ՝ ուր գտանեմք զմեր նման, կամ զայն ինչ որում ախորժանօք ցանկամք.

# ԳԼՈՒԽ ԻԲ․

*Ցաղագս որպիսութեանց ճշմարիտ սիրոյ։*

---

Բազում և ազդի ազդի են որպիսութիւնք սիրոյ, յորոց իբրև 'ի ճշմարիտ նշանաց ընտրի և ճանաչի ճշմարիտ սէր․ գլխաւորսն միայն համառօտիւ արկցուք 'ի համար։

Նախ՝ նա որ սիրէ ճշմարտապէս՝ հանապազ զբարիս ցանկայ և խնդրէ վասն իւրոյ սիրելւոյն․ երկրորդ՝ ընդ լաւութիւն և ընդ յաջողութիւն նորա խնդայ․ երրորդ՝ միշտ պատրաստ է օգնել նմա․ չորրորդ՝ հանապազ գովէ զնա․ հինգերորդ՝ հաւատայ նմա․ վեցերորդ՝ զպատուիրանս նորա անթերի պահէ․ եօթներորդ՝ խոնարհի նմա և միշտ 'ի հնազանդութեան կայ․ ութերորդ՝ ծառայէ նմա․ իններորդ՝ միշտ համարձակ է առ նմա․ տասներորդ՝ ոչ կամի երբէք զի վրիպեսցի նա յաչաց իւրոց․ մետասաներորդ՝ ցանկայ և ջանայ ևս զի և այլք սիրեսցեն զնա․ երկոտասաներորդ՝ սէր նորա որ ճշմարտիւ սիրէ, առաւելու մանաւանդ քան թէ նուազէ 'ի ժամանակի ձախողութեան սիրելւոյն, զօրօրինակ 'ի հիւանդութեան նորա։

Այլ վասն որպիսութեան ճշմարիտ սիրոյ ունիմք բազում ինչ ասել 'ի յաջորդ գլուխ գրոց․ ուր զբաժանմանէ սիրոյ լիցին բանք։

# ԳԼՈՒԽ ԻԳ.

*Յաղագս բաժանման սիրոյ, եւ զգուշութիւնք։*

---

*Սէրն ևս բաժանի այնպէս՝ որպէս 'ի վեր անդր բաժանեցաք զհաւատս, այն է՝ 1. 'ի բնական, 2. 'ի բնականապէս բարոյական և 3. 'ի քաղաքական։ Զերից բաժանմանց աստի սիրոյ խօսեսցուք մի ըստ միոջէ։*

*Բնական սէր այն է որ 'ի բնական պատճառաց յառաջ գայ, որպէս՝ յազգականցութենէ, 'ի քաղաքակցութենէ և յայլոց նոյնպիսեաց, որպէս յետոյ տեսցուք։*

*Բնականս այս սէր դարձեալ բաժանի յերկուս, 'ի փոխադարձ և յոչ փոխադարձ։*

*Բնական փոխադարձ սէր այն է յորժամ երկու ոք 'ի բնական ինչ համակրութենէ, առանց գիտելոյ իսկ զպատճառս, մղեալ 'ի բնական ինչ յօժարութենէ, սիրեն զմիմեանս, առնեն զհաճոյս և զախորժականս միմեանց։*

*Ոչ փոխադարձ սէր այն է յորժամ մին սիրէ զմիւսն և ոչ սիրի 'ի նմանէ։*

*Եւ զի՛ բնականն սէր, եթէ փոխադարձն և եթէ ոչ փոխադարձ, որոշի 'ի խառնուածոց, և 'ի կազմութենէ ջղաց և յայլոց հանդամանաց կազմուածոյ մարմնոյ, և զի ոչ մի խառնուած և կազմութիւն է յամենեսին, այլ յո-*

մանս ազգոյ և զօրաւոր, յայլս թոյլ և տկար, վասն որոյ և բնականն սէր չէ յամենեսին զմի օրինակ, այլ է զի սաստկագոյն է և է զի թեթևագոյն, ըստ հանգամանաց իւրաքանչիւր անհատի։

Բաց 'ի խառնուածոց, բնականն սէր յառաջ գայ յայլոց ևս բնական, ընկերական և բարոյական պատճառաց, որոց գլխաւորքն են չորեքին սոքա. Արենակցութիւն, Ազգակցութիւն, Քաղաքակցութիւն և Համակրութիւն։ Զսոցունց մի ըստ միոջէ խօսեսցուք։

Սէրն արենակցութեան բնական իմն է. այսպէս նախ և 'ի վեր քան զամենեսին սիրեն հարք և մարք զորդեակս իւրեանց. ապա որդիք հարազատք զծնողսն, և եղբարք հարազատք զմիմեանս. Եթէ պատճառաւ իւիք ոչ սիրիցեն բովանդակ, գէթ սիրեն ըստ մասին, զի են արենակիցք, և 'ի միոջէ սկզբանէ առնուն զծագումն և զծնունդ. ուստի և հարկաւ գտանի ինչ 'ի նոսա համեմատութիւն ինչ կամ յարմարութիւն և նմանութիւն, ապա և սիրեն իսկ զմիմեանս փոքր 'ի շատէ, զի նմանն սիրէ զնման իւր։ Եւ թէպէտ սովորաբար 'ի մէջ արենակցաց լինի սէր փոխադարձ, բազում անգամ գտանի և սէր անփոխադարձ, նա մանաւանդ բազում անգամ ատելութիւն ևս և թշնամութիւն, կագ և կռիւ։ Այլ պարտ է քննել թէ զինչ իցեն պատճառք այնպիսի թե-

րակատար սիրոյ կամ պակասութեան սիրոյ 'ի մէջ արենակցաց և հարազատաց։ Այսր պատճառք բազում են. այլ սովորական պատճառք են կիրք և մոլութիւնք, որպէս՝ ագահութիւն, նախանձ, ընդ ձիր մարմնոյ կամ հոգւոյ կամ բախտի յորս տեսանեն վայելեալ զարենակիցս իւրեանց և զինքեանս զրկեալս։ Երբեմն եւ ցանկութիւն վաւաշոտութեան լինի պատճառք, 'ի պատճառս տարփածուաց և այլոց այսպիսեաց։ Վասն որոյ պարտ է զգոյշ լինել և հսկելով չտալ թոյլ սպրդելոյ այնպիսի ախտից 'ի սիրտս արենակցաց, և տալ պատճառս ճարակելոյ նոցա. և եթէ սպրդիցին, ջանալ բուժել զնոսա։ Միւս ևս պատճառ պակասութեան փոխադարձ սիրոյ 'ի մէջ արենակցաց՝ ակամայ կամ բանի հարսնախօսութիւնք և ամուսնութիւնք են, յորոց ծնանի ատելութիւն, և յատելութենէ անտի ծնանին կռիւք և թշնամութիւնք։

Սէրն ազգակցութեան ոչինչ ընդհատ զօրաւոր է քան զսէրն արենակցութեան. Երկու արք համազգիք, զորօրինակ Հայ ազգաւ, յորժամ պատահիցեն միմեանց, և գիտիցեն թէ համազգիք են, իսկոյն խառնի սէր և բարեկամութիւն 'ի մէջ երկոցունց։ Այսր սիրոյ բնական պատճառն է կլիմայն կամ՝ երկիրն, որ զխառնուածս բազմաց միօրինակս գործէ. իսկ քաղաքական պատճառն է նոյնութիւն լեզ-

ուլին, բարոյից, սովորութեանց ; և գաղափարաց։ Նոյնութիւն գաղափարաց յառաջ գայ երբեմն 'ի կրթութենէ և յազգային սովորութենէ և 'ի ծիսից. երբեմն ևս 'ի թելադրութենէ, այսինքն՝ 'ի համոզելոյ այլոց թէ պարտ է սիրել զհամազգիս թէև 'ի հեռաւոր տեղիս իցեն. և այս թելադրութիւն և յորդոր յազգասիրութիւն պարտ իմն է ամենայն մարդոյ յօգուտ մարդկային ընկերութեան։

Սէրն քաղաքակցութեան կամ տեղակցութեան չէ ինչ այլազգ 'ի սիրոյ ազգակցութեան. զի և սա ևս յառաջ գայ 'ի կլիմայէ, 'ի լինելոյ վարժեալ և սովորեալ 'ի նոյն օրինակ կելոյ և վարելոյ։ Միայն քաղաքակցութիւնն տայ սիրել ոչ միայն զայնոսիկ որ 'ի նմին լեզուէ և յարենէ կամ 'ի ցեղէ են, որպէս հայ զհայ սիրէ, և յոյն զյոյն, այլև զարս այլազգիս որ 'ի նմին քաղաքի կամ 'ի գեղջ ծնեալ և սնեալ, կամ գոնեա ժամանակս բազումս բնակեալ իցեն, զի հանապազօրեայ տեսութիւնն և կենակցութիւն ազդէ սէր 'ի կենակիցս։

Սէրն համակրութեան այն է զոր զգայ ոք 'ի բնական ազդմանէ, որով բերի առ այս ոք կամ առ այս ինչ, և թէպէտ ունի պատճառս, որպէս զհանգամանս ինչ սիրեցելոյն կամ զօգուտ և զհաճութիւն սիրողին, սակայն պատճառն այնպէս իմն գաղտնի և անզգալի է, մինչև թուել թէ 'ի հարկէ ինչ և ստիպմամբ սի-

րէ։ Այս ազգ սիրոյ գտանի և յանասունս, վասն որոյ ասացաք թէ համակրութիւնն ազգ իմն է բնական ազդման։

Հակակրութիւնն որ հակառակն է համակրութեան, ունի զնոյն բնութիւն և զնոյն պատճառս զորս զհամակրութենէ ասացաք։ Պարտ է գիտել զի եթէ համակրութիւն և եթէ հակակրութիւն ներգործական են մանաւանդ քան կրաւորական, այսինքն՝ սովորաբար չեն փոխադարձ, թէպէտև ունին առարկայ կրաւորական առ որ բերին։ Երկրորդ պարտ է գիտել զի համակիրն կամ հակակիր առաւել կրէ քան զայն որ է առարկայ համակրութեան կամ հակակրութեան։ Արդարև համակիրն, որպէս ստուգաբանութիւնն իսկ յայտ առնէ, կրէ զայն զոր կրէ սիրելին իւր. վշտանայ 'ի վշտանալ նորա, և խնդայ 'ի խնդալ նորա. թշուառ է 'ի թշուառութեան նորա, և երջանիկ յերջանկութեան նորա. սակայն բազում անգամ համակիրն վշտանայ և տառապի և հոգայ վասն սիրելւոյն երկիւղիւ ապագայ իմն կամ հնարաւոր չարեաց նորա. ուստի մինչ նա անտարբեր է վասն իւր, սա (համակիրն) միշտ և հանապազ նովաւ զբաղի։

Բայց բազում անգամ պատահէ ևս զի համակրութիւնն լինի փոխադարձ յերկուց կողմանց. նա մանաւանդ համակրութիւնն ծնանի երբեմն 'ի յայտնելոյ յերկուս անձինս միօրինակ զգացմանց։

համակրութիւնն, եթէ իցէ անչափ կամ անցեալ ըստ չափ և կուրօրէն, մոլութիւն է և յիմարութիւն, և սովորաբար, որպէս ասացաք բնական զգացումն. այլ եթէ իցէ բանաւոր և բարոյական, կոչի բարոյական սէր, և լինի առաքինութիւն, զորմէ այժմ խօսելոց եմք.

Ի բնական համակրութեան, կամ 'ի համակրութեան որ բնական զգացումն և եթէ, պատճառք բերմանն կամ յօժարութեան՝ խառնուածք գործարանաց են, և սաստկութիւն կամ նուազութիւն համակրութեանն կախեալ կայ զորպիսութենէ և զքանակութենէ չափոյ հիւթոց խառնուածոյն. Ի փոխադարձ համակրութեան՝ համակիրքն միշտ ունին նմանութիւն ինչ կամ հանդիտութիւն 'ի կերպարանս, կամ 'ի կարծիս կամ 'ի բարոյս, այլովքն հանդերձ. վասնորոյ մարթ է ասել թէ ամենայն պատճառք սիրոյ զորոց վերագոյն ասացաք, որպէս՝ արենակցութիւն, ազգակցութիւն և քաղաքակցութիւն, բովանդակին 'ի համակրութեան, և են ազգ ինչ կամ տեսակ նորա, և մարդ է զամենեսին զնոսա կոչել համակրութիւնս.

Երկրորդ բաժանումն սիրոյ է՝ 'ի բնականապէս բարոյական. և այս է բուն սէր և սեպհական բանաւոր արարածոց, և որ ունի զայս սէր է ճշմարտապէս առաքինի և աստուածահաճոյ, և սքանչելի 'ի մէջ մարդկան, և գոգցես դիւցազն.

Բնականապէս բարոյական սէրն դարձեալ
բաժանի յերիս, 1. 'ի բանաւոր, 2. 'ի գերբ-
նական և 3. 'ի կրօնական.

Բանաւոր սէրն յառաջ գայ 'ի ճանաչմանէ
և յընտրութենէ. յորժամ ոք գիտելով և զմը-
տաւ ածելով թէ ամենայն մարդ է իւր նման
բանաւոր, 'ի վերայ ածէ թէ ապա պարտ է սի-
րել զնա, կամել նմա բարիս, և ոչ իւիք վնաս
կամ չարիս կամ վիշտս հասուցանել նմա. Ուստի
և է իմաստասիրական այս սէր. և ամենայն ոք
կարող է իւրով իսկ հանճարով գտանել զսկըզ-
բունս նորա, որ է հաւասարութիւն և նոյնու-
թիւն ամենայն մարդկան, առանց խտրութեան
ցեղից, ազգաց և կրօնից.

Յորժամ և Աստուածային պատուէրն յա-
ւելու 'ի վերայ այսր բանաւոր սիրոյ, այսինքն՝
յետ գտանելոյ մարդոյ իւրով բնական հանճա-
րով թէ պարտ է սիրել զամենայն մարդ առ-
հասարակ և առանց խտրութեան զի են նոքա
իւր նմանիք, իբրև տեղեկանայ եւս յԱստ-
ուածային յայտնութենէ, այն է՝ 'ի գրոց սրբոց
ուր Աստուած ինքնին պատուիրէ սիրել զըն-
կերն իբրև զանձն իւր, սէր նորա որ առ ըն-
կերն լինի գերբնական, զի փոխին սկզբունք
նորա և ազնուանան, զի սէրն Աստուծոյ և հնա-
զանդութիւն որ առ նա լինի սկիզբն սիրոյ ըն-
կերին քանզի այնուհետև սկսանի սիրել զմար-
դիկ ոչ լոկ իբրև զնմանիս իւր, այլ զի են նո-

քա գործք ձեռաց և իմաստութեան Ամենակալին ; և զի կամք և պատուէր Նորա է սիրել մեզ․զմիմեանս , որպէս Նա սիրեաց զմեզ այնպէս՝ մինչեւ տալ զՈրդին իւր միածին և առնել զամենայն մարդ անխտիր յարմարս 'ի ժառանգութիւն իւրոց անեղծն և յաւիտենական փառաց , եթէ կամիցին հաւատալ Նմա և յայտնութեան Նորա , և առնել զպատուիրանս Նորա որ են կամք Նորա ․ քանզի այսու լինին ճշմարիտ աստուածապաշտք , այն է ճշմարիտ Քրիստոնեայք ։

Յետ սիրելոյ զընկերն սովին գերբնական սիրով , իբրեւ սիրեմք ևս զնա , տեսեալ զի է ճշմարիտ և ուղղափառ քրիստոնեայ , կրօնակից , և հաւատակից մեզ , սէրն այն լինի միանգամայն կրօնական ․ Ի մէջ բազում պատճառաց վասն որոց պարտիմք սիրել զկրօնակիցս մեր , գլխաւորն այն է՝ զի միով դաւանութեամբ լինիմք անդամք միոյ հոգեւոր և աստուածահաստատ ընկերութեան , այն է՝ միոյ սրբոյ եկեղեցւոյ , յորում կամ որոյ միջնորդութեամբ ստանամք մեք գլուխ և առաջնորդ , փրկիչ և դատաւոր զՅիսուս Քրիստոս , որ է զօրութիւն և իմաստութիւն անեղին աստուծոյ , կնքիմք 'ի մի մկրտութիւն յանուն Նորա և Հօր և Հոգւոյն , վայելեմք 'ի միոջէ սեղանոյ որ է կենարար խորհուրդն մարմնոյ և արեան Նորա , և ընդունիմք յանուն Նորա զնոյն թողութիւն մե-

ղաց միով ապաշխարութեամբ, և զի հանդերձեալ եմք լինել յետ ատեացս դարձեալ անդամակիցք վերնոյն Սիոնի որ է եկեղեցին փառաւորեալ։

Երրորդ բաժանումն սիրոյ է սէրն քաղաքական, որով սիրէ ոք զայլս վասն արտաքին ինչ և բնական ձրից. ուստի յառաջ գայ յարտաքին պատճառաց յորոց կէսք ստացականք են և կէսք բնականք այլ մարմնաւորք։

Ստացական ձիրք են՝ իշխանութիւն և մեծութիւն ընչից։

Բնական ձիրք մարմնոյ են՝ իմաստութիւն, քաջութիւն, գեղեցկութիւն և ուժեղութիւն։ վասն այսպիսի ձրից ծնանի բազում անգամ համակրութիւն և սէր։ Սակայն պարտ է գիտել զի որ վասն այսպիսի արտաքին ստացական և մարմնաւոր ձրից սիրեն զմարդիկ, ոչ են ճշմարիտ սիրողք, այլ սիրեն առ շողոքորթութեան և պաշտօն առնելոյ վասն 'ի պատճառս շահու և 'ի պէտս իւրեանց։ Ուստի և այնպիսի սէր ոչ է բարոյական և գերբնական, ոչ է սէր մշտատեւ և հաստատուն, այլ յողդողդ և վաղանցիկ, զի որ այսպէսն սիրեն՝ են ըստրուկք, խարդախք և ագահք։ Ստրուկք և ծառայք սիրեն զմեզ յորժամ 'ի պատուի և յիշխանութեան եմք։ Խարդախք և յանցաւորք սիրեն զմեզ, յորժամ եմք 'ի դատաւորական իշխանութեան. իսկ ագահք կամ աղքատք սի-

րեն զմեզ յորժամ եմք 'ի մեծութեան և յընչաւետութեան ։ Իսկ իբրեւ զրկեցիմք յայնպիսի ձրից և կորուսանիցեմք, անդէն խոյս տան ամենեքին 'ի մէնջ և դարձուցանեն զերեսս, զի սէր նոցա առ երեսս էր և առ անձնասիրութեան և շահասիրութեան, և չէր առաքինութիւն, 'նա մանաւանդ կեղծաւորութիւն և խաբէութիւն ։

Վասն իմաստութեան մերոյ սիրեն զմեզ ուսումնասէրք և բարեբարոյք, բայց երբեմն և տգէտք և նորավարժք ։ Վասն քաջութեան մերոյ և արութեան սիրեն զմեզ երկչոտք և վեհերոտք ։ Վասն գեղեցկութեան՝ սիրեն զմեզ հեշտասէրք ։ Վասն ուժեղութեան՝ սիրեն զմեզ տկարք և ծերք ։

Նոքա որ վասն այսպիսի իրաց սիրեն՝ յիմարք են և կոյրք և փառասէրք, եթէ հաւատան նոցա և խնդան և պարծին իբրեւ թէ սիրեցին 'ի մարդկանէ . նա մանաւանդ և վնասին եւս . զի ոչ վասն նոցա և յօգուտ նոցա սիրեն զնոսա մարդիկ, այլ յօգուտ և 'ի շահ անձանց իւրեանց ։ Եւ յորժամ կատարեն զդիտաւորութիւն իւրեանց և յագեցուցանեն ըզցանկութիւն, կամ եթէ 'ի թերեւս ելցէ ակնկալութիւն շահու նոցա, իսկոյն 'ի բաց կան ։ Բազումք յայսպիսի սիրողաց անօրէն եւս են . զի վախճան և նպատակ նոցա է խաբել և վնասել . է զի և թշնամի եւս լինին և փորեն գաղտ խոր-

խորատ և գործենդաւ զի կործանեսցեն զմեզ, կամ՝ վասն զի ինքեանք շահեսցեն վնասուք մերովք, և կամ զի նախանձին, և առ նախանձու և չարակնութեան կամին բառնալ զմեզ 'ի միջոյ։ Զայս գիտացեալ՝ պարտ է զգոյշ լինել 'ի նոցանէ որ ոչ վասն այլոյ իրիք սիրիցեն զմեզ եթէ ոչ վասն ստացական և բնական ձրից, մանաւանդ վասն ընչեղութեան և գեղեցկութեան մերոյ։ Պարտ է երկնչել և զգուշանալ յայնցանէ որ ոչ ունին ճշմարիտ և կատարեալ առաքինութիւն։ կատարելութիւն մարդոյ այն է ոչ խաբել զոք և ոչ խաբիլ յումեքէ։ Եւ զի մի խաբեսցուք յայլոց 'ի սիրել նոցա զմեզ, կարծելով զսէր նոցա ճշմարիտ և անկեղծաւոր, մինչդեռ սուտ իցէ և կեղծաւորեալ, պարտ է զպատճառս, զշարժառիթս, զնպատակ, զհանգամանս սիրոյ նոցա քննել, կշռել և իմանալ քաջ, տեսանելով թէ որպիսի իցէ սէրն և յոր կարգ յերից բաժանմանց անտի զորոց ճառեցաք՝ դասել պարտ իցէ։ Եթէ իցէ՞ բնական, կամ բարոյական, դերբնական կամ կրօնական, և իսպառ քաղաքական, այն է՝ արտաքին և վասն շահու ինչ և առ շողոքորթութեան կամ 'ի վնաս մեզ։

Ամենայն սէր բնական որ ոչ իցէ փոխադարձ՝ կոյր է, յորժամ նա որ սիրէ՝ ոչ սիրիցի յայնմանէ զոր սիրէ. և ոչ բարւոք առնէ սիրելով զայն որ ցուրտ և անտարբեր է առ նա։ Այս սէր յիմարութիւն միայն է, և յետին ան֊

մտութիւն, այլ ոչ անօրէնութիւն։ Իսկ սէրն քաղաքական որ վասն շահու է կամ առ 'ի վը-նասելոյ կեղծաւորութեամբ՝ անօրէնութիւն եւս է։ Միայն սէրն բնականապէս բարոյական, գերբնական և կրօնական, է սէր ճշմարիտ, բա-նաւոր և աստուածահաճոյ եւս, քանզի առա-քինական է։ Աւելորդ է մեզ յառաջ բերել մի ըստ միոջէ զվնասն և զվտանգս որ ծնան 'ի յոռի և 'ի կեղծաւորեալ սիրոյ, շատ լիցի յի-շել զսէրն Ամնոնայ առ Թամար, և ծերոցն առ Շուշան 'ի պատմութեան Դանիելի։

Ի վերջոյ, կատարեսցուք զայս գլուխ յաւել-լով թէ պարտ է մեզ ունել սէր 'ի ճշմարիտ և յուղիղ հաւատոց. առնել զնա և կրել զի սէր մեր լիցի կատարեալ, շահաւէտ և հաճոյ Աս-տուծոյ և մարդկան։ Սէր՝ որ չէ յուղիղ և 'ի ճշմարիտ հաւատոց, մոլի է և չարահնար, լինի պատճառք բազմադիմի չարեաց, որպէս նա-խանձու, բարկութեան, ատելութեան, գո-ղութեան, նա և սպանութեան իսկ գլխովին։



# ԳԼՈՒԽ ԻԴ․

*Համառօտ բովանդակութիւն նախընթաց գլխոց որ զհաւատոյ, զյուսոյ եւ զսիրոյ։*

---

Մինչեւ ցայս վայր խօսեցաք զհաւատոյ, զյուսոյ և զսիրոյ. ցուցաք համառօտիւ յուրոյն ուրոյն գլուխս թէ զինչ իցեն առաքինութիւնքս որ են հիմունք յորոց վերայ հաստատեալ կայ իմացական շինուած մարդոյ. և են իբրեւ կէտ շարժման ամենայն մտաւոր, բարոյական և ընկերական գործողութեանց նորա. խօսեցաք և զծագմանէ նոցա թէ ուստի կամ յորոց սկզբանց դայցեն յառաջ, զորպիսութենէ նոցա և հուսկ յետոյ զբաժանմանէ, այն է՝ զպէս պէս ազգաց նոցա։ Եւ զի օգտակարագոյն լիցին յառաջագոյն ճառեալքն, կամիմք աստ յայսմ գլխի զհամառօտ բովանդակութիւն նոցա դնել, զի լիցի իբրեւ վերջաբան յորում ընթերցողք տեսցեն կարճառօտ և ամփոփ, զոր ինչ մանր և երկարապատում տեսանելով թերեւս ոչ յստակ ինչ միտս և ծանօթութիւն ստացան զնոցունց։

Արդ ՀԱՒԱՏՔ են ճշմարիտ ծանօթութիւն զոր ունի մարդ զթանձրացեալ և զվերացեալ իրաց, կամ՞ այլով բանիւք ասասցուք՝ զնիւթական և զիմանալի իրաց։ Զծանօթութիւնս զայս ստանայ մարդ իմացական գործեօք որ

են կարողութիւնք բանական հոգւոյ, զորս մեք ինն հաշուեցաք թուով, այսինքն՝ զգացողութիւն, իմացումն, ըմբռնումն, գաղափար, հանճար, ճանաչումն, ընտրութիւն, դատումն և կշռումն. տես գլուխ Ա։ Ճշդութիւն և ուղղութիւն գործեացս այսոցիկ յորոց ձեռն ստանայ մարդ զայն ծանօթութիւն զոր մեք Հաւատս կոչեցաք՝ կախեալ կայ զտրամաբանութենէ որ այնչափ կատարեալ լինի որչափ այլք ևս 'ի գիտութեանց, յուսմանց և յարուեստից լինին նմա նպաստ և օգնական։ կամիմք ասել թէ հաւատք, կամ տեսական և գործնական ծանօթութիւն մարդոյ զբնութենէ զէութենէ և զարդեանց իւրաց, այնչափ առաւել կատարեալ է 'ի մարդն, որչափ աւելի է դրական գիտութիւն նորա 'ի ձեռն ուղիղ տրամաբանութեան։

Յետ այսպէս սահմանելոյ զհաւատս, ինքնին յայտնի լինի եթէ որ միանգամ այնպիսի գործեօք որ են կարողութիւնք հոգւոյ, եւ այնպիսի կանոնօք և կշռովք որ է գիտական տրամաբանութիւն, ստանայ զհաւատս, այն է զծանօթութիւն եթէ տեսական և եթէ գործնական զիւրաց, ապահովագոյն է 'ի դժընդակագունէն և 'ի փխաստակարագունէն քան զամենայն թշնամիս մարդոյ, որ է տգիտութիւն. և կարէ լինել վստահ եթէ հաւատք իւր կամ ծանօթութիւնք զիւրաց, եթէ զդեր-

բնականաց 'ի ձեռն յայտնութեան, եթէ ըղ բնականաց 'ի ձեռն զգայութեանց, եթէ ըղ մտաւորականաց կամ զբնազանցականաց 'ի ձեռն ներքին զգայութեան կամ իմացականութեան, և վերջապէս՝ եթէ զպատմականաց 'ի ձեռն վկայութեանց մարդկան, ազատ են 'ի մոլորութենէ և 'ի ստութենէ, որչափ մարթ է լինել ապահովութիւն 'ի մարմնաւոր կացութեան աստ բանական հոգւոյ։

Ամենայն սուտ հաւատք, որպէս հեթանոսացն և ամենայն մոլար աղանդոց, որպէս և ամենայն սխալ ծանօթութիւնք մարդկան եթէ բնականք, եթէ բարոյականք, եթէ իմացականք և եթէ պատմականք, վասն այնոցիկ են սուտք և մոլորականք, զի չեն ըստ գիտնական սկզբանց տրամաբանութեան, որ է փորձաքար որ ընտրէ զճշմարիտ ոսկին 'ի ստոյ, և է իբրեւ զժանտաջուր որ զտէ զմաքուրն և զբուն 'ի կղկղանաց։

Ամենայն մոլորութիւն և ստութիւն որ սպրդեալ է 'ի ճշմարիտ հաւատս քրիստոնէութեան՝ 'ի տգիտութենէ և 'ի չարութենէ, 'ի կրից և 'ի զգայական ախորժակաց անձնասէր, արծաթասէր և հեշտասէր մարդոց և 'ի փառասէր կղերականաց գտեալ են մուտ։

**ՅՈՅՍ** ոչ այլ ինչ է բայց հաստատուն ակնկալութիւն զօրութեան կամ արդեանց ճշմարտութեանն զոր ստոյգ և ուղիղ հաւատովն ընկալ-

եալ եմք։ Աստի յայտ է թէ յոյսն յայնժամ ճշմարիտ է, յորժամ է 'ի ճշմարիտ և 'ի կատարեալ հաւատոց։ Ցոյս՝ որ է 'ի մոլար հաւատոց՝ խաբեբայ է և վրիպական. և ածէ 'ի յուսահատութիւն, յորժամ յանդիմանեալ խայտառակեսցի ստութիւն հաւատոցն։

Պատճառք տալոյ զանձն 'ի մոլութիւնս և յանկարգ կիրս, նաև անձնապաշտութեան՝ է յոյսն մոլար որ հիմնեալ է 'ի մոլար հաւատս։ Այսպէս, զորօրինակ ճշմարիտ և կատարեալ հաւատք ծնանելով զյոյս հաստատուն 'ի սրտի տան վայելել 'ի վստահութեան անվրէպ ակնկալութեամբ առ յաւիտենական անեղծութիւնն 'ի հանդերձելումն, և 'ի խաղաղ և յանդորր երջանկութիւն յաստիս, նոյնպէս սուտն և մոլար հաւատք տալով միայն յողդողդ ինչ և վրիպելի յոյս, լինին պատճառք յուսահատութեան և յետին թշուառութեան և աստ և անդ։ Ապա որչափ արժան է մեզ խնամով փոյթ յանձին ունել և արթնութեամբ և զգուշութեամբ հսկել զի հաւատք մեր լիցին ճշմարիտ, ուղիղ և կատարեալ, որպէս զի և յոյսն լիցի ըստ այնմ աներկեւան, զի երկոքին կեանք մեր, աստէնն և հանդերձեալն, լիցեն հաստատեալք 'ի վերայ անշարժ խարսխի։

ՍԷՐՆ է պսակ հաւատոյ և յուսոյ. զի յուսամք առ որ հաւատամքն, և առ որ յուսամքն սիրեմք զնա։ Սէրն որ է 'ի ճշմարիտ հաւատոյ

և յուսոյ՝ ոչ խաբէ և ոչ փոփոխի, այլ սէր՝ որ 'ի մոլար հաւատոց և 'ի յողդողդ յուսոյ ծնանի, դիւրաւ եղծանի և փոխի 'ի վերջոյ յատելութիւն։ Եւ զի մոլար և ստայօդ հաւատք և յոյս յողդողդ 'ի տգիտութենէ են, և տգիտութիւն մայր է մոլութեան, անօրէնութեան, ամենայն ազգ կրից և զգայական ախորժակաց, ցանկութեան, անձնասիրութեան, ամբարտաւանութեան, ագահութեան, այլովքն հանդերձ, ապա ամենայն սէր որ չէ յուղիղ և 'ի ճշմարիտ հաւատոց և յաներկեւան յուսոյ, ունելով զծագումն և զսերումն իւր 'ի տգիտութեան՝ մոլի է և մոլեկան, անասնական և անվայել բանաւոր մարդոյ։ Ուստի և չէ ճշմարիտ սէր, այլ անձնասիրութիւն, անօրէնութիւն և մոլութիւն։

Աստի յայտ է թէ գերբնական սէրն և կրօնական, որպէս 'ի նախընթաց գլուխ ճառիս յայտ արարաք, կատարելագոյն և պատուականագոյն է քան զիմացականն, քան զբնականն ազնուագոյն։ Եւ մարթ է ասել թէ բուն և ճշմարիտ և սուրբ սէր՝ գերբնականն և կրօնական սէր է, զոր ստանամք 'ի յայտնութենէ գրոց սրբոց, այն է՝ 'ի պատուիրանաց Աստուծոյ, հաստատեալ և վկայեալ օրինակաւ փրկչին և սրբոց և ամենայն արանց և կանանց առաքինեաց, ճշմարիտ հաւատացելոց։ Եւ դարձեալ սէրն գերբնական և կրօնական մար-

թի լինել սովորաբար փոխադարձ, ուր բնականն և իմացականն սովորաբար չեն փոխադարձ։ Սէրն գերբնական և սէրն կրօնական են 'ի ճշմարիտ հաւատոց զի են 'ի գրոց սրբոց և 'ի վարդապետութենէ եկեղեցւոյ, առաջինն որ է սէր գերբնական՝ է ճշմարտութիւն յաղբերէ ճշմարտութեան որ է Աստուած, և երկրորդն, այն է սէր կրօնական՝ իբրեւ յառուէ որ բխէ 'ի նմին աղբերէ, որ են գիրք սուրբք։ Այլ սէրն բնական և իմացական են 'ի զգայութենէ, 'ի համակրութենէ և 'ի բնական իմացականութենէ որ չեն միշտ և խապառ ճշմարիտ։

## ԳԼՈՒԽ ԻԵ․

*Ցաղագս թէ որն յերեցունց, 'ի հաւատոյ, 'ի յուսոյ եւ 'ի սիրոյ իցէ նախամեծար ։*

Այժմ մնայ մեզ խօսել թէ որն յերեցունց, 'ի հաւատոյ, 'ի յուսոյ, և 'ի սիրոյ իցէ նախամեծար։

Ի ցուցանել զայս կամիմք 'ի կիր արկանել զօրէնս ինչ թուաբանութեան որ կոչի փոփոխադրութիւն, ուստի նախ հարկ է մեկնել զայս։

Թիւ ինչ, զոր օրինակ, 1, 2, 3, 'ի շարելն

կարգաւ, այսպէս՝ 123, մարթի փոխել զկարգն. այսինքն՝ իւրաքանչիւր թիւ կարէ զկնի իւր ունել զիւր նման· որպէս 111 կամ 222, կամ 333· և կամ կարէ ունել զկնի իւր մին զմիւսն կրկին, որպէս 122, կամ 133· և կամ երեքին ևս կարեն լինել 'ի միում կարգի, որպէս 123, և 'ի կարգի աստ կարեն փոխել իւրաքանչիւր թուանշանքն զտեղի իւրեանց, որպէս 123, կամ 213, կամ 132, կամ 321· և կամ այլազգ· Արդ յամենայն թիւս՝ փոփոխումն այս լինի ըստ խորանարդ կարողութեան թուոյն։ Ըստ այսմ փոփոխումն երից թուանշանաց լինի քսան և եօթն օրինակաւ· զի 27 է խորանարդ կարողութիւն երից թուոց, քանզի երիցս երեք լինին ինն, և երիցս ինն՝ լինին քսան և եօթն։ Այս է ըստ թուաբանից օրէնք փոփոխադրութեան։

Ի փոփոխադրութեան թուոց ինչ, զոր օրինակ՝ երից, նախ՝ մարթին, որպէս ասացաք, երեքն ևս լինել նոյն, որպէս 111, 222, 333· յայս դէպս կոչի թիւն Համազոյգ։ Երկրորդ՝ կարեն երկուքն լինել նոյն մի զկնի միոյ, և երրորդն՝ օտար, զոր օրինակ՝ 112, 221, 331, և յայնժամ կոչի թիւն Նախադաս Մասնաւոր Համազոյգ· և կամ նոյնաթիւքն 'ի վերջոյ, որպէս 211, 311, 122, 322, 133, 233, և յայնժամ կոչի թիւն Ետադաս Մասնաւոր Համազոյգ։ Երրորդ՝ կարեն լինել թուանշանքն նոյնք 'ի ծայրս, և 'ի միջի օտար թիւ, որպէս՝ 121;

131, 212, 232, 313, 323. այսպիսի թիւք կոչին Տարազոյգք։ Զորրորդ՝ մարթին լինել թուանշանքն կարգաւ 'ի փոքուէ սկսեալ ցմեծն, կամ 'ի մեծագունէն սկսեալ ցփոքրն, որպէս 123, կամ 321, և յայնժամ կոչի թիւն Շարազոյգ։ Ցուցցուք զայս յայտնագոյնս յետագայ օրինակաւ, եդեալ զանուն իւրաքանչիւր փոփոխման առաջի իւր. զոր օրինակ.

111 Համազոյգ ստորին կարգի.

112 Նախադաս համազոյգ ստորին կարգի.

113 Նախադաս համազոյգ ստորին կարգի.

121 Տարազոյգ ստորին կարգի.

122 Յետադաս համազոյգ ստորին կարգի.

123 Ի փոքուէ շարազոյգ.

131 Տարազոյգ ստորին կարգի.

132 Անկանոն ստորին կարգի.

133 Յետադաս համազոյգ բարձրագոյն կարգի.

211 Յետադաս համազոյգ միջին կարգի.

212 Տարազոյգ միջին կարգի.

213 Անկանոն միջին կարգի.

221 Նախադաս համազոյգ միջին կարգի.

222 Համազոյգ միջին կարգի.

223 Նախադաս համազոյգ միջին կարգի.

231 Անկանոն միջին կարգի.

232 Տարազոյգ միջին կարգի.

233 Յետադաս համազոյգ միջին կարգի.

311 Յետադաս համազոյգ բարձրագոյն կարգի.

312 Անկանոն բարձրագոյն կարգի.

313 Տարազոյգ բարձրագոյն կարգի ·
321 Ի մեծագունէ չարազոյգ ·
322 Յետադաս համազոյգ բարձրագոյն կարգի·
323 Տարազոյգ բարձրագոյն կարգի ·
331 Նախադաս համազոյգ բարձրագոյն կարգի·
332 Նախադաս համազոյգ բարձրագոյն կարգի·
333 Համազոյգ բարձրագոյն կարգի ·

Արդ մեք նշանակեմք զսէր 1 (մի) թուով, զյոյս 2 (երկու) թուով և զհաւատս 3 (երեք), թուով· Թէ ընդէր զսէր 1, զյոյս 2 և զհաւատս 3 թուանշանօք յայտ արարաք, զայսմանէ յետոյ ասասցուք, և տացուք զպատճառսն ։

Ի յառաջագոյն ասացելոց անտի յայտնի է եթէ սէրն հասարակ է ամենայն էից, եթէ բանականաց, եթէ զգայականաց և եթէ անզգայից· զի ամենայն իրք, ևս և անզգայք, 'ի բնէ հակին առ միմեանս, որպէս սնդիկ առ ոսկին, երկաթ առ մագնիս և արմաւենի առ արմաւենի ։ Ապա 'ի բանաւորս, զորօրինակ 'ի մարդիկ, նա որ սիրէ կամ ունի սէր, այլ ոչ յոյս և հաւատս, յանզգայից կարգի միայն է, զի սէրն միայն ոչ ամբառնայ զնա 'ի կարգ բարձրագոյն ։

Զգայականք ունին ոչ միայն սէր, այլ և յոյս, որպէս յայտ է յառաջագոյն ասացելոց, զի զգայուն կենդանին ոչ միայն սիրէ զայն որ յագեցուցիչն է զգայական ախորժակաց իւրոց, այլ և յուսայ ևս թէ յագեցուցանելոց է

նա զախորժակս իւր, վասն այնորիկ հաճէ 'ի նա, այսինքն՝ 'ի յուսոյ անտի սիրէ զնա, և այս է կատարելագոյն քան զառաջինն. ուստի և 'ի բանաւորս, կամ 'ի մարդիկ, նա որ յուսայ և 'ի յուսոյ անտի սիրէ, է 'ի կարգի զգայականաց։

Իսկ բանականք ունին ոչ միայն զյոյս և զսէր, այլ և զհաւատս. զի հաւատայ, այն է ճանաչէ, քանզի է բանաւոր, և ճանաչմամբն, կամ 'ի հաւատոյ անտի իւրմէ՝ յուսայ և սիրէ։ Այս է ևս կատարելագոյն և վերին աստիճան։

Այսպէս երիս ազգս մարդկան ընտրեմք. նա որ սիրէ միայն, և այս է բնական մարդ. երկրորդ՝ նա որ յուսայ և սիրէ, և այս է զգայուն մարդ՝ երրորդ՝ նա որ հաւատայ, յուսայ և սիրէ, և այս է բանաւոր մարդ։

Այս երեք կարգք մարդկան զորս 1, 2, և 3 թուանշանօք նշանակեմք՝ գալով առ միմեանս, և փոփոխելով զդիրս իւրեանց, ըստ վերագոյն օրինաց փոփոխադրութեան, լինին 27 կարգք։ Ի 27 կարգաց աստի՝ 'ի մեծագունէ չարազոյգն է կանոնաւոր, այն է

3. Նա որ ունի հաւատս, յոյս և սէր.

2. Նա որ ունի յոյս և սէր, այլ ոչ հաւատս.

1. Նա որ ունի սէր այլ ոչ յոյս և հաւատս։

Այս չարազոյգ կարգ 'ի մեծագունէ է կանոնաւոր, զի կատարելագոյնն, որ է բանա֊

ւորն մարդ յորում հաւատք են տիրող, ունի զառաջին տեղին. զերկրորդ տեղին ունի ըզգայականն մարդ յորում տիրող է յոյս. և զերրորդ տեղին ունի անզգայականն մարդ յորում սէր միայն տիրէ.

Պարտ է գիտել զի այս կարգ՝ յորում բանաւորն մարդ որ ունի հաւատս, և 'ի հաւատոյ անտի յուսայ՝ և սիրէ, համեմատ է սկզբանց Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ զհաւատս եդ հիմն, և պահանջէր 'ի հաւատոյ աստի ունել յոյս և 'ի յուսոյ սէր.

Յոյժ կանոնաւոր է համազոյգն բարձրագոյն կարգի, որ է

3. Նա որ ունի հաւատս, յոյս և սէր.

3. Նոյնպէս.

3. Նոյնպէս.

Կանոնաւորագոյն են նախադաս համազոյգքն բարձրագոյն կարգի, որ են

3. Որ ունի հաւատս, յոյս և սէր.

3. Նոյն.

2. Որ ունի յոյս և սէր.

և

3. Որ ունի հաւատս, յոյս և սէր.

3. Նոյն.

1. Որ ունի սէր միայն.

Կանոնաւորագոյն է նոյնպէս տարազոյգն բարձրագոյն կարգի, որ է

3. Որ ունի հաւատս, յոյս և սէր.

2. Որ ունի յոյս և սէր միայն .

3. Որ ունի հաւատս , յոյս և սէր .

Կանոնաւորագոյն է դարձեալ յետադաս համազոյգն միջին կարգի , որ է

3. Որ ունի հաւատս , յոյս և սէր .

2. Որ ունի յոյս և սէր .

2. Որ ունի յոյս և սէր .

Ի բացատրութենէ աստի յայտ է թէ 'ի 27 կարգս վեց միայն կանոնաւորք են ,

| Ա | Բ |
|---|---|
| 3 3 3 } Համազոյգ բարձրագոյն կարգի. | 3 3 2 } Նախադաս համազոյգ բարձրագոյն կարգի. |

| Գ | Դ |
|---|---|
| 3 3 1 } Նախադաս համազոյգ բարձրագոյն կարգի. | 3 2 3 } Տարազոյգ բարձրագոյն կարգի. |

| Ե | Զ |
|---|---|
| 3 2 2 } Յետադաս համազոյգ միջին կարգի. | 3 2 1 } Շարազոյգ 'ի մեծագունէ . |

Այլքն ամենայն կարգք միջին և ստորին կարգի՝ աստիճանաբար անկանոնք են . Քանզի յամենեսին 'ի նոսա բանաւորն մարդ ունի լինել յետադաս քան զմին 'ի միւս ևս երկուց , այն է քան զզգայականն կամ քան զանզգայականն մարդ , որպէս .

| | |
|---|---|
| 2 3 1 } Անկանոն. | 1 3 2 } Անկանոն. |

կամ քան զերկոսին եւս յետադաս , որպէս

| | |
|---|---|
| 1 1 3 } Նախադաս համազոյգ ստորին կարգի . | 1 2 3 } Շարազոյգ ստորին կարգի . |
| 2 1 3 } Անկանոն. | 2 2 3 } Նախադաս համազոյգ միջին կարգի ։ |

Եւ կամ բանաւորն մարդ խապառ անհետ լինելոց է , որպէս

| | |
|---|---|
| 1 1 1 } Համազոյգ ստորին կարգի . | 1 1 2 } Նախադաս համազոյգ ստորին կարգի. |

և այլք եւս ըստ սմին օրինակի ։

Եւ կամ վերջապէս՝ ոչ բանաւորն մարդ , այլ զգայականն լինելոց է յետադաս քան զանզգայականն մարդ , որ նոյնպէս կանոնաւոր է , որպէս .

3 2 1 } Կանոնաւոր.

Եւ կամ հուսկ յետոյ՝ զգայականն բոլորովին պակասելոց է , որպէս

| | |
|---|---|
| 3 1 1 } Ցետադաս համազոյգ ստորին կարգի. | 1 1 1 } Համազոյգ ստորին կարգի. |

Համառօտ իսկ ասել, կանոնաւոր կարգ այն է, յորում

Նախ՝ Բանաւորն մարդ ունի զառաջին տեղի .

Երկրորդ՝ Զգայականն ունի զերկրորդ տեղին , եթէ իցէ զգայական 'ի կարգի անդ .

Երրորդ՝ Անզգայականն ունի զերրորդ տեղի, եթէ լցէ անզգայական 'ի կարգի անդ.

Պարտ է գիտել զի Մովսէս Նախամարգարէն և օրէնսդիր, թէպէտև ազդեալ յԱստուծոյ, ըստ խակութեան ժամանակին, առընդելագոյն առնելոյ զվարդապետութիւնն առ մարմնապիշ և զգայական Հրեայս, զսէրն դաեաց յառաջ քան զհաւատս, ուստի և ըստ նմա, 'ի կարգէ անդ հաւատոյ, յուսոյ և սիրոյ, դասաւորութիւնն է շարագոյգ 'ի փոքրագունէ, այն է

1. Նա որ ունի սէր. Առաջին.
2. Նա որ ունի յոյս և սէր. Երկրորդ.
3. Նա որ ունի հաւատս, յոյս և սէր միանգամայն. Երրորդ։

Զայս կարգ, որպէս ասացաք, փոխեաց Տէրն մեր, տուեալ հաւատոյ զյառաջամասնութիւնն, և փոխեալ զշարագոյգն 'ի փոքրագունէ առ մեծագոյնն. այն է

զ $\begin{Bmatrix}1\\2\\3\end{Bmatrix}$ Շարագոյգ 'ի փոքրագունէ. 'ի $\begin{Bmatrix}3\\2\\1\end{Bmatrix}$ Շարագոյգ 'ի մեծագունէ։

Թուի մեզ թէ ըստ բաւականին յայտնի եղեն սկզբունք դրութեանս՝ յորմէ զհետ գայ հետեւեալն իբրեւ գործնական սկզբունք պիտանի և կարեւոր 'ի բարոյական, ընկերական և 'ի քաղաքական գործառնութիւնս կենաց։

Եթէ անհատք իցեն և եթէ բարոյական

մարմինք կամ ընկերութիւնք, 'ի միանալ երից՝ եթէ իցեն երեքին եւս այլաթիւք, որպէս 1, 2, 3, պարտի ունել զառաջին տեղին Բանաւորն մարդ, զերկրորդ տեղին՝ Ձգայականն. քանզի բանաւորն է որ ունի վարել զմիւս երկուսն, և ստորակարգութիւնն լինի ըստ օրինի: Եթէ, սմին հակառակ, Ձգայականն կամ Անզգայականն ունիցին զառաջին տեղին, և Բանաւորն լինիցի իբրեւ ծառայ, կամ եթէ Բանաւորն իսպառ պակասիցէ, զտեղի նորա ունելով Ձգայականն կամ Անզգայն, և կամ Ձգայականն պակասիցէ և զտեղի նորա ունիցի Անզգայականն, ոչ լինի վարչութիւնն կատարեալ, այլ անկանոն, թերի և խառնակ: Ապա եթէ երեքին եւս իցեն բանաւորք, ծնանի հաւասարութիւն, և թէպէտ բառնայ ստորակարգութիւն, այլ ոչ մտանէ խառնակութիւն.

Աստ տացուք այլ ինչ օրինակ որ լուսաւորեսցէ զայն զոր ասացաք:

Դիցուք թէ յատկութիւն թագաւորի է լինել արդար, իմաստուն և քաջ. յատկութիւն զօրավարի իցէ լինել իմաստուն և քաջ. իսկ յատկութիւն զինուորի իցէ լինել քաջ:

Յայտ է թէ, եթէ թագաւորն ունիցի զիւր յատկութիւն, զօրավարն զիւրն և զինուորն զիւրն առանձին, բարւոք է կարգն: Եթէ զօրավարն բաց յիմաստութենէ և 'ի քաջութենէ ունիցի և զարդարութիւն, կամ զինուորն բաց

'ի քաջութենէ ունիցի և զարդարութիւն և զիմաստութիւն, ոչ վնասէ կարգին։ Ապա եթէ Թագաւորն չունիցի զարդարութիւն, և զօրավարն ունիցի. կամ Թագաւորն և զօրավարն չունիցին զիւրեանց յատկութիւնս, այսինքն՝ մին զարդարութիւն և զիմաստութիւն, և միւսն զիմաստութիւն, և զինուորն ունիցի զերեսին եւս, ոչ բարւոք է կարգն. զի որում Թագաւորն լինել պարտ էր՝ եղեալ է զինուոր, և որում արժան էր լինել զինուոր՝ լեալ է Թագաւոր։ Նոյնպէս ոչ է բարւոք կարգն, եթէ յանձին Թագաւորին պակասիցէ արդարութիւն. կամ յերկոսին եւս, եթէ 'ի Թագաւորին և եթէ 'ի զօրավարին, պակասիցեն արդարութիւն և իմաստութիւն, այսինքն՝ յորժամ կարգն իցէ Նախադաս համազոյգ միջին և և ստորին կարգի

Դիցուք աստէն զօրինակն.

| | |
|---|---|
| 3. Թագաւոր արդար, իմաստուն եւ քաջ.<br>2. Զօրավար իմաստուն եւ քաջ.<br>1. Զինուոր քաջ. | կանոնաւոր. |
| 3. Թագաւոր արդար, իմաստուն եւ քաջ.<br>3. Զօրավար արդար, իմաստուն եւ քաջ.<br>3. Զինուոր արդար, իմաստուն եւ քաջ. | յոյժ կանոնաւոր. |
| 2. Թագաւոր, ոչ արդար, իմաստուն եւ քաջ.<br>2. Զօրավար իմաստուն եւ քաջ.<br>1. Զինուոր քաջ. | անկանոն. |

1· Թագաւոր , ոչ արդար եւ ոչ իմաստուն , այլ քաջ ·
2· Զօրավար իմաստուն , եւ քաջ ·
3· Զինուոր արդար , իմաստուն եւ քաջ ·
} անկանոն·

3· Թագաւոր արդար , իմաստուն եւ քաջ ·
1· Զօրավար ոչ իմաստուն , քաջ միայն·
3· Զինուոր արդար , իմաստուն եւ քաջ ·
} անկանոն ·

1· Թագաւոր ոչ արդար ոչ իմաստուն , այլ քաջ միայն ·
1· Զօրավար ոչ իմաստուն , այլ քաջ միայն ·
1· Զինուոր քաջ ·
} անկանոն ·

2· Թագաւոր ոչ արդար , այլ իմաստուն եւ քաջ ·
3· Զօրավար արդար , իմաստուն եւ քաջ ·
1· Զինուոր քաջ ·
} անկանոն ·

2· Թագաւոր ոչ արդար , այլ իմաստուն եւ քաջ ·
2· Զօրավար իմաստուն եւ քաջ ·
2· Զինուոր իմաստուն եւ քաջ ·
} անկանոն ·

Ըստ այսմ կանոնի դիւրին է իմանալ և զայլոց Թէ ոյք իցեն անկանոն , և ընդէր ·



# ԳԼՈՒԽ ԻՋ.

*Յաղագս պատճառաց վասն որոյ հաւատք են նախամեծար, եւ բովանդակութիւն այնր ամենայնի որ ասացաւ յայսմ մասին գրոցս:*

---

Այժմ կայ մեզ ցուցանել թէ ընդէր, զսէր նշանակեցաք 1 թուանշանաւ, զյոյս 2, և զհաւատս 3 թուանշանօք: Այսր պատճառ ինքնին յայտնի է 'ի յառաջագոյն ասացելոց. Նախ զի սէր կարէ լինել առանձինն, առանց յուսոյ և հաւատոյ, որպէս յանզգայս, զորօրինակ 'ի վէր անդր ասացաւ, զսնդկէ և զոսկւոյ զերկաթոյ և զմագնսէ, այլովքն հանդերձ. վասն այսորիկ նմա պատշաճի թուանշանն 1: Երկրորդ ըստ մերում դրութեան սէր որ ոչ է յառաջ եկեալ 'ի յուսոյ՝ տկարագոյն է. և տկարագոյն՝ յորժամ չիցէ յառաջ եկեալ 'ի հաւատոյ և 'ի յուսոյ. սմին իրի և ս դիպող է նմա թուանշանն մի:

Յոյս միշտ ունի ընդ իւր իբրեւ պտուղ և արդիւնս զսէր, որպէս 'ի զգայականս, վասն այնորիկ յարմարագոյնս նշանակի 2 թուանշանաւ: Այսպէս, զորօրինակ մի թիւ զօրանայ 'ի յաւելուլ առ նմա միւսոյն, այն է՝ 'ի դնել զ2 յառաջ կամ յետոյ քան զ1 լինի 21 կամ 12, նոյնպէս սէր որ յառաջ գայ 'ի յուսոյ՝ զօրագոյն է քան զսէր որ առանձինն է և միակ:

Սովին սկզբամբ եդաք և վասն հաւատոյ

զթուանշանն երեք, զի հաւատք ունի ընդհուր գոյս և զսէր, որով լինի երրեակ կամ երեքկին: Եւ զորօրինակ 'ի վերայ 12 կամ 21 տասնաւորացն յաւելեալ զթիւն 3 յառաջ կամ զկնի, աճի թիւն 'ի հարիւրաւոր, այն է՝ 123, կամ 321, նոյնպէս սէր և յոյս որ ծնանին 'ի հաւատոյ զօրագոյն են, քան առանց հաւատոյ:

Աստ արժան է յաւելուլ զայս դիտողութիւն թէ զերեսին տուս, զհաւատս, զյոյս և զսէր, մարթ է կրկին օրինակաւ զմտաւ ածել, այն է ըստ Մովսիսեան սկզբանց սկսանելով 'ի սիրոյ իջանել 'ի հաւատս, և կամ ըստ Աւետարանական կամ ըստ Տերունական սկզբանց, սկսանելով 'ի հաւատոց իջանել 'ի սէր: Այլ խտիր մեծ է 'ի մէջ երկուց դրութեանցս այսոցիկ: Արդարև ծնանին յոյս և հաւատք 'ի սիրոյ: Զի և սէրն զգայական ծնանի երբեմն զյոյս վայելելոյ զառարկայն ախորժական, և նա որ սիրէ, 'ի յուսոյ անտի պնդի զհետ ախորժականին զի խրօք վայելեսցէ: Այլ որպէս յայտ է, այսպիսի հաւատք և յոյս ոչ են հաստատուն և տեւական. զի 'ի նուազել և 'ի ցրտանալ սիրոյ, կամ 'ի կորնչել և 'ի հեռանալ առարկային, կորնչին և յոյս և հաւատք. քանզի չեն 'ի հաւատոց, այն է՝ յիմացականութենէ: Եւ սէրն այն ոչ գայ յառաջ 'ի ծանօթութենէ առարկային, ըստ որում յառաջագոյն է քան զհաւատս. ուստի և սկիզբն

կամ ծնունդ և ծագումն նոյնպիսի սիրոյ յենթակայէ անտի ծնանի, և ոչ յառարկայէ, այսինքն՝ 'ի սիրելութենէ կամ 'ի ճանաչելոյ զարժանաւորութիւն առարկային սիրելոյ։ Ուր ընդհակառակն, սէրն որ 'ի հաւատոց յառաջ գայ՝ հաստատուն և ճշմարիտ է, քանզի է մտաւոր, իմացական, բարոյական և հոգեւոր, զի ոչ ծնանի 'ի զգայական ախորժանաց, և 'ի բերմանէ ենթակային, այլ 'ի ծանօթութենէ գոյութեան և ճշմարտութեան առարկային։

Սէրն ոչ միշտ առաքինութիւն է, այլ և կիրք. հաւատք ոչ են կիրք, այլ գիտութիւն՝ եթէ լիցեն զբնական իրաց. և առաքինութիւն՝ եթէ լիցեն հիմնեալ 'ի վերայ հեղինակութեան ուրուք՝ որոյ բարութիւնն և ճշմարտութիւն կամ ճշմարտասիրութիւն և անսուտն հաւատարմութիւն յայտնի են, որպէս՝ հաւատք որ առ Աստուած և առ յայտնութիւն նորա, իբրեւ կրօնական կամ Աստուածային առաքինութիւն, և հաւատք առ ծնողս, առ վարդապետս և առ առաքինիս, իբրեւ բարոյական առաքինութիւն, և հաւատք առ վկայութիւնս ներքին և արտաքին զգայութեանց, իբրեւ բնական առաքինութիւն։ Ապա սէրն որ ծնանի 'ի հաւատոց, կամ քան զոր կանխեն հաւատք՝ ազնուագոյն և սրբագոյն է յոյժ քան զսէր որոյ ծագումն չէ 'ի հաւատոց, այլ ինքնածին է և ախորժածին։

Ապա չեն ինչ զարմանք թէ ընդէր Տէրն մեր միշտ պահանջէր հաւատս, և զնոյն քարոզէր, և մեծամեծս խոստացաւ 'ի հաւատոց. քանզի գիտէր թէ անհնարին է թէ 'ի հաւատոց ոչ ծնանիցին յոյս և սէր, իբրև առաքինութիւնք կարևորք յամենայն կարգս կենաց և հանդերձելոց. գիտէր ևս թէ յոյս և սէր որ ծնանին 'ի հաւատոց՝ աներկեւան և կատարեալ են. և որ միանգամ ունիցի զճշմարիտ հաւատս 'ի յայտնութենէ Աստուծոյ, 'ի վարդապետութենէ աւագաց, 'ի վկայութենէ բանին և զգայութեանց՝ այնպէս իմն զօրանայ յուսով, և բորբոքի սիրով, մինչև սաստկագոյն և հզօրագոյն լինել քան զամենայն, և կարող և ձեռնհաս առ ամենայն, ուստի յիրաւի ասացաւ թէ Ամենայն ինչ հնարաւոր է այնմ որ հաւատայ։

Լոկ զգացմամբ են հաւատք այնր որ 'ի սիրոյ հաւատայ. այլ իրական է սէր նորա՝ որ 'ի հաւատոց սիրէ։

Վերագոյնն ասացաք թէ Նախամարգարէն Մովսէս զսէր յառաջագոյն եդեալ՝ գրեաց 'ի գլուխ պատուիրանացն զՍիրեսցես զՏէր Աստուած քո. և այսմ բերաք պատճառ թէ Մարգարէն զայս արար վասն խակութեան ժամանակին. զի Հրեայք 'ի ստրկութեան անդ ընդ եգիպտական լծով վատթարեալք մտօք և հոգւով, չէին ընդունակ

բարձրագոյն վարդապետութեան հաւատոյ, առ որ, որպէս ասացաք յիւրում տեղւոջ, պահանջի կարողութիւն տրամաբանական. զի ոչ ոք որ խնդրէ հաւատս յումեքէ՝ կարէ պահանջել 'ի նմանէ զի հաւատասցէ առանց խորհրդածութեան և տրամաբանական ընտրութեան, որպէս թէ արժան իցէ ընդունել զոր ինչ և ասիցէ, թէպէտև անտեղի և անհնարին. ապա և ոչ Աստուած որ արդարև խնդրէ 'ի մարդոյ հաւատս բացարձակ, այլ ոչ առանց խորհրդոյ, քանզի եդեալ է նա առաջի մարդոյ զտիեզերս որ են գործք ձեռաց նորա յորմէ նախ 'ի վերայ հասանէ մարդ (եթէ վարիցի ուղիղ տրամաբանութեամբ) գոյութեանն Աստուծոյ, և ստորոգելեաց նորա որ են ամենակարողութիւնն, իմաստութիւն և բարութիւն, զորոց զհետ գայ արարչագործութիւն նորա։ Ցետ հաւատալոյ այսպէս փաստիւք բնութեան 'ի գոյութիւն նորա, ոչինչ անտեղի կարէ թուել մարդոյ թէ կամեցեալ իցէ նորա խօսել և յայտնել զկամս իւր, միայն ոչ այլ ինչ մնայ բայց կշռել և դատել զբանս նորա ընդ սկզբանց իմացականութեան և բարոյականութեան որ են բնական և բնածին 'ի մարդն, և ըստ այսց սկզբանց յորոց վերայ հիմնեալ է տրամաբանութիւն՝ կարող է ընտրել զճշմարիտն 'ի ստոյ, զուղիղն 'ի թիւրէ, և զբարին 'ի չարէ, և այնպէս հաւատայ

գրականապէս կամ բացատապէս, այն է ընդունի և մերժէ։

Ապա յիրաւի պահանջէ Տէր մեր հաւատս, և պահանջելով հաւատս նախ՝ յորդորէ և զարթուցանէ զտրամաբանութիւն մեր, քննել և ընդունել, զի ճշմարիտ իմաստութիւնն Աստուծոյ վստահ է 'ի ստուգութիւն այնր զոր առաջարկէ 'ի հաւատալ. որպէս և ասաց իսկ ցՀրեայս թէ քննեցէք զգիրս որովք համարիք ունել զկեանս։ Ուստի և եկեղեցի 'ի պահանջել հաւատս յեկելոցն առ նա 'ի մկրտութիւն, ըստ բանի Տեառն թէ Որ հաւատայ և մկրտի՝ կեցցէ, դնէ զհաւատս 'ի գլուխ կարգի երից յատկութեանցն բանաւոր մարդոյ, այն է հաւատոյ, յուսոյ և սիրոյ, և այսպէս ուղղի կարգն, և տայ իմանալ թէ Քրիստոնեայն պարտի լինել բանաւոր մարդ և ոչ զգայական կամ անզգայական։ Այս է առաւելութիւն Քրիստոնէութեան և ճշմարտութիւն գրութեան նորա նկատմամբ առ մարդն հոգեւոր, իմացական և ընկերական։

Թուի մեզ թէ ըստ բաւականին բացատրեցաւ զոր ինչ մինչեւ ցայս վայր ասացաք յայսմ մասին գրոցս, և յայտնի եղեւ նպատակ մեր որ էր ցուցանել թէ զինչ իցէ մարդն որ ըստ Աստուծոյ հաստատեալ է, և զիարդ պարտի ճանաչել զանձն և ջանալ զի իցէ այնպէս որպէս էն ըստ Աստուծոյ։

# ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ



## ԳԼՈՒԽ Ա.

*Յաղագս թէութեան թէ զինչ իցէ։*

---

ԹԷՈՒԹԻՒՆ *ասի այն ինչ յորոյ գոյութենէ կախեալ կայ այլոյ իրիք գոյութիւն։ Զորօրինակ՝ եթէ եմք մարդ բանական, պարտ է մեզ յերևելեաց զաներևոյթս իմանալ և գիտել. եթէ ոչ իմանամք և ոչ գիտեմք, ապա չեմք մարդիկ բանաւորք։*

*Օրինակաւ թէութեան դիցուք առաջի ըզ Նպատակ մատենիս։ Եթէ ունիմք հաւատս, պարտ է մեզ կրել յոյս. եթէ կրեմք յոյս, պարտ է մեզ սիրել առ որ յուսամքն. եթէ սիրեմք առ որ յուսամքն, պարտ է մեզ լինել ժիրս յամենայնի հանդերձ համեստութեամբ, այսինքն՝ հանդարտութեամբ. եթէ եմք ժիր յամենայնի, արժան է մեզ լինել խոհեմս հանդերձ պարկեշտութեամբ. եթէ եմք խոհեմ, արժան է ունել արութիւն հանդերձ խոնարհութեամբ. եթէ եմք արիք, 'ի դէպ է մեզ գտանել անձինս համակիրս մեզ, ճանաչելով զմիտս, զկամս և զխորհուրդս նոցա*

գտանեա ըստ մասին. Եթէ գտանեմք զհամակիրս մեզ, պարտ է և զյարմարութիւն տեղւոյն որոնել և ճանաչել ըստ գործոյն կամ ըստ իրին. Եթէ որոնեցաք և ծանեաք զյարմարութիւն տեղւոյն, պարտ և զհոլովումն ժամանակաց որոշել և ընտրել ըստ քանակութեանն կամ ըստ աստիճանի. Եթէ կարացաք զհոլովումն ժամանակաց որոշել և ընտրել, արժան է լինել արդարս հանդերձ շնորհօք. Եթէ եմք արդարք, հարկ է զի և սուրբք իցեմք չափով. և եթէ եմք սուրբք, հարկ է զի և ճշմարիտք իցեմք ամենայնիւ, մտօք և սրտիւ ։ Սմին հակառակ, եթէ չեմք ճշմարիտ, չեմք սուրբ. Եթէ չիցեմք սուրբ, չեմք արդար. Եթէ չեմք արդար, չեմք կարացեալ որոշել և ընտրել զհոլովումն ժամանակաց. Եթէ չեմք կարացեալ որոշել և ընտրել զհոլովումն ժամանակաց, չեմք որոնեալ և գտեալ զյարմարութիւն տեղւոյն. Եթէ չեմք որոնեալ և գտեալ զյարմարութիւն տեղւոյն, չեմք գտեալ զհամակիրս մեզ. Եթէ չեմք գտեալ զհամակիրս մեզ, չեմք արիք. Եթէ չեմք արիք, չեմք խոհեմ. Եթէ չեմք խոհեմ, չեմք ժիր. Եթէ չեմք ժիր, չունիմք սէր. Եթէ չունիմք սէր, չունիմք և յոյս. և եթէ չունիմք յոյս, չունիմք և հաւատս ։

Յօրինակէ աստի յայտ է թէ 'ի գոյութենէ թէութեան մակաբերեմք՝ զհետեւութիւնն.

և 'ի չգոյէ հետեւութեան՝ զպակասութիւն թէութեան ։ Այլ զթէութենէ 'ի ստորեւ լիցին բանք ։



# ԳԼՈՒԽ Բ.

Յաղագս ժրութեան թէ զինչ իցէ, եւ քանիօն ։



Ժրութիւն ասելով իմանամք զարագութիւն համեստութեամբ, այն է՝ չդանդաղել, առնել 'ի դէպ ժամանակի զոր առնել պատշաճ է, առանց օր 'ի յօր և ժամ 'ի ժամ առնելոյ ։ Ժրութիւնն է թէութիւն հաւատոյ, յուսոյ և սիրոյ. կամ՝ սիրոյ յուսով զօրացելոյ և բխելոյ 'ի հաւատոց ։

Ժրութիւն թէպէտ մի է ըստ ինքեան, այն է մի յապաղել և մի դանդաղել քան զպատշաճն, այլ երեքկին է ըստ առարկային, ժրութիւն 'ի միտս, ժրութիւն 'ի բանս և ժրութիւն 'ի գործս ։

Ժրութիւն 'ի միտս այն է, զի յորժամ կայցէ առաջի իմանալ ինչ կամ ճանաչել և հասու լինել, մի դանդաղեսցուք, այլ իսկ և իսկ ջանասցուք 'ի վերայ հասանել. եթէ մեզէն ոչ կարեմք, փութասցուք ուսանել յայլոց որ գիտակ են և կարող յուսուցանել ։

Ժրութիւն 'ի բանս այն է, զի յորժամ ունիցիմք ասել ինչ ումեք կամ խնդրել կամ աղաչել կամ ազդ առնել և տեղեկացուցանել, մի դանդաղեսցուք ։

Ժրութիւն գործոյ այն է, զի յորժամ հարկ է և պարտիմք առնել ինչ, մի յուլասցուք և դանդաղեսցուք, և մի արասցուք յայլ օր կամ 'ի ժամ. այլ մանաւանդ ոչ արագ միայն, այլ և եռանդեամբ և տենչանօք սրտի առնել. զի առած է թէ Ցուլից և ծուլից փակեալ է դուռն արքայութեան ։

Ի պակասութենէ ժրութեան եթէ 'ի միտս, եթէ 'ի բանս և եթէ 'ի գործս, մարթ է բազում վնասուց և կորստեան և անպատեհ և ձախող իրաց պատահել ընդ որ զղջասցուք, այլ 'ի զուր ։ Զորօրինակ՝ դիցուք թէ առաջի կայ մեզ ասել ինչ, և դանդաղեցաք և զանց արարաք. մարթ է և յոյժ հաւանական թէ կորնչելոց է պատեհութիւնն այն, զի 'ի փոխել և յանցանել ժամանակին, փոխին և անցանեն և պայմանք կամ պարագայք իրաց և անձանց, և ոչ կարիցեմք թերեւս գտանել յետոյ զայլն առ որ խօսելոցն էաք, կամ յորմէ կախեալ կայր կատարումն իրացն կամ Նպաստ. կամ իրքն վասն որոց ասելոց էաք՝ կորնչիցին կամ տարցին այլուր, կամ տացին այլոց. կամ այն որ 'ի տունջեան լինելոց էր կամ 'ի դարնան կամ յամարան, եկեալ գիշերոյ կամ

ձմերան և աշնան, լինիցի անհնարին։ Մարթ
է դիպել և մահու կամ այլ անհնարութեան․
դարձեալ և ազդեցութիւն կամ զօրութիւն
բանից մերոց նուազի, և բանք մեր ոչ լիցին
հաճոյ և ընդունելի․ վասն այնորիկ ասէ․ Յու-
լից և ծուլից փակեալ է դուռն արքայութեան․
Զնոյն պարտ է իմանալ և զդանդաղութենէ
կամ զյապաղմանէ յիմանալ և 'ի գործել։ Ո՛ր-
չափ մարդիկ մնացին անդէտ ,. մերկ, սովա-
մահ, վրիպեալ 'ի նպատակէ; յարդեանց, 'ի
պտղոց, 'ի շահուց, և եղեն նշաւակ բազում
անպատեհութեանց զորս մի ըստ միոջէ թուել
անհնար է։ Արդարեւ մնամք անմասն յօգտա-
կարութենէ հաւատոյ, յուսոյ և սիրոյ, եթէ
'ի ծուլութեան գտցուք թերի։

Աստ դիտել արժան է, զի ժրութիւնն
կամ արագութիւն պարտի լինել ըստ պատշա-
ճի, այսինքն՝ չէ պարտ դանդաղել քան զչա-
փըն, բայց և ոչ արագել և շտապել քան զար-
ժանն․ վասն որոյ ասացաք թէ ժրութիւնն է
արագութիւն համեմատութեամբ։ Արդարեւ գործ է
դտանել զայս միջին վայր, կամ զհաւասարա-
կշռութիւն 'ի մէջ կարի արագութեան և յոյժ
դանդաղութեան։ Այր հանդարտ 'ի կրից ու-
նիցի զայս համեստութիւն։ Վասն այսորիկ
տեսցուք զգլուխն որ զկնի ուր զխոհեմութե-
նէ ճառեսցուք։

# ԳԼՈՒԽ Գ.

*Յաղագս խոհեմութեան թէ զինչ իցէ եւ քանիօն ։*

---

*Խոհեմութիւն է գտանել զպատշաճն եւ զդէպն հանդերձ պարկեշտութեամբ ։ Պատշաճ և դիպող ասելով իմանամք զայն ամենայն որ օրինաւոր և վայելուչ է ․ և զի միայն բարին և ճշմարիտն և օգտակարն են օրինաւոր և վայելուչ, իսկ չարն և սուտ և վնասակար են միշտ ապօրինաւոր և անվայել, ապա խոհեմութիւնն ունի իւր նպատակ զբարին և զճշմարիտ և զօգտակար ․ որով դիւրին է իմանալ թէ խոհեմութիւնն բովանդակէ յինքեան զիմաստասիրութիւն և զբարոյականութիւն, և է ուղղիչ մտաց և կամաց կամ սրտի միանգամայն ։ Եւ զի մարթ է շփոթել զխորամանկութիւն ընդ խոհեմութեան որ է խորագիտութիւն, վասն այսորիկ յաւելաք թէ պարտի լինել հանդերձ պարկեշտութեամբ այսինքն ուղղութեամբ ․ զի եթէ ոչ իցէ ուղղութիւն 'ի միտս, զդայական ախորժակքն և անձնասիրութիւն զօգուտ անձին տան նախամեծար առնել քան զբարին եւ զճշմարիտ, յորմէ գայ յառաջ վնասակարութիւն առ այլս, այն է՝ անիրաւութիւն և եղեռնագործութիւն ։*

*Խոհեմութիւնն եւս, մի ըստ ինքեան, յառարկայէ անտի բաժանի յերիս ․ Խոհեմութիւն*

'ի միտս կամ մտաւոր, խոհեմութիւն 'ի բանս և խոհեմութիւն 'ի գործս ։

Մտաւորն խոհեմութիւն կայանայ յայնմ զի, մինչչեւ արարեալ մեր ինչ կամ կրեալ, կշռեսցուք զիրն հակառակաւ նորա, այսինքն՝ համեմատեսցուք զպարագայն երկուց հակառակաց ընդ միմեանս, առ 'ի տեսանել թէ զի՞նչ զհետ գալոց է եթէ զայս ինչ արասցուք կամ կրեսցուք, և զի՞նչ՝ եթէ զնորին հակառակն ։

Պարտ է գիտել զի պարագայք իրաց են՝ եղանակ, ժամանակ, տեղի և պատճառք ։ 'ի սոսա մարթ է յաւելուլ և զգործին կամ զմիջոց ։ Ապա քննել զպարագայս է որոնել և ճանաչել զորպէսն, զերբ, զուրն և զվասն էրն, ապա և զորոշն և զ'ի ձեռն որոյն ։ Ոչ ապաքէն խմաստութիւն է այսոցիկ քաջ խելամուտ լինել, և ապա մխել 'ի գործ, վասն այնորիկ առած է թէ Զոր ինչ առնես՝ նախ խորհեաց. և ապա արա ։ իսկ ընդ հակառակն՝ վայրապար զանձն 'ի ներքս արկանել ոչ ապաքէն անխոհեմութիւն իցէ ։

Խոհեմութիւն 'ի բանս կայանայ յայնմ զի նովին օրինօք զորոց ասացաք, և ըստ նոցին սկզբանց ասասցուք ինչ և խօսեսցուք ։ Նոյն բան է և զխոհեմութենէ 'ի գործս ։ այն է ոչ ձեռնարկել 'ի գործ ինչ, յառաջ քան զգիտել զբնութիւն և զպարագայս գործոյն ։

Պարտ է գիտել զի երկոքին յետինքս, այն է խոհեմութիւն 'ի բանս և 'ի գործս, չեն ինչ տարբեր 'ի մտաւոր խոհեմութենէ, զի չիք բան կամ գործ որոյ կատարումն կամ գործադրութիւն չունիցի կախումն 'ի մտաց, նա մանաւանդ 'ի մտաց անտի բխէ, և հրամանաւ հոգւոյ և հաճութեամբ կամաց ելանէ արտաքս, վճարի և արկանի 'ի կիր։

Երկրորդ՝ պարտ է գիտել զի փորձառութիւնն է մայր խոհեմութեան, զի 'ի ձեռն փորձառութեան միայն մարթ է ուսանել զհետեւանս որ ըստ այլ և այլ պարագայից, փոփոխին և ածեն յառաջ արդիւնս այլակերպս։ Փորձառութիւն է որ ետ մարդկան հաստատել սկզբունս կամ առածս խոհեմութեան, զոր օրինակ թէ Առաջի իմաստնոց և մեծամեծաց քան զմեզ չէ պարտ յերկար խօսել. Բազում զգուշութեամբ յայտնել կնոջ մարդոյ զգաղտնիս. Ընդ ագահի չուտել հաց. Առաջի մախացողի մի գովել զոք. Մի խօսել խրատս առ անզգամս, և այլ սոցին նմանք։

Զխոհեմութիւնն եդաք զկնի ժրութեան, ոչ զի խոհեմութիւն յառաջ գայ 'ի ժրութենէ, այլ վասն զի խոհեմութիւն իսկ և իսկ և 'ի մօտոյ 'ի վերայ հասեալ ժրութեան, չափաւորէ զանկարգ եռանդն նորա։ Դարձեալ չեն մեզ կամք ասել թէ ամենայն յաջողութիւնք իցեն 'ի խոհեմութենէ. զի դէպ լինի երբեմն յաջողել

ըստ պատահման, կամ ըստ կոյր բախտի · բայց պատահար և բախտ չեն ընդ կանոնաւ և ոչ միակերպ և միօրինակ, ուստի և յուսալ 'ի պատահարէ և 'ի բախտէ՝ է յենուլ 'ի հողմս, և յոչընչէ խնդրել ինչ · Նոքա որ այսու սկզբամբ գործեն՝ գործեն առանց սկզբան ։ Եւ բազում անգամ սխալին ։

## ԳԼՈՒԽ Դ·

Յաղագս արութեան թէ զինչ իցէ եւ քանիօն ։

---

Արիութիւն է ոչ կասել, ոչ ընկրկել յետս, այլ դիմադրել դժուարութեանց որ ընդ առաջ ելանեն հոգւոյ · Նա երբեմն դիմադրաւ եւս լինել նոցա ։ Ամենայն դժուարութիւն որ ընդ առաջ ելանէ հոգւոյն, եթէ 'ի ներքուստ իցէ և եթէ յարտաքուստ, թշնամի է, որում պարտի յաղթել արութիւն ։ Ներքին թշնամիք են ախորժակք զգայական ոգւոյ, որոց անկարգքն և սաստիկք կիրք կոչին ։ Արտաքին թշնամիք են մարդիկ յարուցեալք 'ի վերայ՝ մտօք արկանելոյ զմեզ 'ի խաբս և 'ի պատրանս, կամ առ 'ի հրապուրել · այսպիսիք են կամ մոլեգնեալք 'ի կրից, կամ յայլոց մտակորոյս վարդապետաց թելադրչաց չարին, որ մասնաւոր ճշմարտու-

թեամբ ընդդէմ ընդհանուր ճշմարտութեան մաքառին.

Մասնաւոր ճշմարտութիւն ասելով իմանամք զջանալն պահել և առնել երջանիկ զանձն և զիւրսն միայն, այսինքն զվերաբերեալս առ իւր. իսկ ընդհանուր ճշմարտութեամբ իմանամք զջանալն պահել ապահով եւ երջանիկ զընդհանուրս. առաջինն է սէր առանձնական, երկրորդն սէր հասարակաց բարւոյ առանց դիտման շահասիրոյ իրաւանց և ոչ միոյ ուրուք: Արդ արիութիւն կռուի ընդ անձնասիրութեան կամ ընդդէմ տենչանաց առանձին բարւոյ որ ոչ դիտէ զհասարակաց բարիս կամ զընկերին. զի ոչ դիտելն զընկերին բարին՝ է ոչ դիտել զհասարակացն:

Է և ազգ ինչ արիութեան որ կայանայ 'ի ձեռնամուխ լինել 'ի դժուարինս և հանել 'ի գլուխ: Այս արիութիւն երբեմն բնական է մարդոյ, երբեմն կրթութեամբ ստանայ, է եւս զի պատահմամբ լինի. այն է՝ 'ի ժամանակաց, 'ի տեղեաց և յընկերաց, այսինքն՝ 'ի բնաւորութենէ և 'ի ձրից նոցա թելադրեալ. զի մարդ բազում անգամ 'ի սոցունց զօրանայ և արիանայ, կամ տկարանայ վեհերոտի և լքանի:

Արիութիւն ոչ մի օրինակ է յամենայն մարդիկ. ոմն արի է 'ի վիշտս և 'ի ձախողանս, այլ ոք 'ի դժուարին դէպս որ պատահեն 'ի լինել խափան կատարման գործոց ինչ. այլք

յառնուլ զառաջս վտանգաց , այլովքն հանդերձ : Այլ արիութիւն բաժանի յերիս . յարիութիւն մարմնոյ որ է ուժոյ զօրութեամբ կամ համարձակութեամբ տալ կուրծս և պատահել հակառակորդին որ սպառնայ վտանգ կամ վնաս : Այս արութիւն դիմագրաւելոյ վտանգաց , նաև տալոյ ևս զկեանս , յառաջ գայ երբեմն 'ի հաւատոց , այն է 'ի լինելոյ համոզեալ 'ի ճշմարտութիւն իրիք և 'ի համարելոյ զիւր վերագոյն բարին 'ի նմա : Զի որպէս ընչասէրքն և մարմնասէրք որ զփափկութիւն և զմեծութիւն աշխարհիս համարին զիւրեանց վերջին բարիս՝ զամենայն վիշտս , ևս և զմահ յանձն առնուն զի մի կորուսցեն զվայելս իւրեանց , այսպէս նա որ հաւատացեալն է 'ի ճշմարտութիւն և ծայրագոյն բարութիւն իւր ըզնա համարի՝ ոչ խոնջի և ոչ երկնչի , նաև ըզկեանս իւր ևս տայ արութեամբ : Այս արութիւն երևեցաւ 'ի ճշմարիտ վկայս . կամ քաւ ևս ասասցուք ճշմարտապէս և անկեղծ հաւատք տան զայս արիութիւն : Երկրորդ ազգ արիութեան է 'ի գործս , այն մխել անխոնջ և անվեհեր 'ի գործ հասարակաց բարւոյ , զայս արութիւն ունին երբեմն թագաւորք , իշխանք ազգապետք , որ աշխարհաշէնք կոչին և մեծագործք :

Երրորդ ազգ արիութեան է արիութիւն սրտի : Արիութիւն սրտի այն է զի որ արին է

սրտիւ ոչ լքանի, այլ հաստատուն կայ մնայ միշտ յամենայնի. Նախ քննէ և զննէ զպատճառս իրաց. և է աներկիւղ 'ի հաստատել և յապացուցանել զճշմարտութիւնն որում հաւանեալն է՝ առաջի ամենեցուն, եւս և իմաստնոց և աւագաց. Արիութիւն սրտի առնէ զիւր նահատակն ոչ միայն քաջասիրտ, այլ և քաջաբանս և կորովախօսս, մինչև 'ի զօրութենէ ձեռնարկութեանց նորա և փաստից զարմանալ լսողաց, և ապշել և ափիբերան լինել հակառակորդաց. Որպէս Տէրն մեր առնէր ընդ ապերասան Հրեայս, մինչև զայրանալ նոցա և խորհել սպանանել զնա. Շփոթել և վարանել 'ի տալ պատասխանի հակառակորդաց որ մախանօք և չարակնութեամբ կամին վնասել մեզ և յանցաւոր ցուցանել կամ դատապարտել զմեզ՝ է նշան վատութեան. Այս արիութիւն եւս երեւեցաւ 'ի վկայս ճշմարտութեան, 'ի սուրբ մարտիրոսս, որք բազում անգամ որչափ տկարք էին մարմնով, այնչափ զօրաւորք էին արիութեամբ սրտի. զի համոզումն ճշմարտութեան այնպէս է զի ոչ միայն տայ զօրութիւն բնական, այլ և ոյժ բարոյական և իմացական.

Պարտ է գիտել զի արիութիւն եթէ չէցէ հանդերձ խոնարհութեամբ և չունիցի ընդ իւր ընթակից զխոհեմութիւն հանդերձ պարկեշտութեամբ և զժրութիւն հանդերձ համեստու֊

թեամբ՝ փոխի 'ի յանդգնութիւն որ է թերութիւն մեծ, և բազում վնասք ծագին 'ի յանդգնութենէ աստի նաեւ մահ իսկ. և զի արիութիւն ազատ գտանիցի 'ի բերկրութենէ աստի և յայլոց ևս թերութեանց և 'ի մոլորութեանց՝ 'պարտի յառաջ գալ 'ի հաւատոց իմաստութենէ, և ոչ 'ի կոյր եռանդանէ կրից և զգայական ախորժակաց:

Են և այլ մեծամեծ գործք որ են արդարեւ գործք արութեան, և են նոյնպէս թէութիւնք հաւատոյ: Այսպէս են մեծագործութիւն. որպէս՝ օրէնսդիր լինել, կարգս և կանոնս հաստատել. շինել ճանապարհս, կամուրջս, աղբիւրս. հնարագիւտ լինել արուեստից կամ ուսուցանել մարդկան զհանգամանս իրաց կարեւորաց և օգտակարաց. գիրս դնել և մատեանս յօրինել և այլ սոցին նմանք:

Բովանդակեսցուք այժմ զբանս մեր որ ըզ ժրութենէ, զխոհեմութենէ և զարիութենէ: Յասացելոց անտի դիւրին է իմանալ զի առանց երեցունց սոցա ոչ կարեն կալ ուղիղ և ճշմարիտ հաւատք. ուստի և երեքին առաքինութիւնքս են թէութիւն հաւատոց: Ապա հարկ է մեզ ժիր լինել մտօք, բանիւ և գործով, հանդերձ համեստութեամբ ըստ ամենայնի. յետ ժրութեան հարկէ լինել խոհեմ մտօք, բանիւ և գործով, հանդերձ պարկեշտութեամբ և ժրութեամբ. երրորդ անգամ,

հարկ է լինել արիս մարմնով, գործով և սրտիւ հանդերձ խոնարհութեամբ, ժրութեամբ և խոհեմութեամբ, եթէ կամիմք ունել զուղիղ զճշմարիտ և զկատարեալ հաւատս իմաստութեան։ Արիութիւն պարտի լինել հանդերձ խոնարհութեամբ. զի այր խոհեմ վստահ է 'ի ճշմարտութիւն և ոչ յանձնապաստան յանձն. իսկ ամբարտաւանութիւն որ է յանձնապաստանութիւն և մեծամտութիւն՝ ոչ գայ յառաջ 'ի ճշմարտութենէ, այլ 'ի կրից, և եղծանէ զարդիւնս խոհեմութեան, արկանելով 'ի յանդգնութիւն և 'ի ժպրհութիւն։

## ԳԼՈՒԽ Ե.

*Թէ որն յերից աստի պատշաճի 'ի քաղաքական, 'ի բնական եւ 'ի վերացեալ հաւատս։*

---

Յայտ է թէ մեք զհաւատս յերիս ազգս բաժանեցաք, 'ի քաղաքական, 'ի բնական և 'ի վերացեալ։ Քաղաքականն այն է որ առ հասարակ վստահութիւն կոչի. բնականն է փորձառական, իսկ վերացեալն իմացական։

Աստ արժան է մեզ ցուցանել թէ որն յերեցունց անտի, որ են ժրութիւն, խոհեմութիւն և արիութիւն որոյ ազգի հաւատոց պատշաճիցի։ Ի ժրութենէ, իբրեւ 'ի թէութենէ

ծնանին քաղաքական հաւատք այն է վստահութիւն. զի անհնար է լինել վստահ առանց ժրութեան. 'ի խոհեմութենէ ծնանին բնական հաւատք, այն է փորձառութիւն և հրմտութիւն, քանզի առանց խոհեմութեան անհնար է ստանալ և ունել փորձառութիւն և հմտութիւն զորս բնական հաւատս կոչեցաք։ Իսկ յարիութենէ, իբրեւ 'ի թէութենէ բղխեն վերացեալ հաւատք որոյ մասունք են բնազանցականն, բարոյական և կրօնական, զորոց յիւրում տեղւոջ ճառեցաք։

Այլ ընդէր ժրութիւնն իցէ թէութիւն քաղաքական հաւատոց, կամ վստահութեան։ Քանզի ճշմարիտ վստահութիւն պարտի ծնանել 'ի ժրութենէ, ապա թէ ոչ լինէր անփութութիւն կամ յիմարութիւն, ուստի և լինէր մոլութիւն։

Ընդէ՞ր խոհեմութիւնն իցէ թէութիւն բնական հաւատոց կամ փորձառութեան և հրմտութեան։ Քանզի առանց խոհեմութեան անհնար է լինել փորձ և հմուտ իրաց և օրինաց բնութեան։

Մնայ մեզ այժմ ասել թէ ընդէր արութիւնն իցէ թէութիւն վերացեալ հաւատոց որ է իմացութիւն։ Քանզի չէ հնար առանց արութեան ունել՝ և պահել հաստատութեամբ զխելամտութիւնս բարոյական, բնազանցական և կրօնական հաւատոց։

# ԳԼՈՒԽ Ջ.

Յաղագս թէութեանց ընդհանուր յուսոյ։

---

Յասացելոց անտի կանխաւ յայտ է, և եթէ ոք քաջ խորհիցի, մտօք իսկ գտանէ 'ի փորձառութենէ դիպաց պատահելոց, զի յոյս մեր որ 'ի հաւատոց է՝ կատարի ըստ գործոց մերոց եթէ բարեաց և եթէ չարաց. և այս կատարումն յուսոյ մերոյ ըստ գործոց, երբեմն դիպի 'ի գիտութենէ կամ 'ի տգիտութենէ մերմէ. այսինքն՝ 'ի գիտութենէ բարիք, և 'ի տգիտութենէ չարիք հանդիպին մեզ։ Այլ բազում անգամ բարիք և չարիք որոց ակն ունիմք կամ պարտիմք 'ի հարկէ ակն ունել ըստ որպիսութեան գործոց մերոց՝ պատահին մեզ 'ի մարդկանէ. բարիքն 'ի համակիր մարդոց, և չարիքն 'ի հակակրաց։ Այլ յերկոսին դէպս եւս յարմարութիւն տեղւոյն և ժամանակին 'ի մէջ մտանէ իբրեւ պարագայ եղելոցն ըստ իրին, ըստ գործոց և ըստ քանակութեան։ Վասն այսորիկ ասացաք այլուր, և աստէն եւս ասասցուք, եթէ պարտ է մեզ առ յարդիւնս ածել զյոյս մեր՝ միտ եդեալ, որոնել, գտանել և ընտրել զմարդիկ համակիրս, զտեղւոյ յարմարութիւն և զհոլովումն ժամանակի, և այն ըստ իրին, ըստ գործոյն և ըստ քանակութեան,

եթէ կամիմք զի յոյս մեր լիցի աներկեւան ըստ չափոյ ։

Այժմ՝ հարկ է մեզ խօսել զհամակրութենէ, զյարմարութենէ տեղւոյ, և զհոլովմանէ ժամանակաց թէ զի՞նչ սոքա յայտ առնիցեն ։



# ԳԼՈՒԽ Է.

Յաղագս համակրութեան թէ զի՞նչ իցէ ։



Թէպէտ համակրութիւն յամենայն իրս եթէ յանշունչս և եթէ 'ի շնչաւորս գտանի, մեք թողեալ զայլ ամենայն համակրութիւնս, խօսեսցուք միայն զհամակրութենէ մարդոց ։

Համակրութիւն մարդոց այն է յորժամ երկու կամ բազում անձինք ունին զնոյն միտս, զնոյն կամս և զնոյն հաճութիւն ։ Զոր օրինակ՝ Յովհաննէս կամի և հաճի խօսել և քարոզել զբարոյական սիրոյ, Պետրոս և Յակոբոս եւս զնոյն կամին և ընդ նոյն հաճին ; ապա համակիր են միմեանց ։ Հոմերոս սիրէ հարկանել քնար, զնոյն առնել ախորժէ և Որփէոս, ապա նոքա եւս համակիրք են միմեանց, և զամենայն կեանս իւրեանց զնուագածութենէ և զգեղգեղանաց խորհին և խօսին ։ Սոկրատ խորհի զէութենէ միոյ Աստուծոյ, զնոյն զմտաւ ա-

ծէն և Պղատոն և Արիստոտել, ապա երեքին են համակիրք։

Համակրութիւն գայ յառաջ 'ի ներքին եօթն գործարանաց, այն է՝ յորպիսութենէ և 'ի դրութենէ նոցա. 'ի չորից խառնուածոց որպիսութենէ և 'ի չափոյ, 'ի ջղաց և յաղեաց որպիսութենէ զի սոքա ամենեքին ունին յարմարութիւն և պատշաճութիւն, այն է՝ գործարանք և խառնուած՝ ընդ բարոյական համակրութեան։

Ըստ բաւականին ցուցաւ թէ զինչ է համակրութիւն, այժմ տեսցուք թէ քանի ազգ են համակրութեան։

Համակրութիւնն 'ի մարդիկ՝ երեքկին է. այն է՝ 1. համակրութիւն 'ի միտս, կամ համամտութիւն. 2. համակրութիւն 'ի խորհուրդս, որ է համախոհութիւն. և 3. համակրութիւն կամաց որ է համակամութիւն։

Եթէ երկու կամ բազում անձինք իցեն միանգամայն համամիտ, համախորհուրդ և համակամ, լինին ըստ ամենայնի համակիրք։ Իսկ եթէ իցեն մի մտօք, այլ ոչ մի խորհրդով և կամօք, չեն կատարեալ համակիր, այլ ըստ մասին. թէպէտ և մասնաւոր համակրութիւնն ևս է համակրութիւն, այլ ոչ ազդու և մշտատեւ։ Նոքա որ ըստ մասին համակիրք են, երբեմն միաբան են ընդ միմեանս և երբեմն անմիաբան։

Կատարեալ համակիրք միշտ՝ միաբան են

ընդ միմեանս , վասն որոյ մարթ է համարել զնոսա բարոյապէս մի , մի սիրտ և մի ոգի բընակեալ 'ի բազում մարմինս , որք զմի օրինակ խորհին , միով օրինակաւ շարժին , և միապէս ազդեն , իբրեւ զսնդիկ կամ զայլ մետաղս որ 'ի բազում մասունս բաժանին , այլ ունին զնոյն ազդեցութիւն , և կարեն միւսանգամ գալ՛ առ միմեանս և միանալ :

Դարձեալ համակրութիւնն մտօք կամ համամտութիւն , է բնական . համակրութիւնն խորհրդով կամ համախոհութիւն՝ է վերացեալ , իսկ համակրութիւնն 'ի կամս ; կամ համակամութիւն , է քաղաքական . Ի մէջ երեցունց սոցա՝ համամտութիւնն է հաստատուն , այլքն են փոփոխական և յողդողդ , քանզի խորհուրդ և կամք բազում անգամ փոփոխին : Արդ որովհետեւ մարդիկ խարդախք և կեղծաւորք համակրութիւն կեղծաւորին առ 'ի խաբել , շահել ինչս և յագեցուցանել զիւրեանց անյագ ցանկութիւն , ուստի պարտ է բարոյագէտ անձանց ճանաչել զնոսա 'ի նշանաց նոցա և զգոյշ լինել 'ի նոցանէ :

Ասասցուք այժմ զգործոց համակրութեան : Համակրութիւնն եթէ 'ի բարին և եթէ 'ի չար , յառաջ ածէ արդիւնս մեծամեծս չարեաց և բարեաց : Թագաւոր կամ իշխան կամ այլ ոք աւագ որ է բարեբարոյ , իմաստուն , արդար , քաջ և մարդասէր , 'ի ձեռն համակիր անձանց

գործէ բաղում բարիս · դնէ օրէնս , ուղղէ , շինէ և յարդարէ զաշխարհ ։ Զարիւն հակառակն գործէ որ չարն է և անիրաւ , անգութ , տգէտ և դժնեայ · զի սա եւս 'ի ձեռն անձանց որ համակիրքն են նմա՝ քանդէ և տապալէ զամենայն ։ Համակրութիւն է որ տայ ածել 'ի պատիւ և 'ի փառս , 'ի պաշտօն և 'ի գործ զբարիս կամ զչարս ըստ իւրում հաճութեան ։ Համակիրն ոչ ընդունի բողոքս կամ ամբաստանութիւնս , թէև արդար իցեն , զիւրմէ համակրէն · փոխանակ պատժելոյ զիւր համակիր անիրաւ և յանցաւոր , պատուհասէ զայն որ ամբաստանն լինի կամ բողոքէ ։ Վասն այնորիկ հարկ է ամենայն մարդոյ , մանաւանդ այնոցիկ որ ուղղիչքն են ազգաց և ժողովրդոց , եթէ աշխարհական իցէ իշխանութիւն նոցա և եթէ եկեղեցական , լինել այր ընտիր և առաքինի · ունել զյոյս 'ի հաւատոց , հաստատեալ 'ի բարին , զի համակրութիւն նոցա իցէ ընդ բարիս և մի ընդ չարս , և այնպէս մի լիցի վտանգ հասարակութեան անկանելոյ ընդ բռնութեամբ անզգամաց և անիրաւ պաշտօնէից ։

Ի համակրութենէ են և այլ եւս մասնաւոր բարիք · որպէս խաղաղութիւն և յաջողութիւն յընկերութեան , և ծնունդ որդեկաց յարևնման ծնողաց 'ի համակրութենէ առն և կնոջ · յառաջադիմութիւն և զօրութիւն ազգաց և քաղաքաց՝ 'ի համակրութենէ ժողովրդեան ·

ծաղկումն և մեծութիւն 'ի վաճառականութեան, յարուեստս և 'ի մշակութեան՝ 'ի համակրութենէ ընկերաց, արուեստագիտաց և գործաւորաց, հողատերանց և մշակաց, և այլք եւս ըստ սմին օրինակի մի ըստ միոջէ ։

Դարձեալ է գործ համակրութեան զի յորժամ ոք պարապի յայն գործ առ որ ունի ձիրս և բերումն՝ բարգաւաճի և յառաջադէմ լինի, վասնորոյ պարտ է միշտ հայել 'ի դաստիարակութեան 'ի յօժարութիւնս և 'ի ձիրս իւրաքանչիւր ուրուք, և այնպէս առնել զմարդիկ համակիրս ըստ գործոց ։



## ԳԼՈՒԽ Ը․

Յաղագս յարմարութեան երկրի թէ զի՞նչ իցէ ։

Յարմարութիւն երկրին է պատշաճաւորութիւն և յանկութիւն տեղւոյն ուր առնեմք ինչ գործ՝ ընդ նմին իսկ գործոյ ։ Ուր գուցէ այս պատշաճաւորութիւն, անդ յաջողին գործք մեր եթէ բնականք, եթէ բարոյականք և եթէ քաղաքականք, և մեք չկրեմք ինչ ամօթ կամ դժուարութիւն ։

Զյարմարութիւն երկրին որոշել դժուարին է յոյժ․ զի բազում են կլիմայք ըստ դրից, հայեցուածոց, ջրոց և հողմոց որ տիրեն, և

ըստ այլոց հանգամանաց ։ Այլ երիս գլխաւոր կէտս պարտ է ընտրել, զբնականն, զբարոյական և զքաղաքական ։ Եւ պարտ է գիտել զի եթէ ՚ի բնականս, եթէ ՚ի բարոյականս և եթէ ՚ի քաղաքականս լաւն և պիտանին, որպէս և յոռին և անպիտան, յառաջ գան ՚ի յարմարութենէ երկրին ։

Ըստ բնականին նկատեալ՝ յարմարութիւն երկրին ըստ երեցունց խառնմանցս այսոցիկ առնէ ազդեցութիւն ։ Ըստ ցրտութեան, ըստ բարեխառնութեան. և ըստ սաստիկ ջերմութեան ։ Եւ տարբերութիւնս այս գործի սովորաբար ըստ երից՝ դիրից երկրին որ են լեռնայինն, դաշտայինն և խորաձոր ։ Եթէ տունկք և եթէ անասունք ըստ երից այսց խառնուածոց և դիրից պէս պէսք և այլակերպք են ըստ բուսոյ բարուց, ըստ գունոց, ըստ համոց, հոտոց, չափոց և այլոց հանգամանաց ։ Բնական որպիսութիւն երկրին բազմապատիկ ազդեցութիւնս գործէ ՚ի բնականս . զորօրինակ չիք տարակոյս թէ որոց խառնուած արիւնային է՝ առողջագոյնք լինին, եթէ բնակիցեն յայնպիսի տեղիս ուր հողմն հիւսիսոյ տիրէ . չիկամաղձոտք՝ եթէ բնակին ՚ի վայրս ուր հողմն արեւմտեան իշխէ . սեւամաղձոտք պարտին բնակել ընդդէմ հարաւային հողմոյ, իսկ մաղասացինք անդ՝ ուր շնչէ ստէպ հողմ արեւելեան ։

Բնական օրպիսութիւն երկրին ունի ազդեցութիւն և 'ի բարոյս կամ 'ի բարոյականս. զորօրինակ 'ի պատմութենէ և 'ի փորձոյ յայտ է թէ ժողովուրդք լեռնաբնակք լինին վայրագ, յափշտակող, անգութ, անյօժարք 'ի կրթութիւն. դաշտաբնակքն նմին հակառակ լինին համբոյրք, առատաձեռն, մարդասէրք և մէտք 'ի կրթութիւն և 'ի յառաջադիմութիւն։ Արդարեւ գտանին լաւաբարոյք 'ի լեռնաբնակս և չարաբարոյք 'ի դաշտաբնակս, այլ դուն ուրեք և անօսր։

Նոյն բանք են և զքաղաքականէն. ոչ ամենայն խառնուած և դիր երկրի յարմարագոյն է 'ի հողագործութիւն, յարուեստ և 'ի վաճառաշահութիւն. դարձեալ և որ յարմարագոյնն է 'ի հողագործութիւն, չլինի պատշաճ յամենայն ազգս բերոց և արդեանց. և այլքն ևս նոյնպէս։ Ապա իմաստութիւն մեծ է 'միտ դնել. որոնել և ուսանել զհանգամանս երկրին յամենայնի, եթէ կամիմք գտանել յաջողութիւն։ Եւ զայս առնել արժան է վասն օդոյ երկրին, դրից և հայեցուածոց 'ի պատճառս առողջութեան, վասն բարուց, սովորութեանց և յօժարութեանց մարդկան՝ 'ի պատճառս համակրութեան, զի դաշտաբնակն հեզ և մարդասէր չկարէ գտանել համակրութիւն 'ի մացառաբնակ, տրամնոտ բնակիչս լեռնորդաց, և ոչ լեռնաբնակն դժնեայ 'ի

հարթաբնակ, դաշտաստէր բնակիչս քաղաքաց և չինից, միտ դնել պարտ է և բևեռաց և արդեանց երկրին ՚ի պատճառս արուեստից և վաճառականութեան և մշակութեան։ Եթէ ոչ միտ դնիցեմք այսոցիկ, վտանգիմք յառողջութեան, ՚ի պատուի և ՚ի շահու մերում։

## ԳԼՈՒԽ Թ.

*Յաղագս հոլովման ժամանակաց թէ զինչ իցէ, եւ ո՞յք իցեն ազդեցութիւնք նորա յէս եւ ՚ի գոյս։*

Հոլովմամբ ժամանակաց, որպէս յայտ է, պարտ է իմանալ զշրջանս դարուց, տարեաց, ամսոց, աւուրց և ժամուց. և զփոփոխմունս եղանակաց։ Հոլովումն ժամանակաց գործի ՚ի ձեռն թաւալման և գնացից մոլորակաց զարեգակամբ, արբանեկաց նոցա զնոքիմք իսկ զմոլորակօք, և որպէս հաւանական է ըստ աստեղագիտաց, մեծամեծ հոլովմանց բովանդակ մոլորակային դրութեան հանդերձ արեգակամբ զայլով արեգակամբ որ մեծագոյն է քան զմերն։

Հոլովումն երկնային մարմնոյ կամ թաւալումն և շարժումն նոցա այլ և այլ ազդեցութիւնս գործէ յամենայն իսկ լուսաւորս, մանաւանդ

’ի վերայ մերոյ մոլորակի որ է Երկիր։ Այլ մեք երկուս ազդեցութիւնս կամիմք զմտաւ ածել՝ մին ուղղակի, միւսն անուղղակի։ Ուղղակի ազդեցութեամբ է զի լինին գիշեր և տիւ, ամառն և ձմեռն, գարուն և աշուն. և աստի գան յառաջ փոփոխութիւնք ’ի ծոց երկրի, ’ի մետաղս, ’ի ջուրս և յայլս եւս նիւթս հանքային կարգի։ Դարձեալ ’ի բոյսս որք ’ի փոփոխմանց անտի լինին այլակերպ, ապականին, մեռանին, գրեթէ ջնջին իսկ, և միւսանգամ նորոգին,. ծնանին և գան ’ի գոյ. Բազմանան և նուազին, աճին և հիւծին, զօրանան և տկարանան, և այնպէս են միշտ ’ի շարժման։ Զնոյն մարթ է ասել զզգայականաց և զմարդոց. զի ո՞ կարէ ուրանալ զազդեցութիւն փոփոխմանց ժամանակաց յորպիսութիւն, յաճումն, ’ի նուազութիւն և ’ի կեանս իսկ զգայնոց և բանաւորաց։ Փոփոխումն դրից և շարժմանց մոլորակաց է որ ’ի քաղ ’ի բաց հին ժամանակս, կամ ’ի դարս երկրաբանականս, յառաջ բերեալ է յեղափոխութիւնս ’ի վերայ երկրի. և ցարդ իսկ սասանութիւնք և բորբոքումն հրաբուխ լերանց գործեն աւեր բազում, և փոփոխեն զերեսս ցամաքի և ծովու։

Յանուղղակի ազդեցութենէ հոլովման ժամանակաց յառաջ գան փոփոխութիւնք դիպաց և այլ և այլ վիճակաց մարդկան։ Այսպէս ըստ հոլովելոյ ժամանակաց հոլովին և

կեանք անհատից և ազգաց. ծնանին, զան յերիտասարդութիւն, ծերանան և մեռանին. դէպք դիպաց յաջորդեն, որպէս ձախողութիւնք յաջողութեանց, աղքատութեան՝ մեծութիւն, երջանկութեան՝ թշուառութիւն, առողջութեան՝ հիւանդութիւն, և ընդհակառակն. Եւ քանզի մեծագոյն մասն 'ի փոփոխութեանց բարոյական և քաղաքական կարգի, որպէս յաջողութեան 'ի ձախողութիւն, կործանումն և կանգնումն ազգաց և թագաւորութեանց և այլոց բազմաց, ոչ բացարձակապէս, այլ ըստ թէական վճռոց ինչ Աստուծոյ լինին, այն է՝ եթէ այս ինչ դէպ դիպեսցի, այն ինչ գործ յաջող կամ անյաջող զայնր զհետ գայ, և զի ամենայն ինչ 'ի բնութեան միակերպ օրինօք գործի, ապա պարտ է եթէ 'ի պատմութենէ, և եթէ 'ի գիտութենէ և 'ի փիլիսոփայութենէ ջանալ հասու լինել թէ ոյք են պատճառք յորոց ըստ հոլովման ժամանակաց այս ինչ և այն ինչ դէպք 'ի հարկէ և իբրեւ 'ի բնական պատճառաց լինին. Պարագայք որ զկործանումն Ասորեստանեայց, Մարաց, Պարսից, Յունաց և Հռոմայեցւոց յառաջ բերին ըստ հոլովելոյ ժամանակաց՝ պարտին անշուշտ և զայլոց տէրութեանց յառաջ բերել ըստ նմին օրինակի. Այն ինչ՝ որ զհիւանդութիւն կամ զայլ ինչ ձախողութիւն և զյաջողութիւն միոյ ուրուք գործեաց, պարտի

գործել և զիմն, ըստ պարագայից և ըստ հոլովման ժամանակաց։

Հոլովումն ժամանակաց ազդէ 'ի մարդիկ ըստ երից գլխոց, 'ի տնկական որպիսութիւն նոցա, 'ի զգայականն և 'ի բանական։ Տնկականն ըստ հոլովման ժամանակի աճէ, յորմէ և փոփոխի տնկականն էութիւն ըստ խառնուածոց, ըստ չափոյ և ըստ այլոց որպիսութեանց, և անտի յառաջ գայ փոփոխումն զգայականին. զի յաճել և 'ի զօրանալ տնկականին աճէ և զօրանայ զգայականն, որպէս և 'ի վատթարել և 'ի տկարանալ նորա՝ վատթարէ և տկարանայ և սա։ Փոփոխման զգայականին զհետ գայ փոփոխումն 'ի բանականն, այն է՝ 'ի կարողութիւնս հոգւոյն որ են միտք և կամք։ Ամենայն գաղափարք, ծանօթութիւնք, կիրք և բաղձանք ըստ հոլովման ժամանակի փոփոխին, որպէս տեսցի 'ի պատկերիս որ զկնի։

## ԳԼՈՒԽ Ժ.

*Թէ ո՞րն 'ի թէութեանց աստի ընդհանուր յուսոյ պատշաճի մասնաւորաց։*

---

Որպէս յայտ է, զյոյս բաժանեցաք 'ի վեր անդր 'ի բնական, 'ի բարոյական և 'ի քաղա-

քական ։ Արդ համակրութիւն է թէութիւն քաղաքական յուսոյ ․ զի մինչեւ ոչ գտցուք համակիրս մեզ , ոչ կարեմք յուսալ պատիւ և պաշտօն , ինչս և օգնութիւն ։ Ոչ ոք կամի տալ ինչ կամ առնել իւրում հակակրին , այլ խնդրէ զիւր համակիր , վասն որոյ առակ է թէ Լաւ է քարինս կրել ընդ իւրում համակրի , քան 'ի փառս վայելել ընդ հակակրի իւրում ։ Ապա չէ պարտ յուսալ բարիս 'ի հակակրէ , և եթէ ոքյուսացէ ևս , յոյս նորա ոչ է աներկեւան ըստ չափոյն , այլ յողդողդուն և կասկածելի ։

Աստի ուսանիմք քննել և գիտել թէ ում ծառայեմք և վասն էր , և ապա յուսալ եթէ պատիւ , եթէ գործս , և եթէ այլ ինչ օգտակար մեզ ։ Նա որում ծառայեմք , եթէ չիցէ մեզ համակիր , եթէ զանձն մեր 'ի մահ ևս մատնիցեմք վասն նորա , չկարեմք շահել զնա , և չօգտիմք ինչ , թէպէտև անձն այն յորմէ յուսամքն՝ իցէ հայր կամ մայր , եղբայր կամ քոյր , որդի կամ կին , բարեկամ կամ ընկեր ։ Ի գտանել մեզ զհամակիր մեր , իսկոյն յոյս մեր լինի աներկեւան ըստ չափոյն ։ Տես և զոր վասն համակրութեան ասացաք այլուր ։



# ԳԼՈՒԽ ԺԱ.

*Թէ զինչ իցէ թէութիւն բնական յուսոյ։*

---

Վասն թէութեան քաղաքական յուսոյ, այն է՝ ընկերական կեանս կամ 'ի կենակցութեան, ասացաք թէ է համակրութիւն մարդկան։ Այժմ կայ մեզ առաջի ասել թէ զի՞նչ է թէութիւն բնական յուսոյ, այն է՝ երբ կամ վասն էր կարեմք յուսալ ինչ 'ի բնութենէ յիրս որոց ծնունդ կամ արդիւնք բնական կարգի են։

Արդ թէութիւն բնական յուսոյ է յարմարութիւն երկրին։ Արդէն վերադոյնն ասացաք թէ յարմարութիւն երկրին ըստ օդոյ, ըստ դրից գետնոյն, ըստ հողմոց, ըստ կազմութեան հողոյն և այլոց, ունի ազդեցութիւն եթէ ոչ բացարձակ, գէթ մեծ յոյժ 'ի վերայ ամենայնի, մանաւանդ 'ի բնականս։ Ամենայն երկիր ունի զիւր բերս կամ արդիւնս, եթէ զանշունչս, եթէ զզգայունս և եթէ զբանաւորս։ Զոր օրինակ՝ ոչ ամենայն հող զնոյն մետաղս, զհանածոյս, զնոյն բոյսս, զնոյն անասունս, նա մանաւանդ զնոյն ցեղ կամ օրինակ մարդկան յառաջ բերէ։ Եթէ զայսր երկրի բոյսս կամ զանասունս կամիցի ոք յառաջ բերել յայլում երկրի որոյ յարմարութիւնն առ այն բոյս կամ կենդանի չունի յարմարութիւն՝ բազում անգամ ոչ յաջողի. եթէ յաջողեսցի ևս, բազում

աշխատութիւնք և ծախք և արուեստ պիտին. դարձեալ չլինի ուժեղ և արգասաւոր իբրեւ զայն զոր երկիր յարմարագոյն 'ի բնէ բերէ յառաջ. Ո՞ իցէ որ կարիցէ ակն ունել բուսուցանելոյ 'ի Հիւսիսային կողմանս երկրի ձիթենի և արմաւ և նարինջ և նուռն և զայլ բազում ազգս տնկոց և արմատոց որ 'ի Հարաւային աշխարհս բուսանին. Նոյն բանք են և զկենդանեաց, նաեւ զմարդոյ. Չէ հնար 'ի յարմարութենէ երկրին Ափրիկէի յուսալ 'ի բնէ մարդ սպիտակ, բայց եթէ 'ի խառնելոյ ընդ սպիտակ սերնդոյ. և ոչ 'ի յարմարութենէ Եւրոպիոյ յուսալ 'ի բնէ ծնունդ սեաւ, եթէ ոչ 'ի խառնածին ամուսնութենէ սպիտակի ընդ սեւոյ.

Ցայսմ ամենայնէ յայտ է թէ ամենայն ինչ բնական փոփոխի ըստ տեսակին և ըստ որպիսութեանց իւրոց բնականաց ըստ զանազանութեան տեղւոյն և կլիմային. և այնպէս լինի լաւ կամ վատթար, չահաւէտ կամ անպիտան, առատ կամ սակաւ. Վասն որոյ պարտ է մեզ ամենեցուն զի զոր ինչ յուսամքն 'ի բնութենէ՝ ունիցի պատշաճութիւն կամ աղերս միաբանութեան ընդ յարմարութեան երկրին. և զայս թէութիւն պարտիմք որոնել և ճանաչել, ապա թէ ոչ յոյս մեր՝ ոչ լիցի աներկեւան ըստ չափոյն. Եթէ չգտանեմք զյարմարութիւն երկրին, չէ արժան 'ի բնութենէ ևս յուսալ բա-

րիս կամ արդիւնս . քանզի ջեռմարան ամենայն բնական արդեանց է երկիր , ընդ որոյ յարմարութեանն կից է ծնունդ և սերունդ և զարգացումն իրաց բնականաց .

## ԳԼՈՒԽ ԺԲ.

*Թէ զինչ իցէ թէութիւն բարոյական յուսոյ :*

Թէութիւն բարոյական յուսոյ է հոլովումն ժամանակաց քանզի 'ի հոլովմանէ ժամանակաց բազում ինչ գործի եթէ յերկրի և եթէ յօդս վերինս . Ուստի և 'ի ճանաչել մեր հաւաստեաւ զհոլովումն ժամանակաց` 'ի բազում ինչ իրս որ բնական են` յոյս մեր ոչ լինիցի սնոտի և յողդողդ : Այլ պարտ է մեզ հմուտ լինել հաւաստեաւ իրաց եղելոց և պէսպէս հանգամանաց նոցին , զոր օրինակ թէ յորում ամի կամ յամսեան կամ 'ի տեղւոջ , կամ որով չափով լեալ և դիպեալ իցեն : Եւ վասն այսորիկ արժան է մեզ գիտել զտիրող աստեղս և զհամաստեղութիւնս տարւոյ , և զկէտ մոլորակաց ըստ հաշուի և համարոյ ճշմարիտ աստեղագիտութեան : Քանզի բազում դէպք բնականք պատահին յազդեցութենէ լուսաւորաց , և ազդեցութիւն նոցա է ըստ դրից և համե-

մասնութեան նոցա հանդիպելոյ ընդ միմեանս և ընդ երկրի. որպէս զի հանապազ 'ի նոյն դիրս և 'ի համեմատութեան հանապազ նոյն իրք նովին օրինակաւ պատահին։ Եթէ արեգակն և լուսինն յայլ և այլ դիրս և 'ի համեմատութիւնս իւրեանց ընդ երկրի նովին օրինակաւ միշտ փոփոխեն զազդեցութիւն իւրեանց, զորոց զհետ գան տիւ և գիշեր, ամառն և ձմեռն, այլովքն հանդերձ, և այլ ևս ազգի ազգի փոփոխմունք և երեւոյթք յօդս, որք և ճշդիւ գուշակին, մանաւանդ թէ գիտին յաստեղագիտաց և յայնցանէ որ միտ դնեն օդերեւութից, զինչ զարմանք են եթէ եւ այլք եւս յաստեղաց, մանաւանդ 'ի մոլորակաց ունիցին նոցին նման ազդեցութիւնս 'ի վերայ երկրի ուղղակի կամ անուղղակի 'ի ձեռն մերձաւոր աստեղաց իւրեանց։ Ոչ է ճշմարիտ կարծիք նոցա որ համարին թէ ոչ ինչ ազդեցութիւն գործի 'ի մոլորակի. աստ մերում յերկնային մարմնոց, բաց 'ի սակաւ լուսոյ և 'ի ջերմութենէ։

Ամենեցուն յայտ է թէ 'ի հոլովմանէ ժամանակաց որչափ փոփոխմունք լինին յերկրագնդի աստ. երկիր բարձրացեալ՝ լինի լեառն, կամ խոռոջացեալ բանայ վիհս մեծամեծս. գետք փոխեն զընթացս իւրեանց, ծով զեղեալ ողողէ զցամաք, և հրաբուխք երեւին։ Ի հոլովմանէ ժամանակաց լինի և փոփոխումն 'ի տունկս և

յանապատունս և 'ի մենաւորս եթէ ըստ անձման և եթէ ըստ նուաղութեան և ըստ այլոց հանգամանաց նոցա։ Մեզ չէ մարթ զամենայնի զպատճառս ճշդիւ գիտել, այլ կարող եմք ոչ սակաւ ինչ իրաց տեղեկանալ եթէ միտ դնիցեմք, զի փորձ և հաշիւ և ուղիղ տրամաբանութիւն բազում ինչ ցուցանեն մեզ հաւաստեաւ. զոր օրինակ զխաւարումն արեգական և լուսնոյ, զշրջանս մոլորակաց և գիսաւորաց, զորոց ռամիկք և տգէտք այլազգ կարծիս ունէին և ունին։ Ո՞ իշխիցէ ասել թէ չեն յազդեցութենէ երկնային մարմնոց պէս պէս հիւանդութիւնք, մանաւանդ մահք տարաժամք կամ ախտք համատարածք զորս տարափոխիկս կոչել սովոր եմք. այսպիսի անհարթութիւնք գործին 'ի հեռաւոր ինչ ազդեցութենէ աստեղաց, և որ զառաջինն չէր տարափոխիկ՝ յետոյ լինի նոյնպիսի։

Ապա չէ պարտ արհամարհել և լքանել զքննութիւնս աստեղագիտականս, որպէս առնեն բազումք որ սնապաշտութիւն և յիմարութիւն իմն համարին զգուշակութիւնս եթէ հնոց և եթէ նորոց որ զբազում իրաց պատճառս դնեն յազդեցութենէ լուսաւորաց։ Բանք մեր չեն զայնպիսի գուշակութեանց որ քաղդէութիւն կամ աստեղաբաշխութիւն կոչի, ըստ որում առ հինս ոմանք սովոր էին զկենդանակերպս համարել պատճառ բազում դիպուածոց, ըստ անուան նոցա տալով նոցա պաշտօն, զորօրինակ՝

առիւծ կենդանակերպի՝ զօրութիւն, կարճի՝ զվնասակարութիւն, խոյի՝ զմեծութիւն, և այլոց եւս սոցին նման. այլ մեք խօսիմք զբուն աստեղագիտութենէ որ 'ի ձեռն թուոց և չափաբերական արուեստի, քննութեան, փորձոյ և դիտողութեան ջանայ գտանել և գտեալ իսկ է, որպէս ասացաք զպատճառս բնական երևութից.

Ապա նոքա որ յուսան ինչ 'ի բնական իրաց, որպէս 'ի պտղաբերութենէ երկրի, 'ի մշակութենէ; 'ի ծովագնացութենէ և յայլոց այսպիսեաց, պարտին հմուտ լինել ազդեցութեան բնական պատճառաց յորոց կարգի են և լուսաւորք. ապա թէ ոչ ձեռնարկութիւն նոցա բազում անգամ 'ի դերև ելանեն. քանզի սերմանեն ուր և յորժամ չէ պարտ սերմանել, կամ ո՛չ սերմանեն ուր և յորժամ սերմանելն պարտ էր։ Յուսան առողջութիւն, առատութիւն և բազմածնութիւն անդ և յայնժամ՝ ուր և յորժամ պարտ էր մանաւանդ հիւանդութեան կամ կոտորածի, նուազութեան և ամլութեան ակն ունել և ակն ունելով՝ յառաջագոյն պատրաստ գտանել և զդարմանն որոնել։ Գլխաւորեսցուք զբանս մեր ասելով թէ զդիտութենէ հոլովման ժամանակաց կախեալ կայ, դէթ 'ի բնականս, աներկեւանութիւն յուսոյ մերոյ.



# ԳԼՈՒԽ ԺԳ.

*Եզրակացութիւն թէութեանց ընդհանուր յուսոյ։*

---

*Յառաջելոց անտի 'ի վեր անդր՝ յայտ եղև թէ զի՞նչ իցեն թէութիւնք ընդհանուր յուսոյ. այլ աստ 'ի դիւրութիւն ուսանողաց համառօտելով ասասցուք.*

*Թէութիւնք ընդհանուր յուսոյ են համակրութիւն ըստ իրին, յարմարութիւն երկրի ըստ գործոյն, հոլովումն ժամանակաց ըստ քանակութեան։ Այլ համակրութիւն է թէութիւն այնր յուսոյ զոր ընդունիմք 'ի քաղաքական հաւատոց, այն է 'ի վստահութենէ։ Յարմարութիւն երկրի է թէութիւն այնր յուսոյ զոր ընդունիմք 'ի բնական հաւատոց. իսկ հոլովումն ժամանակաց է թէութիւն այնր յուսոյ զոր ընդունիմք 'ի վերացեալ հաւատոց։ Համակրութիւնն է յիրս, յարմարութիւն երկրին 'ի գործս և հոլովումն ժամանակաց 'ի քանակութեան։*

*Յիրս՝ պարտ է մեզ համակրութիւն, կամ գտանել համակիրս. 'ի գործս՝ արժան է մեզ որոնել զյարմարութիւն երկրի. իսկ 'ի չափս իրաց և գործոց պիտոյ է մեզ գիտել զհոլովումն ժամանակաց։ Եթէ յոյս մեր ոչ լիցի ըստ այսմ օրինակի, ոչ լիցի աներկեւան ըստ չափոյն.*



# ԳԼՈՒԽ ԺԴ.

## Յաղագս թէութեանց ընդհանուր սիրոյ։

Թէութիւնք ընդհանուր սիրոյ են երեքկին. արդարութիւն հանդերձ շնորհօք, սըրբութիւն հանդերձ բարեխառնութեամբ, և ճշմարտութիւն հանդերձ հաստատութեամբ և միշտ։ Եթէ չեմք արդարք հանդերձ շնորհիւ, ոչ սուրբք հանդերձ բարեխառնութեամբ, և ոչ ճշմարիտք հանդերձ հաստատութեամբ, սէր մեր չէ կատարեալ ՚ի բարին։ Ի պակասել այսոցիկ, կարէ լինել տակաւին սէր, այլ այն ոչ է սէր յօգուտ ընկերին և յառաջ եկեալ յաստուածսիրութենէ և յանձնուրացութենէ, այլ լոկ զգայական ախորժակ զոր և անշունչ իրք և անասունք եւս ունին։ Քանզի, որպէս յառաջագոյն ասացաւ, անշունչքն և անբանք եւս սիրեն զցանկալին և զախորժելին իւրեանց, այլ վասն յագեցուցանելոյ զախորժակս իւրեանց. այսպէս սիրելով նոքա կամին զիւրեանց բարիս մանաւանդ քան զայնոցիկ զորս սիրեն։ Այսպիսի զգայական սէր է մանաւանդ անիրաւութեամբ և կողոպտելով քան արդարութեամբ և շնորհօք. աղտեղութեամբ է և պղծութեամբ քան սրբութեամբ և բարեխառնութեամբ, ոչ է ճշմարտութեամբ և

միշտ հաստատուն և մնայուն, այլ ստութեամբ, կեղծեօք, յողդողդուն և առժամանակեայ : Այսպիսի սէր որ է զգայականաց և զգայասէր մարդոց՝ ոչ է բուն սէր որ պարտի լինել կատարեալ 'ի բարին :

## ԳԼՈՒԽ ԺԵ.

*Յաղագս արդարութեան :*

Արդարութիւնն է. ուղղութիւն մտաց և պատրաստութիւն կամաց որով ոք 'ի ճանաչելն զիրաւունս ուրուք հաւանի այնմ գործնականապէս : Արդարն ոչ կամի զայլոց իրաւունս յինքն յափշտակել և բռնաբարել, և ոչ առնու յանձն զի և այլք զիւր իրաւունս յափշտակեալ բռնաբարիցեն : Դարձեալ՝ արդարն ոչ կամի զի և այլք զայլոց իրաւունս զրկիցեն : Միշտ և հանապազ ունի 'ի ձեռին իւրում կշիռ հաւասար, և կամի առնել միշտ զարդարութիւն : Զարդարութիւնն պարտ է մեզ յերիս դէպս մանաւանդ 'ի կիր արկանել, 'ի դատելն, 'ի կշռելն և յառնել մերում գործ ինչ :

# ԳԼՈՒԽ ԺԶ․

*Ցաղագս թէ քանի ազգք են արդարութեան, եւ քանի օրինակաւ գործի արդարութիւն ։*

---

*Արդարութիւն բաժանի յերկուս․ Արդարութիւն ըստ թուոյ կամ թուական, և՝ Արդարութիւն ըստ չափոյ կամ տրամաբաշխական ։ Թուաբանական արդարութիւն այն է զի հաւասարապէս բաժանեմք կամ առնեմք զոր ինչ առնեմքն առ ամենեսեան ։ Ըստ տրամաբաշխական արդարութեան առնեմք կամ տամք ոչ ամենեցուն հաւասար, այլ իւրաքանչիւր ըստ արժանեաց և ըստ կարեաց ։*

*Արդարութիւն երիւք օրինակօք գործի, մտօք, կամօք և արդեամբք ։*

*Արդարութիւն մտօք այն է զի խնդրեսցուք ամենայն փութով և զգուշութեամբ, զամենայն հնարս ’ի կիր արկեալ, քննել, ’ի վերայ հասանել և ստուգել զիրաւունս այլոց ’ի դատել մերում զնոսա, մանաւանդ եթէ իբրեւ դատաւոր ’ի պաշտօնէ դատիմք զոք ։ Այլ զի մի՛ խաբիցիմք ’ի դատաստանի մերում, պարտ է լինել տեղեակ այլ և այլ հնարից, զննութեանց և քննութեանց որովք դատաւորք անաչառք սովոր են վարել, յորժամ ունին ’ի վեր հանել զիրաւունս ուրուք կամ զանիրաւութիւն հա-*

կառավարողին . զճշմարտութիւն միոյն և զսըր֊
տութիւն կամ զխաբէութիւն միւսոյն , մերթ
տալով խօսել զնոսա երես առ երես , մերթ ա֊
ռանձին առանձին , խնդրելով վկայս և ստու֊
գելով զաստիճան ուղղութեան վկայութեան և
ճշմարտախօսութեան նոցա ։ Առ այս պիտոյ է
հմտութիւն և փորձ , մանաւանդ գիտութիւն և
մտադրութիւն ուղիղ կանոնաց տրամաբանու֊
թեան ։ Որ միանգամ անգէտ են օրինաց դա֊
տաստանի և քննութեան 'ի ստուգել զապա֊
ցոյցս և զվկայութիւնս , լաւ է նոցա բնաւ չմը֊
խել զանձինս յայնպիսի ծանր և 'ի փափուկ
պաշտօն , զի հետեւութիւն անիրաւ ինչ դա֊
տաստանի չէ թեթեւ ինչ , այլ կախեալ կայ
բազում անգամ զանիրաւութենէ վճռոյ կոր֊
ծանումն և աւեր անհատից , նաեւ ամբողջ
գերդաստանաց , և պատասխանատուութիւն
ահաւոր կայ մնայ առաջի անաչառ ատենի ա֊
մենակալին , յորոյ արդարութենէ դողան եր֊
կինք և երկիր ։

Ոչ մտօք միայն , այլ և կամօք պարտ է լի֊
նել արդար , այն է՝ կամել զի ամենեցուն լիցի
արդարութիւն ։ կամ պարտ է լինել պատրաստ
և յօժար զի եթէ իցէ 'ի կարի մերում և կախ֊
եալ կայցէ զմէնջ , արասցուք իրաւունս ընկե֊
րին , և տրտմեսցուք և զայրասցուք 'ի տեսա֊
նել զի զրկին անմեղք , և եթէ հնար ինչ իցէ ,
արգել լիցուք ամենայն զրկանաց ։ Իսկ գործողն

արդար լինել է չզրկել զոք արդեամբք, և ոչ հայել յօգուտ մեր, այլ 'ի կատարումն արդարութեան. զի չէ օգուտ այն զոր անիրաւելով այլոց և զրկելով զանմեղն յիրաւանց իւրոց՝ կարեմք հայթայթել մեզ.

Այնպէս ընդհանուր է գործ արդարութեան, զի չիք ոք որում ոչ պատշաճիցին պարտք արդարութեան, եթէ թագաւոր իցէ և եթէ հպատակ, եթէ աշխարհական և եթէ եկեղեցական, եթէ այր և եթէ կին, եթէ մեծատուն և եթէ աղքատ, եթէ տէր և եթէ ծառայ, այլովքն հանդերձ. ամենայն ոք ունի ինչ պարտս 'ի հատուցանել, զոր եթէ ըստ իրաւանց կատարիցէ, առնէ զարդարութիւն, ապա թէ ոչ զրկէ և լինի ապիրատ։ Արդարութիւնն պարտի լինել և շնորհօք ըստ անձին, ըստ տեղւոյն և ըստ ժամանակին։



## ԳԼՈՒԽ ԺԷ·

*Յաղագս թէութեան սիրոյ որ 'ի յուսոյ քաղաքական հաւատոց։*

---

Թէութիւն սիրոյ զոր ստանայ ոք 'ի յուսոյ քաղաքական հաւատոց՝ է արդարութիւնն հանդերձ շնորհիւ. Ի քաղաքականութեան ամենայն ինչ և ամենայն գործ կախեալ կայ զար-

դարութենէ։ Ի պակասել արդարութեան ’ի քաղաքականութեան կամ յընկերութեան, ամենայն ինչ խանգարի, և ոչինչ կայ ’ի կայի և ’ի հաստատութեան. ամենայն կարգք, կառավարութիւն, վաճառականութիւն, ընկերութիւն, դաշինք, և ամենայն յարաբերութիւնք եղծանին և լինին յոչինչ։

Արդարութիւն հանդերձ շնորհիւ ծնուցանէ զքաղաքական սէր, այսինքն՝ զսէր որ յառաջ գայ ’ի յուսոյ ծագելոյ ’ի վստահութենէ։ Քանզի նա որ արդար է հանդերձ շնորհիւ՝ և սիրէ զարդարութիւն, սիրի ’ի քաղաքականութեան, զի ստանայ զվստահութիւն, և պատուի ևս յամենեցունց և լինի հաճոյ նոցա։ Ոչ ապաքէն ’ի պակասութենէ արդարութեան, կամ մանաւանդ յանիրաւութենէ և ’ի զրկանաց զոր առնէ ոք՝ լինի կասկածելի, արկանի ’ի բանտ, աքսորի, պատուհասի, և զայլ ևս բազում չարիս կրէ։ Եւ եթէ առ բռնութեան կամ մեծութեան և կամ իշխանութեան թուիցի լինել ’ի յաջողութեան, ամենեքին ատեն զնա և սպասեն պատեհ առթի կործանելոյ զնա և ջախջախելոյ, և լինի իսկ այնպէս բազում անգամ։

Այլ մեզ պարտ է ևս առնել զարդարութիւն, ոչ միայն ’ի ստանալ զվստահութիւն և զսէր մարդկան, այլ մանաւանդ ’ի սէր Աստուծոյ, զի նա իսկ է արդարութիւն։ Ի սիրել մեր

զարդարութիւն, սիրեմք զնոյն ինքն զԱստուած. այլ զիարդ հնար է մեզ սիրել զարդարութիւն, եթէ չեմք արդար առ ընկերս. զի յարդարութենէ և 'ի սիրոյ անտի որ առ ընկերս՝ երեւի արդարութիւն և սէր մեր առ Աստուած. վասնորոյ ասացեալ է յաստուածեղէն գիրս թէ Որ սիրէ զարդարութիւն՝ արդար է, որպէս և Աստուած արդար է. և թէ՝ Եթէ ոք ասիցէ թէ սիրեմ զԱստուած և զեղբայր իւր ատիցէ, սուտ է։



## ԳԼՈՒԽ ԺԲ.

*Յաղագս սրբութեան որ է թէութիւն բնական սիրոյ, եւ թէ զիարդ բաժանի սրբութիւն։*



Զսուրբն և զսրբութիւն չկարեմք 'ի գոյութենէ նոցա, այլ 'ի բանից յիրաց և 'ի գործոց սահմանել։ Արդ սրբութիւն է ամբծութիւն, մաքրութիւն, անխառնութիւն և պարզութիւն 'ի բանս, յիրս և 'ի գործս. և սուրբ այն է որ զյատկութիւնսն զայնոսիկ ստացեալ ունի։ Այն ինչ որ կայ և մնայ այնպէս որպէս էրն 'ի բնէ՝ սուրբ ասի, որպէս գինի յոր չիցէ խառնեալ ջուր կամ այլ ինչ նիւթ, անապակ կոչի որ է սուրբ. այսպէս որ և իցէ բնութիւն յորոյ 'ի

զանգուածն չիցէ խառնեալ օտար ինչ՝ սուրբ և անխառն է։ Բայց մարթ է լինել զի որ յինքեան անխառն է ուստի և սուրբ, ըստ նշանակութեանն զոր առաք, չիցէ սուրբ առ այլս. ուստի սրբութիւն բաժանի յերկուս, Անձնական և ընկերական։ Ըստ անձին կամ յինքեան սուրբ է որ չէ խառնեալ օտար իւիք. առ այլս կամ առ ընկերն սուրբ այն է որ ոչինչ վնասակար կամ աղտեղի գործեալ է յայլս։ Իսկ որ յերկոսին ևս սուրբ է, նա ունի զկատարեալ սրբութիւն և է կատարեալ սուրբ։ Պարտ է գիտել զի 'ի բարոյական կարգի սրբութեան, երկոքին ևս պահանջին, սրբութիւն յանձին և սրբութիւն առ ընկերն. 'ի բնականս սրբութիւն յինքեան որ է անխառնութիւն կամ հարազատութիւն՝ շատ և բաւական է. 'ի քաղաքականս՝ առհասարակ պահանջի սրբութիւն առ ընկերն որ է անվնասակարութիւն. իսկ 'ի բարոյականս, որպէս ասացաք, երկոքին ևս պիտին. և այս է կրօնական սրբութիւն, զ… Աստուած
որ հեղինակն է կրօնից՝ զկատարեա… թիւն
կամի և պահանջէ։

Ի բանաւորս սրբութիւնն ըս…
ըստ սրտի, ըստ բանից և ըս…
սուրբն է ըստ սրտի, չկամի …
ցանկայ որում չէ պարտ ցա…
վասն իւր կամի՝ զնոյն տեն…
թիւնն ըստ բանից է չհ…

րակորով, ճշմարտութիւնն ոչ կայանայ 'ի վկայութեան անդ, այլ պարտ է յանձին իսկ նորա տեսանել և ստուգել զլաւութիւն և զարդարութիւն նորա: վասն այսորիկ ասացաք թէ յառարկայէ անտի միայն ճանաչի ճշմարտութիւն, և ոչ յինքենէ զի չէ գոյութիւն ինչ:

Ճշմարտութիւն է անբաժանելի, այլ 'ի գործոց, յիրաց և 'ի բանից որ 'առարկայ են ճշմարտութեան՝ բաժանի յերկուս. յընդհանուր և 'ի Մասնաւոր. զոր օրինակ ոմն ասէ. Տիւ է և առաւօտ. այլ ոք ասէ. Տիւ է այլ ոչ առաւօտ, զի ստուեր տնկոց երևի յարևելս: Առաջինն խօսեցաւ մասնաւորապէս ճշմարիտ. երկրորդն խօսեցաւ համօրէն ճշմարիտ: Մասնաւորապէս ճշմարիտ խօսին նոքա որք մերթ ճշմարիտ խօսին, մերթ սուտ, կամ բանք նոցա ըստ մասին ճշմարիտ են և ըստ մասին սուտ:

Ճշմարտութիւն բաժանի դարձեալ յերիս. 'ի բնական, 'ի բարոյական և 'ի քաղաքական. զոր օրինակ՝ Արեգակն է լուսաւոր և անանկիւն. Հուր ջերմէ. սոքա են բնական ճշմարտութիւնք: Ի վեցերորդումն Յունուարի է ծնունդ Տեառն. Ուրբաթք պահք են. սոքա են բարոյական ճշմարտութիւնք: Այգիս այս Մանուէլի է. Տունդ է Յովհաննու. սոքա են քաղաքական ճշմարտութիւնք:

Դարձեալ ճշմարտութիւն 'ի մեզ 'ի բանա‿

ւորս՝ երիւք պարտի երեւել. հոգւով, մտօք և կամօք. քանզի ասացաւ թէ հոգին է գոյութիւն, միտքն է զօրութիւն, կամքն է ներգործութիւն։ Ապա պարտ է երեքումբք ևս լինել ճշմարիտ, այն է՝ հոգւով, մտօք և կամօք. զի հոգին է պատճառ մտաց, և միտք կամաց։ Եթէ ոչ իցեմք հոգւով ճշմարիտ, միտք մեր ոչ կարեն լինել ճշմարիտ, և ճանաչել և որոշել զճշմարտութիւն. և եթէ միտք մեր ոչ ճանաչեն զճշմարտութիւն, կամք մեր ոչ կարեն լինել բարի, չահաւէտ և հաստատուն։ Ի լինել հոգւոյն ճշմարիտ՝ միտք ևս լինին ճշմարիտ. և 'ի լինել մտաց ճշմարիտ՝ կամք ևս լինին ճշմարիտ։ Ի լինել կամաց մերոց ճշմարիտ՝ միշտ զբարիս կամիմք ընկերաց մերոց, որպէս անձին մերում. և եթէ չունիցիմք զայսպիսի կամս, յայտ է թէ միտք և հոգի մեր ևս չեն ճշմարիտ։ Զի ; որպէս այլուր ասացաք, զամենայն իմանալի գոյութիւն 'ի ներգործութենէ իւրմէ ճանաչեմք, որոշեմք և գիտեմք։ Եւ Տէրն ասաց յԱւետարանի թէ Ամենայն ծառ 'ի պտղոյ իւրմէ ճանաչի։ Ճըշմարիտն լինել հոգւոյ, մտաց և կամաց մերոց ճանաչի 'ի բարութենէ կամաց մերոց։



# ԳԼՈՒԽ ԻԱ.

*Յաղագս թէութեան սիրոյ որ յիմացական կամ ՚ի բարոյական հաւատոց։*

---

Եթէ կամիմք զի Աստուած և արք աստուածապաշտք սիրիցեն զմեզ բարոյական սիրով, պարտ է մեզ գիտել զթէութիւն այնր սիրոյ, և նովին թէութեամբ վարել առաջի Աստուծոյ և մարդկան։ Եւ զի թէութիւն բարոյական հասարակ սիրոյ է ճշմարտութիւն, պարտ է մեզ յամենայնի լինել ճշմարիտ։ Ոչ ոք սիրէ երբէք զստութիւն, և ոչ հնար է մեզ խաբել ընդ երկար զայլս. նաև ոչ զանձինս։ Ապա պարտ է գնալ միշտ և հանապազ ճշմարտութեամբ. յայս և ՚ի սոյն հայի բան Յովհաննու թէ Պարտ է հոգւով և ճշմարտութեամբ երկիր պագանել Աստուծոյ. այն է՝ գնալ առաջի Աստուծոյ ճշմարտութեամբ և լինել ճշմարիտ առ մարդիկ և առ անձինս։ Ի զուր է ասել թէ եմք ժիրք և համեստք, խոհեմք և պարկեշտք, և զամենայն ինչ խոհեմութեամբ առնեմք. և թէ՝ եմք արի հանդերձ խոնարհութեամբ, և առնեմք զամենայն գործս մեր արիութեամբ, և թէ՝ այս ինչ ոք համակիր է ընդ մեզ այսու կամ այնու, և թէ՝ գտաք զյարմարութիւն երկրի ըստ գործոց մերոց, և

թէ՝ ծանեաք և որոշեցաք զհոլովումն ժամանակաց հանդերձ քանակութեամբ, և թէ՝ եմք յամենայն գործս մեր արդարք հանդերձ շնորհօք, և ունեմք զամենայն գործս մեր արդարութեամբ և շնորհօք. և թէ՝ սուրբ եմք հանդերձ բարեխառնութեամբ՝ սրտիւ, բանիւ և գործով յամենայն աւուրս մեր. 'ի զուր է զայս ամենայն պնդել, եթէ չիցեմք արդարեւ նոյնպիսիք։ Ճշմարտութիւն է որ առնէ զմեզ արդեամբ այնպիսիս, և յարդարէ զմեզ սիրելիս առ ամենայն մարդիկ ևս և առաջի Աստուծոյ։ Ապա ամենայն առաքինութիւնք և բարիք կախեալ կան զճշմարտութենէ, որպէս համօրէն բնութիւն կախեալ կայ զԱստուծոյ իբրեւ զառաջնոյ պատճառէ։

Արդարեւ ճշմարտութիւն ոչ է ինքնին առաքինութիւն, այլ է հաստատիչ և պահպանիչ ամենայն առաքինութեանց և բարեգործութեանց. որպէս խոհեմութիւնն չէ ինքնին առաքինութիւն, այլ ծնող ամենայն առաքինութեանց։ Համառօտ իսկ ասել՝ ճշմարտութիւն է թագաւոր անյաղթ յաշխարհի աստ և 'ի հանդերձելումն. վասն այնորիկ եդաւ 'ի կատարածի ամենայն թէութեանց և առաքինութեանց, զի 'ի նմա առնուն լրումն և եզր ամենայն առաքինութիւնք։



# ԳԼՈՒԽ ԻԲ.

*Յաղագս չարազուգութեան եւ տարազուգութեան ինն թէութեանց ընդհանուր հաւատոյ, յուսոյ եւ սիրոյ։*

---

Որպէս տեսանի ՚ի ցուցակի անդ՝ ՚ի ներքոյ ժրութեան որ է առաջին թէութիւն ընդհանուր հաւատոյ՝ եդեալ է թուանշանն 3. ՚ի ներքոյ խոհեմութեան որ է երկրորդ թէութիւն ընդհանուր հաւատոյ՝ եդեալ է թուանշանն 2. և ՚ի ներքոյ արութեան որ է երրորդ թէութիւն ընդհանուր հաւատոյ՝ եդեալ է թուանշանն 1։ ի ներքոյ թէութեանց ընդհանուր յուսոյ որ են համակրութիւն մարդոց, յարմարութիւն երկրի և հոլովումն ժամանակաց՝ նոյնպէս եդեալ են նոյն երեքին թուանշանք 3, 2, 1. նոյնպէս է և ՚ի ներքոյ թէութեանց ընդհանուր սիրոյ, այսինքն՝ եդեալ են թուանշանքս 3, 2, 1, ՚ի ներքոյ արդարութեան, սրբութեան և ճշմարտութեան։

Արդ երեքին կարգք թուանշանացս 1 2 3, 1 2 3, 1 2 3. որ առանձին առանձին ընծայեցուցանեն զերեսին թէութիւնս հաւատոյ, յուսոյ և սիրոյ՝ են չարազոյգք ընդ միմեանս. այսինքն՝ Արիութիւն, խոհեմութիւն, ժրութիւն՝ են չարազոյգ ընդ միմեանս. չարազոյգ

են ընդ միմեանս նաեւ Հոլովումն ժամանակաց յարմարութիւն երկրին, համակրութիւն մարդկան. նոյնպէս շարազոյգ են՝ ճշմարտութիւն, սրբութիւն և արդարութիւն։

Բայց 'ի շարել մեր կարգաւ զերիս երրեակս միանգամայն 'ի մի կարգ, այսպէս՝ 123123123, յայնժամ լինին ընդ միմեանս տարազոյգ նոյնանշան թուանշանքն, այսինքն՝ երեքին 3 թուանշանք, երեքին 2 թուանշանք և երեքին 1 թուանշանք։ Եւ ըստ այսմ տարազոյգ լինին թէութիւնքն որ ունին 'ի ներքոյ զթուանշանն 3, այն է՝ ժրութիւնն, համակրութիւն մարդոց և արդարութիւն. որք են երեք թէութիւնք՝ առաջինն քաղաքական հաւատոյ, երկրորդն քաղաքական յուսոյ, երրորդն քաղաքական սիրոյ. նոյնպէս տարազոյգ են թէութիւնք որ ունին զթուանշանն 2, այն է՝ խոհեմութիւն, յարմարութիւն երկրի, սրբութիւն. որք են երեք թէութիւնք, առաջինն բնական հաւատոյ, երկրորդն բնական յուսոյ և երրորդն բնական սիրոյ. նոյնպէս տարազոյգ են թէութիւնքն որ ունին զթուանշանն 1 այն է Արիութիւն, հոլովումն ժամանակաց և ճշմարտութիւն. երեք թէութիւնք՝ առաջինն իմացական կամ բարոյական հաւատոյ, երկրորդն իմացական յուսոյ, երրորդն իմացական սիրոյ։

Այսպէս 'ի հայել մերում 'ի ցուցակ անդր՝

տեսանեմք ըստ շարագրութեան զի 'ի լինել մերում ժիր՝ կարեմք լինել և խոհեմ. 'ի լինել մերում խոհեմ՝ լինիմք և արի. և այս 'ի մասին հաւատոյ։ Դարձեալ ըստ նմին սկզբան շարագրութեան՝ եթէ գիտեմք զհամակիրն ըստ իրին, կարեմք ճանաչել զյարմարութիւն երկրին. և եթէ ճանաչեմք զյարմարութիւն երկրին ըստ գործոյն, կարեմք որոշել զհոլովումն ժամանակաց. այն է՝ զանձն ըստ իրին (համակրութիւն մարդոյ), զտեղին ըստ գործոյն (յարմարութիւն երկրի) և զժամանակն ըստ քանակութեան (հոլովումն ժամանակաց). և այս 'ի մասին յուսոյ։ Նոյն բան է և զերրորդէն, այսինքն զսիրոյ. զի ըստ շարագրութեան՝ եթէ արդար եմք, կարեմք լինել սուրբ. և եթէ եմք սուրբք, կարեմք լինել ճշմարիտ յամենայնի և այս որպէս ասացաք, 'ի մասին սիրոյ։

Դարձեալ հայեցեալ 'ի ցուցակ անդր, տեսանեմք ևս ըստ տարագրութեան զի եթէ ունիմք ժրութիւն հանդերձ համեստութեամբ 'ի հաւատս, գտանեմք զհամակիրն մեր ըստ իրին 'ի յոյս. և եթէ գտանեմք զհամակիրն, լինիմք արդարք հանդերձ շնորհօք 'ի սէր. և այս 'ի քաղաքականին. Նոյնպէս 'ի բնականին ըստ տարագրութեան, եթէ ունիմք խոհեմութիւն 'ի հաւատս, կարեմք ճանաչել զյարմարութիւն երկրին 'ի յոյս. և եթէ ճանաչեմք

զյարմարութիւն երկրին, լինիմք սուրբ հանդերձ բարեխառնութեամբ 'ի սէր։ Նոյնպէս դարձեալ յիմացականին կամ 'ի բարոյականին, եթէ ունիմք արիութիւն 'ի հաւատս, կարեմք որոշել զհոլովումն ժամանակաց 'ի յոյս, և յորոշել մեր զհոլովումն ժամանակաց, լինիմք ճշմարիտք 'ի սէր։

Պարտ է գիտել զի առաջին տարազոյգքն 'ի ցուցակի, որ են թէութիւնք որոց թուանշան է 3, այսինքն՝ ժրութիւն, համակրութիւն և արդարութիւն, են յարդարողք 'ի քաղաքականս։

Երկրորդ տարազոյգքն որ են թէութիւնք որոց թուանշան է 2, այսինքն՝ խոհեմութիւն, յարմարութիւն երկրին և սրբութիւն, են մաքրիչք 'ի բնականս։

Երրորդ տարազոյգքն որ են թէութիւնք որոց թուանշան է 1, այսինքն՝ Արիութիւն հանդերձ խոնարհութեամբ, հոլովումն ժամանակաց ըստ քանակութեան և ճշմարտութիւն, են յաղթողք 'ի վերացեալն, այսինքն՝ յիմացականին և 'ի բարոյականի։

Խօսեսցուք սակաւուք և զներգործութենէ ինունց թէութեանցս։ Ժրութիւն հանդերձ համեստութեամբ, խոհեմութիւն հանդերձ պարկեշտութեամբ, և արիութիւն հանդերձ խոնարհութեամբ որ են շարազոյգ թէութիւնք հաւատոյ ընդ միմեանս՝ տան ստանալ զհար֊

զարդարութիւն, սիրեմք զնոյն ինքն զԱստուած. այլ զիարդ հնար է մեզ սիրել զարդարութիւն, եթէ չեմք արդար առ ընկերս. զի յարդարութենէ և 'ի սիրոյ անտի որ առ ընկերս՝ երևի արդարութիւն և սէր մեր առ Աստուած. վասնորոյ ասացեալ է յաստուածեղէն գիրս թէ Որ սիրէ զարդարութիւն՝ արդար է, որպէս և Աստուած արդար է. և թէ՝ Եթէ ոք ասիցէ թէ սիրեմ զԱստուած և զեղբայր իւր ատիցէ, սուտ է։



# ԳԼՈՒԽ ԺԲ.

*Յաղագս սրբութեան որ է թէութիւն բնական սիրոյ, եւ թէ զիարդ բաժանի սրբութիւն։*



Զսուրբն և զսրբութիւն չկարեմք 'ի գոյութենէ նոցա, այլ 'ի բանից յիրաց և 'ի գործոց սահմանել։ Արդ սրբութիւն է ամբծութիւն, մաքրութիւն, անխառնութիւն և պարզութիւն 'ի բանս, յիրս և 'ի գործս. և սուրբ այն է որ զյատկութիւնսն զայնոսիկ ստացեալ ունի։ Այն ինչ որ կայ և մնայ այնպէս որպէս էրն 'ի բնէ՝ սուրբ ասի, որպէս գինի յոր չիցէ խառնեալ ջուր կամ այլ ինչ նիւթ, անապակ կոչի որ է սուրբ. այսպէս որ և իցէ բնութիւն յորոյ 'ի

զանգուածն չիցէ խառնեալ օտար ինչ՝ սուրբ և անխառն է ։ Բայց մարթ է լինել զի որ յինքեան անխառն է ուստի և սուրբ , ըստ նշանակութեանն զոր առաք , չիցէ սուրբ առ այլս · ուստի սրբութիւն բաժանի յերկուս , Անձնական և Ընկերական ։ Ըստ անձին կամ յինքեան սուրբ է որ չէ խառնեալ օտար իւիք · առ այլս կամ առ ընկերն սուրբ այն է որ ոչինչ վնասակար կամ աղտեղի գործեալ է յայլս ։ Իսկ որ յերկոսին ևս սուրբ է , նա ունի զկատարեալ սրբութիւն և է կատարեալ սուրբ ։ Պարտ է գիտել զի 'ի բարոյական կարգի սրբութեան , երկոքին ևս պահանջին , սրբութիւն յանձին և սրբութիւն առ ընկերն · 'ի բնականս սրբութիւն յինքեան որ է անխառնութիւն կամ հարազատութիւն՝ շատ և բաւական է · 'ի քաղաքականս՝ առհասարակ պահանջի սրբութիւն առ ընկերն որ է անվնասակարութիւն · իսկ 'ի բարոյականս , որպէս ասացաք , երկոքին ևս պիտին · և այս է կրօնական սրբութիւն , զի Աստուած որ հեղինակն է կրօնից՝ զկատարեալ սրբութիւն կամի և պահանջէ ։

Ի բանաւորս սրբութիւնն ըստ երից նկատի , ըստ սրտի , ըստ բանից և ըստ գործոց ։ Որ սուրբն է ըստ սրտի , չկամի չար այլոց , և ոչ ցանկայ որում չէ պարտ ցանկալ · և զոր ինչ վասն իւր կամի՝ զնոյն տենչայ և այլոց ։ Սրբութիւնն ըստ բանից է չհայհոյել , չբամբասել ,

չթշնամանել, չխօսել սուտ, այլովքն հանդերձ, այլ զնոցին հակառակն գործել. օրհնել, գովել, և որ 'ի կարգին, նոյնպէս բարեխօսել զընկերէն առ մարդիկ և առ Աստուած։ Սրբութիւնն 'ի գործս է մաքրութիւն կամ բարեխառնութիւն. քանզի .'ի բնէ և 'ի սովորութենէ և 'ի բարոյից են իրք որ զազիր են և պիղծք յաչս Աստուծոյ և մարդկան։

## ԳԼՈՒԽ ԺԹ.

Ցաղագս թէութեան սիրոյ որ 'ի բնական հաւատոց։

Թէութիւն սիրոյ որ 'ի բնական հաւատոց՝ է սրբութիւն հանդերձ բարեխառնութեամբ։ Զսրբութենէ արդէն իսկ ճառեցաք. և գիտեմք թէ զինչ իցէ սրբութիւն սրտի, բանից և գործոց։ Ինքնին յայտ է թէ ամենայն ոք, թէպէտ և ինքն չիցէ սուրբ և մաքուր ըստ արժանւոյն, պահանջէ սրբութիւն և մաքրութիւն յայլոց և խորշի և գարշի ըստ կարի 'ի մերձենալոյ յայն որ պիղծ է և զզուելի. այս բնական իմն է, վասն այնորիկ ասեմք թէ սրբութիւն հանդերձ բարեխառնութեամբ է թէութիւն բնական և հասարակ սիրոյ։ Աւելորդ է մեզ երկայն բանիւք ցուցանել թէ որ-

չափ աղնուական, յափշտակիչ ուստի և սիրելի և հաճելի է առհասարակ սրբութիւն։ Եթէ արտաքին մաքրութիւն մարմնոյ, հանդերձից, բնակութեան, կահուց և կարասեաց այնպէս ձգէ յինքն զմարդիկ մինչեւ զմայլել, յայտ է թէ յորժամ ընդ արտաքին սրբութեան կից իցէ և ներքին հոգեւոր և բարոյական սրբութիւն որ 'ի սրտի, 'ի բանս և 'ի գործս, զսէր հասարակաց յինքն գրաւէ։

## ԳԼՈՒԽ Ի.

### Յաղագս ճշմարտութեան։

Ճշմարտութիւնն է վերացեալ անուն և չէ հնար սահմանել զնա 'ի գոյութենէ նորա ; այլ սահմանի նա 'ի բանից, յիրաց և յիրողութեանց որ են առարկայ ճշմարտութեան։

Ճշմարտութիւնն է իսկութիւն կամ ստուգութիւն կամ ուղղութիւն որ տարածի 'ի բանս, 'ի գործս և յիրս. հակառակն նորա է ստութիւն կեղծ և մոլար։ Զճշմարտութիւն ճանաչեմք յառարկայէ անտի նորա. եթէ առարկայ նորա ճշմարիտ է, ասի ճշմարիտ. ապա թէ ոչ՝ սուտ է և մոլար։ Ուստի եթէ այլք վկայեն վասն ուրուք թէ լաւ ոք է և արդա-

րակորով, ճշմարտութիւնն ոչ կայանայ 'ի վկայութեան անդ, այլ պարտ է յանձին իսկ նորա տեսանել և ստուգել զլաւութիւն և զարդարութիւն նորա։ վասն այսորիկ ասացաք թէ յառարկայէ անտի միայն ճանաչի ճշմարտութիւն, և ոչ յինքենէ զի չէ գոյութիւն ինչ։

Ճշմարտութիւն է անբաժանելի, այլ 'ի գործոց, յիրաց և 'ի բանից որ առարկայ են ճշմարտութեան՝ բաժանի յերկուս. յընդհանուր և 'ի Մասնաւոր. զոր օրինակ ոմն ասէ. Տիւ է և առաւօտ. այլ ոք ասէ. Տիւ է այլ ոչ առաւօտ, զի ստուեր տնկոց երեւի յարեւելս։ Առաջինն խօսեցաւ մասնաւորապէս ճշմարիտ. երկրորդն խօսեցաւ համօրէն ճշմարիտ։ Մասնաւորապէս ճշմարիտ խօսին նոքա որք մերթ ճշմարիտ խօսին, մերթ սուտ, կամ բանք նոցա ըստ մասին ճշմարիտ են և ըստ մասին սուտ։

Ճշմարտութիւն բաժանի դարձեալ յերիս. 'ի բնական, 'ի բարոյական և 'ի քաղաքական. զոր օրինակ՝ Արեգակն է լուսաւոր և անանկիւն. Հուր ջերմէ. սոքա են բնական ճշմարտութիւնք։ Ի վեցերորդումն Յունուարի է Ծնունդ Տեառն. Ուրբաթք պահք են. սոքա են բարոյական ճշմարտութիւնք։ Այգիս այս Մանուէլի է. Տունդ է Յովհաննու. սոքա են քաղաքական ճշմարտութիւնք։

Դարձեալ ճշմարտութիւն 'ի մեզ 'ի բանա֊

ւորս՝ երիւք պարտի երեւել. հոգւով, մտօք և կամօք. քանզի ասացաւ թէ հոգին է գոյութիւն, միտքն է զօրութիւն, կամքն է ներգործութիւն։ Ապա պարտ է երեքումբք ես լինել ճշմարիտ, այն է՝ հոգւով, մտօք և կամօք. զի հոգին է պատճառ մտաց, և միտք կամաց։ Եթէ ոչ իցեմք հոգւով ճշմարիտ, միտք մեր ոչ կարեն լինել ճշմարիտ, և ճանաչել և որոշել զճշմարտութիւն. և եթէ միտք մեր ոչ ճանաչեն զճշմարտութիւն, կամք մեր ոչ կարեն լինել բարի, շահաւէտ և հաստատուն։ Ի լինել հոգւոյն ճշմարիտ՝ միտք ևս լինին ճշմարիտ. և ՚ի լինել մտաց ճշմարիտ՝ կամք ևս լինին ճշմարիտ։ Ի լինել կամաց մերոց ճշմարիտ՝ միշտ զբարիս կամիմք ընկերաց մերոց, որպէս անձին մերում. և եթէ չունիցիմք զայսպիսի կամս, յայտ է թէ միտք և հոգի մեր ևս չեն ճշմարիտ։ Զի, որպէս այլուր ասացաք, զամենայն իմանալի գոյութիւն ՚ի ներգործութենէ իւրմէ ճանաչեմք, որոշեմք և գիտեմք։ Եւ Տէրն ասաց յԱւետարանի թէ Ամենայն ծառ ՚ի պտղոյ իւրմէ ճանաչի։ Ճշմարիտն լինել հոգւոյ, մտաց և կամաց մերոց ճանաչի ՚ի բարութենէ կամաց մերոց։



# ԳԼՈՒԽ ԻԱ.

**Յաղագս թէութեան սիրոյ որ յիմացական կամ 'ի բարոյական հաւատոց։**

---

Եթէ կամիմք զի Աստուած և արք աստուածապաշտք սիրեսցեն զմեզ բարոյական սիրով, պարտ է մեզ գիտել զթէութիւն այնր սիրոյ, և նովին թէութեամբ վարել առաջի Աստուծոյ և մարդկան։ Եւ զի թէութիւն բարոյական հասարակ սիրոյ է ճշմարտութիւն, պարտ է մեզ յամենայնի լինել ճշմարիտս։ Ոչ ոք սիրէ երբէք զստութիւն, և ոչ հնար է մեզ խաբել ընդ երկար զայլս, նաև ոչ զանձինս։ Այլ պարտ է գնալ միշտ և հանապազ ճշմարտութեամբ. յայս և 'ի սոյն հայի բան Յովհաննու թէ Պարտ է հոգւով և ճշմարտութեամբ երկիր պագանել Աստուծոյ. այն է՝ գնալ առաջի Աստուծոյ ճշմարտութեամբ և լինել ճշմարիտ առ մարդիկ և առ անձինս։ Ի զուր է ասել թէ Եմք ժիրք և համեստք, խոհեմք և պարկեշտք, և զամենայն ինչ խոհեմութեամբ առնեմք. և թէ՝ եմք արի հանդերձ խոնարհութեամբ, և առնեմք զամենայն գործս մեր արիութեամբ, և թէ՝ այս ինչ ոք համակիր է ընդ մեզ այսու կամ այնու, և թէ՝ գտաք զյարմարութիւն երկրի ըստ գործոց մերոց, և

թէ՝ ծանեաք և որոշեցաք զհոլովումն ժամանակաց հանդերձ քանակութեամբ, և թէ՝ եմք յամենայն գործս մեր արդարք հանդերձ շնորհօք, և ունեմք զամենայն գործս մեր արդարութեամբ և շնորհօք. և թէ՝ սուրբ եմք հանդերձ բարեխառնութեամբ՝ սրտիւ, բանիւ և գործով յամենայն աւուրս մեր. 'ի զուր է զայս ամենայն պնդել, եթէ չիցեմք արդարև նոյնպիսիք: Ճշմարտութիւն է որ առնէ զմեզ արդեամք այնպիսիս, և յարդարէ զմեզ սիրելիս առ ամենայն մարդիկ ևս և առաջի Աստուծոյ: Այս ամենայն առաքինութիւնք և բարիք կախեալ կան զճշմարտութենէ, որպէս համօրէն բնութիւն կախեալ կայ զԱստուծոյ իբրև զառաջնոյ պատճառէ:

Արդարև ճշմարտութիւն ոչ է ինքնին առաքինութիւն, այլ է հաստատիչ և պահպանիչ ամենայն առաքինութեանց և բարեգործութեանց. որպէս խոհեմութիւնն չէ ինքնին առաքինութիւն, այլ ծնող ամենայն առաքինութեանց: Համառօտ իսկ ասել՝ ճշմարտութիւն է թագաւոր անյաղթ յաշխարհի աստ և 'ի հանդերձելումն. վասն այնորիկ եդաւ 'ի կատարածի ամենայն թէութեանց և առաքինութեանց, զի 'ի նմա առնուն լրումն և եզր ամենայն առաքինութիւնք:



## ԳԼՈՒԽ ԻԲ.

*Յաղագս չարազուգութեան եւ տարազուգութեան ինն թէութեանց ընդհանուր հաւատոյ, յուսոյ եւ սիրոյ։*

---

*Որպէս տեսանի 'ի ցուցակի անդ՝ 'ի ներքոյ ժրութեան որ է առաջին թէութիւն ընդհանուր հաւատոյ՝ եդեալ է թուանշանն 3. 'ի ներքոյ խոհեմութեան որ է երկրորդ թէութիւն ընդհանուր հաւատոյ՝ եդեալ է թուանշանն 2. և 'ի ներքոյ արութեան որ է երրորդ թէութիւն ընդհանուր հաւատոյ՝ եդեալ է թուանշանն 1։ ի ներքոյ թէութեանց ընդհանուր յուսոյ որ են համակրութիւն մարդոյ, յարմարութիւն երկրի և հոլովումն ժամանակաց՝ նոյնպէս եդեալ են նոյն երեքին թուանշանք 3, 2, 1. նոյնպէս է և 'ի ներքոյ թէութեանց ընդհանուր սիրոյ, այսինքն՝ եդեալ են թուանշանքս 3, 2, 1, 'ի ներքոյ արդարութեան, սրբութեան և ճշմարտութեան։*

*Այդ երեքին կարգք թուանշանացս* 1 2 3, 1 2 3, 1 2 3. *որ առանձին առանձին ընծայեցուցանեն զերեսին թէութիւնս հաւատոյ, յուսոյ և սիրոյ՝ են չարազոյգք ընդ միմեանս. այսինքն՝ Արիութիւն, խոհեմութիւն, ժրութիւն՝ են չարազոյգ ընդ միմեանս. չարազոյգ*

են ընդ միմեանս նաեւ Հոլովումն ժամանակաց յարմարութիւն երկրին, համակրութիւն մարդկան. նոյնպէս չարագոյգ են՝ ճշմարտութիւն, սրբութիւն և արդարութիւն։

Բայց 'ի շարել մեր կարգաւ զերիս երրեակս միանգամայն 'ի մի կարգ, այսպէս՝ 123123123, յայնժամ լինին ընդ միմեանս տարագոյգ նոյնանշան թուանշանքն, այսինքն՝ երեքին 3 թուանշանք, երեքին 2 թուանշանք և երեքին 1 թուանշանք։ Եւ ըստ այսմ տարագոյգ լինին թէութիւնքն որ ունին 'ի ներքոյ զթուանշանն 3, այն է՝ ժրութիւնն, համակրութիւն մարդոց և արդարութիւն. որք են երեք թէութիւնք՝ առաջինն քաղաքական հաւատոյ, երկրորդն քաղաքական յուսոյ, երրորդն քաղաքական սիրոյ. նոյնպէս տարագոյգ են թէութիւնք որ ունին զթուանշանն 2, այն է՝ խոհեմութիւն, յարմարութիւն երկրի, սրբութիւն. որք են երեք թէութիւնք, առաջինն բնական հաւատոյ, երկրորդն բնական յուսոյ և երրորդն բնական սիրոյ. նոյնպէս տարագոյգ են թէութիւնքն որ ունին զթուանշանն 1 այն է Արիութիւն, հոլովումն ժամանակաց և ճշմարտութիւն. երեք թէութիւնք՝ առաջինն իմացական կամ բարոյական հաւատոյ, երկրորդն իմացական յուսոյ, երրորդն իմացական սիրոյ։

Այսպէս 'ի հայել մերում 'ի ցուցակ անդր՝

տեսանեմք ըստ շարադրութեան զի 'ի լինել մերում ժիր՝ կարեմք լինել և խոհեմ. 'ի լինել մերում խոհեմ՝ լինիմք և արի. և այս 'ի մասին հաւատոյ։ Դարձեալ ըստ նմին սկզբան շարադրութեան՝ եթէ գիտեմք զհամակիրն ըստ իրին, կարեմք ճանաչել զյարմարութիւն երկրին. և եթէ ճանաչեմք զյարմարութիւն երկրին ըստ գործոյն, կարեմք որոշել զհոլովումն ժամանակաց. այն է՝ զանձն ըստ իրին (համակրութիւն մարդոյ), զտեղին ըստ գործոյն (յարմարութիւն երկրի) և զժամանակն ըստ քանակութեան (հոլովումն ժամանակաց). և այս 'ի մասին յուսոյ։ Նոյն բան է և զերրորդէն, այսինքն զսիրոյ. զի ըստ շարադրութեան՝ եթէ արդար եմք, կարեմք լինել սուրբ. և եթէ եմք սուրբք, կարեմք լինել ճշմարիտ յամենայնի և այս որպէս ասացաք, 'ի մասին սիրոյ։

Դարձեալ հայեցեալ 'ի ցուցակ անդր, տեսանեմք և ըստ տարադրութեան զի եթէ ունիմք ժրութիւն հանդերձ համեստութեամբ 'ի հաւատս, գտանեմք զհամակիրն մեր ըստ իրին 'ի յոյս. և եթէ գտանեմք զհամակիրն, լինիմք արդարք հանդերձ շնորհօք 'ի սէր. և այս 'ի քաղաքականին. Նոյնպէս 'ի բնականին ըստ տարադրութեան, եթէ ունիմք խոհեմութիւն 'ի հաւատս, կարեմք ճանաչել զյարմարութիւն երկրին 'ի յոյս. և եթէ ճանաչեմք

զյարմարութիւն երկրին , լինիմք սուրբ հանդերձ բարեխառնութեամբ 'ի սէր : Նոյնպէս դարձեալ յիմացականին կամ 'ի բարոյականին , եթէ ունիմք արիութիւն 'ի հաւատս , կարեմք որոշել զհոլովումն ժամանակաց 'ի յոյս , և յորոշել մեր զհոլովումն ժամանակաց , լինիմք ճշմարիտք 'ի սէր :

Պարտ է գիտել զի առաջին տարազոյգքն 'ի ցուցակի , որ են թէութիւնք որոց թուանշան է 3 , այսինքն՝ Ժրութիւն , համակրութիւն և արդարութիւն , են յարդարողք 'ի քաղաքականս :

Երկրորդ տարազոյգքն որ են թէութիւնք որոց թուանշան է 2, այսինքն՝ խոհեմութիւն , յարմարութիւն երկրին և սրբութիւն , են մաքրիչք 'ի բնականս :

Երրորդ տարազոյգքն որ են թէութիւնք որոց թուանշան է 1 , այսինքն՝ Արիութիւն հանդերձ խոնարհութեամբ , հոլովումն ժամանակաց ըստ քանակութեան և ճշմարտութիւն , են յաղթողք 'ի վերացեալն , այսինքն՝ յիմացականին և 'ի բարոյականի :

Խօսեսցուք սակաւուք և զներգործութենէ նոցունց թէութեանցս : Ժրութիւն հանդերձ համեստութեամբ , խոհեմութիւն հանդերձ պարկեշտութեամբ , և արիութիւն հանդերձ խոնարհութեամբ որ են շարազոյգ թէութիւնք հաւատոյ ընդ միմեանս՝ տան ստանալ զհար-

կաւոր պիտոյս մարդկային բնութեան ըստ ա֊մենայնի անթերի և միշտ առատ և լիուլի ։

Համակրութիւն ըստ իրին, յարմարութիւն երկրին ըստ գործոյն և հոլովումն ժամանակաց ըստ քանակութեան որ են շարադրոյդ թէու֊թիւնք յուսոյ ընդ միմեանս՝ տան ճանաչել և ընտրել զառատն և զփառաւոր, և ստանալ ըզ բարձրագոյնն վասն մարդկային բնութեան մերոյ։

Արդարութիւն հանդերձ չնորհօք, սրբու֊թիւն հանդերձ բարեխառնութեամբ, ճշմար֊տութիւն միշտ և յամենայնի որ են շարադրոյդ թէութիւնք սիրոյ ընդ միմեանս՝ առնեն եր֊ջանիկ և պահեն միշտ 'ի խաղաղութեան սատ մարմնով եւ առ յապայն հոգւով։



## ԳԼՈՒԽ ԻԳ.

Ցաղագս առարկայի եւ սահմանի նորա։



Առարկայն է նիւթ յորմէ կազմի կամ շինի ինչ ։ Առարկայն բաժանի յերիս . 'ի Տեսական, յՈրակական և 'ի Նիւթական ։ Տեսական ա֊ռարկայն է գովել զոք կամ պարսաւել, որոց մին է առարկայ սիրելոյ, միւսն ատելոյ ։ Ո֊րակական առարկայն է լոյս, գոյն, այլովքն հանդերձ ։ Նիւթական առարկայք են ոսկի,

արծաթ, երկաթ, մետաքս, փայտ, և այլ սոցին նմանք ։ Ուր ոչ գոյ լոյս և գոյն, անդ չիք ակն որ տեսանիցէ ․ եթէ չիք ոսկի, չիք ոսկեզօծումն և ոչ այն որ ոսկեզօծէ ․ եթէ չիցէ երկաթ, չկարէ լինել տապար, մանգաղ, խոփ և դարբին․ այսպէս պարտ է իմանալ և զայլոց։

## ԳԼՈՒԽ ԻԴ․

Յաղագս առարկայից ընդհանուր հաւատոյ, յուսոյ եւ սիրոյ ։

---

Առարկայն ընդհանուր հաւատոյ է ժրութիւն հանդերձ համեստութեամբ, խոհեմութիւն հանդերձ պարկեշտութեամբ, արիութիւն հանդերձ խոնարհութեամբ ։

Առարկայ ընդհանուր յուսոյ է համակրութիւն ըստ իրին, յարմարութիւն տեղւոյն ըստ գործոյն և հոլովումն ժամանակաց ըստ քանակութեան ։

Առարկայ ընդհանուր սիրոյ է արդարութիւն հանդերձ շնորհօք, սրբութիւն հանդերձ բարեխառնութեամբ և ճշմարտութիւն միշտ և ամենայն ուրեք ։

Զիարդ հնար է մեզ ասել թէ հաւատացեալ եմք և ունիմք ուղիղ, ճշմարիտ և կատար֊

եալ հաւատս, եթէ չիցեմք ժիր հանդերձ համեստութեամբ, և ոչ խոհեմ հանդերձ պարկեշտութեամբ, և ոչ. արի հանդերձ խոնարհութեամբ. զի ամենայն ինչ 'ի նիւթոյ կազմի, ուր չիք նիւթ, անդ չիք գործ և ոչ գործող.

Իսկ եթէ ունիմք հաւատս, պարտիմք ունել և յոյս, այսինքն կրել և ունել զաւարկայն յուսոյ, որ է գտանել զհամակիրն ըստ իրին, որոշել զտեղին ըստ գործոյն և ճանաչել զժամանակն ըստ քանակութեան. ապա թէ ոչ չիք 'ի մեզ յոյս և ոչ հաւատք. Ցունել մեզ հաւատս և 'ի հաւատոյ անտի յոյս, ապա հարկ է ունել և սէր, և ընդ նմին զաւարկայն սիրոյ որ է արդարութիւն հանդերձ շնորհօք, սրբութիւն հանդերձ բարեխառնութեամբ եւ ճշմարտութիւն հաստատուն յամենայնի և միշտ. Ի պակասել 'ի մեզ առարկայի սիրոյ, պակասեն 'ի մեզ 'ի հարկէ և յոյս և հաւատք. Ի յուսոյ և 'ի սիրոյ մերմէ ճանաչին հաւատք մեր. Ըստ հաւատոց մերոց են յոյս և սէր մեր. Եթէ առնեմք և ունիմք զաւարկայն հաւատոյ, յայնժամ ճանաչեմք և գիտեմք և զաւարկայն յուսոյ, և վարիմք առարկայիւ. սիրոյ. Այսպէս հաւատք, յոյս և սէր մարդոյ ճանաչին միմեամբք. զի յայտնի լինին ուղղութիւն, ճշմարտութիւն և կատարելութիւն հաւատոյ, աներկեւանութիւն յուսոյ և սրբութիւն սիրոյ, ըստ այնմ թէ՝ Լուսաւորեսցէ լոյս ձեր առաջի մարդ-

կան , զի տեսցեն զգործս ձեր բարիս և փառաւորեսցեն զՀայր ձեր որ յերկինս է ։ Եթէ ոչ իցեն 'ի մեզ առարկայք երից առաքինութեանցս այսոցիկ աստուածեղինաց , Հաւատք , յոյս և սէր լինին լոկ տեսականք , որ ոչինչ են ։ Ծառ 'ի պտղոյ իւրմէ ճանաչի ։

# ԳԼՈՒԽ ԻԵ․

Յաղագս առարկայից մասնաւոր հաւատոյ , յուսոյ եւ սիրոյ ։

Երիս ազգս հաւատոյ , յուսոյ եւ սիրոյ եդաք 'ի վեր անդր ․ այն է , Քաղաքական , բնական և իմացական կամ բարոյական ։ Ըստ գըլխաւորելով զբանս մեր , դիցուք համառօտիւ զառարկայս իւրաքանչիւրոցն ։

Առարկայ քաղաքական հաւատոյ է ժրութիւն հանդերձ համեստութեամբ , այսինքն՝ հանդարտութեամբ ։ Որ ունի զքաղաքական հաւատս՝ պարտի ժիր լինել 'ի բանս և 'ի գործըս հանդերձ համեստութեամբ ․ իսկ որ 'ի քաղաքական հաւատոյ անտի ունի զյոյս՝ պարտի ճանաչել զհամակիրս իւր , զի այն է առարկայ յուսոյ ճանաչել զհամակիրն ․ քանզի զոր ինչ միանգամ յուսայ ոք բարիս 'ի քաղաքա-

կան կամ յընկերական կեանս՝ ընդունի 'ի ձեռն իւրոյ համակրի . իսկ որ ունիցի սէր քաղաքական 'ի հաւատոյ և 'ի յուսոյ անտի՝ պարտի ունել արդարութիւն հանդերձ շնորհօք . զի եթէ չիցէ ոք 'ի քաղաքական կամ յընկերական կեանս արդար 'ի կշռել և 'ի դատել և յառնել հանդերձ շնորհօք , զիարդ կարէ առնել զանձն սիրելի այլոց : Նա որ չունի ժրութիւն մտաց 'ի բանս և 'ի գործս հանդերձ համեստութեամբ , ոչ ճանաչէ զիւր համակիր , և չունի զարդարութիւն հանդերձ շնորհօք՝ այնպիսին չունի ոչ հաւատս , ոչ յոյս և ոչ սէր քաղաքական . զի ամենայն ոք յառարկայէ անտի ճանաչի թէ ունի զայս ինչ կամ զայն հանդամանս կամ զճարտարութիւն . որպէս բժիշկ ոչ այլ ուստեք ճանաչի եթէ ոչ 'ի բժշկելոյ անտի զայր հիւանդ կամ ախտաժէտ .

Նոյն բանք են և զբնական հաւատոց , զյուսոյ և զսիրոյ . յառարկայէ անտի իւրեանց ճանաչին սոքա թէ են 'ի մարդն : Առարկայ բնական հաւատոյ է խոհեմութիւն հանդերձ պարկեշտութեամբ , առարկայ բնական յուսոյ որ 'ի բնական հաւատոց՝ է յարմարութիւն երկրին ըստ գործոյն , և առարկայ բնական սիրոյ ծագելոյ 'ի բնական հաւատոյ և սիրոյ՝ է սրբութիւն հանդերձ բարեխառնութեամբ . Որ ոչ ունիցի զայսոսիկ , այն է զխոհեմութիւն հանդերձ պարկեշտութեամբ , զծանօթութիւն

յարմարութեան երկրին, և զսրբութիւն հանդերձ բարեխառնութեամբ՝ այնպիսին չունի ոչ զհաւատս, ոչ զյոյս և զսէր բնական։ Բնական հաւատք են հմտութիւն և խելամտութիւն գիտութեանց. արդ խոհեմութիւն է սկիզբն ամենայն իմացութեան, զի նովաւ ընտրեմք զճշմարիտն և զսուտ, զարդարն և զանիրաւ, զբարին և զչար, զգեղեցիկն և զվատթար. ապա զիարդ հնար է ունել զբնականն հաւատս առանց ունելոյ զսկիզբն նորա որ է խոհեմութիւն։ Ապա առ ունելոյ զբնական հաւատս՝ հարկ է լինել խոհեմ միօք, բանիւ և գործով։

Բնականն յոյս է յուսալ ինչ 'ի բնական պատճառաց. և բնական պատճառք ունին կախումն զյարմարութենէ երկրին, ապա զիարդ կարէ լինել աներկեւան յոյս նորա որ չունի զգիտութիւն յարմարութեան երկրին։ Արդ որ ունի զբնական հաւատս, այն է զգիտութիւն պէսպէս իրաց, պարտի ունել և զառարկայն յուսոյ որ է յարմարութիւն երկրի ըստ գործոց, ապա թէ ոչ 'ի զուր է ասել նորա թէ ակն ունի ընդունել ինչ 'ի բնական պատճառաց։

Զնոյն պարտ է ասել և զբնական սիրոյ։ Յայտ է թէ ամենայն ինչ յառաջ գայ և ծնանի 'ի սիրոյ, մետաղք և բոյսք և շնչաւորք. և բնութիւն որ սուրբն է ինքնին, ուղիղ և օրինաւոր՝ սիրէ զսրբութիւն, այն է զուղիղն և զօրինաւոր կարգ. ապա անհնար է յաջողել և

ունել զիւր արդիւնս ըստ բնականին, եթէ չիցեմք սուրբք։ Սրբութիւնն պարտի լինել բարեխառնութեամբ, այն է՝ ըստ չափոյ։

Խօսեսցուք այժմ և զիմացական կամ բարոյական հաւատոյ, յուսոյ և սիրոյ։ Սոքա եւս յառարկայից իւրեանց ճանաչին, և որ չունիցին զառարկայս նոցա՝ չունին և զնոսա դլխովին։ Այլ զինչ իցեն առարկայք իմացական կամ բարոյական հաւատոյ, յուսոյ և սիրոյ. զսոցունց այլուր ասացաք, աստ կարճ 'ի կարճոյ բովանդակեսցուք։

Առարկայ իմացական կամ բարոյական հաւատոյ է արիութիւն հանդերձ խոնարհութեամբ։ Իմացական կամ բարոյական հաւատք են ճշմարիտ սկզբունք 'ի բարոյականս ընդ որս մաքառին կիրք և ախորժակք զգայականք ընդդէմ ճշմարտութեան. ապա պարտ է ունել արիութիւն առ զդէմ ունելոյ նոցա։ Արք վեհերոտք բազում անգամ առ ամօթոյ երեւելոյ այնպիսի որպիսի ենն՝ կեղծաւորին, և այնպէս չփոթեն զճշմարտութիւն ընդ ստութեան, մանաւանդ թէ մատնեն իսկ զնա։ Այլ յայտ է թէ այնպիսիքն չունին զբարոյական հաւատս. ապա պարտ է ունել արութիւն հանդերձ խոնարհութեամբ զի բարոյական հաւատք մեր լիցին ճշմարիտ և անկեղծ։

Առարկայ իմացական կամ բարոյական յուսոյ ծագելոյ 'ի բարոյական հաւատոց է գիտել

զհոլովումն ժամանակաց 'ի ձեռն պէսպէս արուեստից և 'ի ձեռն փորձոյ ստուգելոյ, որպէս յիւրում տեղւոջ ասացաք ։ Յուսալ այսու յուսով՝ է գիտել զայն որ լինելոց է ըստ բնական ինչ օրինաց ։ Ամենայն ինչ որ լինի ըստ բնական ինչ օրինաց՝ գործի ըստ հոլովման ժամանակաց. ապա զիարդ կարէ ունել ոք յոյս իմացական, եթէ չունիցի զգիտութիւն հոլովման ժամանակաց այն է՝ կարգի տիեզերաց ։ Ապա պարտ է մեզ 'ի ձեռն աստուածապարգեւ արուեստից և հանճարոյ մերոյ զննել և քննել զհոլովմունս ժամանակաց այն է զտիեզերաց կարգ կամ զօրէնս բնութեան և գիտակ լինել նոցա, և գտանել զկանոն այնց՝ զորս այլք պատահարս համարին. զի չիք ինչ 'ի բնութեան որ չիցէ ընդ կանոնաւ ։ Յայտ է մեզ ամենեցուն զի 'ի հնումն զխաւարումն արեգական և լուսնի համարէին ըստ դիպաց ինչ. այլ ըստ աստեղագիտաց այնպէս ըստ կանոնի. եւ խաւարմունք մինչեւ յառաջագոյն գուշակել ըստ վայրկենից ։ Մարթ է նոյնպէս 'ի ձեռն փորձոյ և ստէպ դիտողութեան գիտել և գուշակել բազում ինչ որ ըստ օրինակի խաւարմանց օրինօք և կարգօք լինին. և այնպէս ապրել 'ի չարեաց և վայելել 'ի բարիս ։ Քանզի հոլովումն ժամանակաց փոխէ զդիրս երկրի, ծովու և ցաքի, զտեսակս և զհանգամանս բուսոց և տընկոց և մետաղաց. լինի պատճառք առատու֊

թեան կամ նուազութեան իրաց բազմաց, ածէ մանս տարաժամս կամ տայ զառողջութիւն անասնոց և մարդկան, մանաւանդ գործէ հիւանդութիւնս, որպէս զժանտախտ և զվարդախտ և զմաղձայոյզ, այլովքն հանդերձ. Բաց 'ի սոցունց, հոլովումն ժամանակաց փոփոխէ երբեմն և զզգայական կիրս, զզօրութիւն մտաց և զխառնուած և զազդեցութիւնս մարմնոց բանականաց. այլ գործք ազատ և անձնիշխան կամաց ոչ անկանին ընդ ազդեցութեամբ հոլովման ժամանակաց ուղղակի, այլ անուղղակի միայն։

Առարկայ իմացական կամ բարոյական սիրոյ ծագելոյ 'ի յուսոյ յաջողելոյ 'ի հաւատոց՝ է ճշմարտութիւն. վասն որոյ պարտ է հանապազ ունել հաստատուն 'ի հոգիս, 'ի միտս և 'ի կամս մեր զճշմարտութիւն։ Ամենայն ճշմարտութիւն որ չէ հաստատուն 'ի հոգիս, 'ի միտս և 'ի կամս՝ ոչ է այն ճշմարտութիւն այլ յօժարութիւն ներքին զգայական ոգւոյ և բաղձանք մարմնոյ. ուստի և չէ յիմացական բարոյական սիրոյ որ ստացեալ լինի 'ի յուսոյ ծագելոյ 'ի հաւատոց։ Եւ սէրն որ ոչ է յիմացական բարոյական հաւատոց, որպէս յայտ է և այլուր ասացաւ, ոչ է ճշմարտութիւն այլ զգացումն ինչ։ Ի պակասել 'ի մեզ այնր սիրոյ, յայտ է թէ պակասէ և յոյս. և եթէ պակասէ 'ի մեզ յոյս, ապա պակասեն և հաւատք։

# ԳԻՐՔ ԵՐՐՈՐԴ



## ԳԼՈՒԽ Ա.

*Յաղագս նշանի թէ զինչ իցէ։*



*ՆՇԱՆՆ է զեկուցանող, գուշակող և յայտնող էական կամ իբր էական բանից, իրաց և գործոց անցելոց, ապառնեաց և աներեւութից. այսինքն՝ այնպիսի բանից, իրաց և գործոց որ գաղտնի են 'ի զգացմանէ մերմէ. և են լեալ յանցեալ ժամանակի կամ լինելոց են առյապա։ Զոր օրինակ՝ ընդ առաւօտս և 'ի գիշերի յոչ գիտել ուրուք զժամ ծագելոյ արեգական, երեւի մոլորակն արուսեակ կամ լուսաբեր, և լինի նշան ծագելոյ արեւուն որ էր ապագայ և աներեւոյթ։ Այսպէս իմա և զայլոց։*



## ԳԼՈՒԽ Բ.

*Թէ քանիօն բաժանիցի նշանն։*



*Նշանն բաժանի նախ յիրական, 'ի գործնական և 'ի բանական։ Երկրորդ բաժանի 'ի*

Բնական, 'ի Պատահական և 'ի Խորհրդական ։ Բնականն բաժանի դարձեալ 'ի Հարկաւոր և 'ի Ներընդունական ։

Իրական Նշանն երեւի յառաջ քան զիրն, որպէս ծուխ քան զհուր ։ Գործնականն յառաջագոյն է քան զգործն՛, որպէս յայտարարութիւն պատերազմի կամ զանգակն ժամերգութեան, փողք և այլ՛ևս ձայնատուք, որ ազդառնեն զիմեքէ, որպէս զպատերազմէ, զաղօթից և զայլոց մինչչեւ եղեալ ։ Բանական Նշանն կանխէ քան զբանս․ որպէս որ բամբասելոցն է՝ Նախ քամահէ, և ապա բամբասէ, յետոյ ապա առնէ ատելի և ինքն ևս ատէ ։ Ուստի քամահութիւն է Նշան բամբասանաց, և բամբասանք՝ Նշան են ատելութեան ։

Բնական Նշանք են 'ի բնութենէ, որպէս բնական պիսակ ( պէնկ ) 'ի մարմինս, կամ այլ բիծք ։ Այսպիսի Նշանք գտանին յամենայն արարածս ։

Պատահական Նշանն ըստ դիպաց իմն պատահէ, որպէս յանակնկալ ինչ հարուածոյ կորուսանել զակն, կամ խորտակել միոյ 'ի սրունից և լինել կաղ, և կամ այլոց անդամոց խեղել ըստ պատահման կամ 'ի Վնասակարութենէ այլոց ։

Խորհրդական Նշանն խորհելով կամ ըստ հաճոյից լինի․ որպէս են մատանին 'ի ձեռին եպիսկոպոսի որ զեպիսկոպոսական կարգն յայտ

առնէ, կամ. ուսանողն յուս զօրավարի. այսպիսի նշանք ըստ հաճոյս դնին վասն իրիք յարմարութեան և պատշաճութեան։

Ասացաք եթէ բնականն նշան բաժանի դարձեալ 'ի հարկաւոր և 'ի ներընդունական։ Հարկաւոր նշանք են անձրեւք վասն ամպոց. զի 'ի տեսանել մեր զանձրեւ գիտեմք եթէ գոն ամպք յերկինս։ Ներընդունական նշան են ամպք վասն անձրեւաց, զի բազում անգամ ամպք ծածկեն զերեսս երկնից, այլ չտեղայ անձրեւ զայն օր կամ յայնմ տեղւոջ։ Նոյնպէս բանականութիւնն է ներընդունական նշան արդարութեան մարդոյ և ոչ անմեղութեան. զի հնար է մարդոյ լինել արդար այլ չէ հնար լինել անմեղ, զի է անձնիշխան ըստ մասին ազատ կամօք։ Վասն այնորիկ ասաց Տէրն մեր. Ջէ յարուցեալ 'ի ծնունդս կանանց մեծ քան զՅովհաննէս Մկրտիչ. այլ փոքրիկն յարքայութեան երկնից մեծ է քան զնա։

Զպէսպէս ազգս նշանաց ճանաչել և ընտրել կարեւոր է, զի մի խաբեսցուք ոչ գիտելով բարւոք թէ յորպիսի նշանաց որպիսի իրք զհետ գան. և զիա՞րդ, 'ի հարկէ՞ ինչ՝ թէ ըստ դիպաց, 'ի կամա՞ց մարդկան իցեն թէ 'ի բնութենէ։



## ԳԼՈՒԽ Գ.

### Ցաղագս ճանաչման թէ զի՞նչ իցէ ։

---

Ճանաչումն է բաղդատել զիրս ընդ միմեանս ։ Յետ ճանաչելոյ ապա ըստ գաղափարին զոր կանխաւ ունիմք՝ ընտրեմք կամ որոշեմք զնոսա ։ Այսպէս ճանաչեմք զթուխս կամ զսպիտակս , զուղիղս և զթիւրս , զքաղցունս և զդառինս կամ զթթուս , այլովքն հանդերձ , համեմատելով զնոսա ընդ միմեանս , և յետ այնորիկ որոշեմք ըստ նախկին գաղափարի մերոյ թէ ո՞րն աւելի թխագոյն իցէ կամ սպիտակագոյն , քաղցրագոյն կամ դառնագոյն ։ Որպէս առանց բաղդատութեան չէ հնար ճանաչել , նոյնպէս չէ հնար ընտրել կամ որոշել առանց ճանաչելոյ ։

---

## ԳԼՈՒԽ Դ.

### Թէ քանիօն բաժանիցի ճանաչումն ։

---

Ճանաչումն 'ի կողմանէ ճանաչողին մի է , այլ առարկայք ճանաչման բազմադիմի են և պէսպէս ․ այլ մեք զնոսա 'ի սակաւս ամփոփե-

լով տեսացուք . ճանաչելիք բաժանին 'ի Նիւ-
թական , 'ի Գործնական և 'ի Բանական .

Նիւթականն դարձեալ բաժանի 'ի Քանա-
կական և յՈրակական .

Գործնականն ևս բաժանի 'ի Հոծ և 'ի Տա-
րած , 'ի Թիւր և յՈւղիղ , 'ի Լաւ և 'ի Ցոռի .

Բանականն նոյնպէս բաժանի 'ի Սուտ և 'ի
Ճշմարիտ , 'ի Կեղծեալ և 'ի Բուն .

Զնիւթական առարկայս մարթ է ճանաչել
երբեմն 'ի քանակութեանէ , երբեմն ևս յորպի-
սութեանէ , զորօրինակ՝ 'ի համոյն , 'ի հոտոյ , 'ի
գունոյ և 'ի ձայնից . Այսպէս ճանաչեմք զքնար
և զտաւիղ , զի այլ է ձայն քնարի , և այլ՝ տաւղի .
և զայս գիտեմք ըստ գաղափարին զոր ստաց-
եալ ունիմք զնոցանէ կանխաւ . Գործնական
ճանաչումն լինի 'ի հոծութեանէ , այսինքն՝ 'ի
խտութեանէ ([illegible]) և կամ 'ի տարածու-
թեանէ այսինքն՝ յանօսրութեանէ ([illegible]) .
Ի տեսանել մեր ինչ շօշափելով ճանաչեմք ըզ-
յատկութիւնս զայսոսիկ , այսինքն՝ փորձով
կամ քննութեամբ , և վասն այսորիկ կոչեցաք
զճանաչումն այսպիսի յատկութեանց՝ գործ-
նական . Նոյնպէս 'ի ձեռն փորձոյ ճանաչեմք
զուղղութիւն և զթիւրութիւն , զլաւութիւն և
զյոռութիւն նիւթոց .

Բանական ճանաչումն ոչ է էական , այլ
իբր էական , և առարկայ նորա է ճշմարիտն
կամ սուտ . Ի բաղդատել մեզ զբանս ուրուք

ընդ օրէնս տրամաբանութեան մտաց՝ իմանամք թէ ճշմարիտ է կամ սուտ զոր ասացն։ Զոր օրինակ՝ որ ասիցէ թէ սիրէ զԱստուած, և զընկեր իւր ատիցէ, յայտ է թէ սուտ խօսի և ոչ ճշմարիտ։ Նոյնպէս որ յայտնի ստախօսն է և ասիցէ թէ սիրէ զճշմարտութիւն, յայտ է թէ սուտ է։

## ԳԼՈՒԽ Ե.

Յաղագս յատկութեան։

Յատկութիւն է սեպհականութիւն իրիք, կամ այն առանձինն ինչ որով իրն է այն ինչ որ է։ Եթէ իր ինչ չունիցի զիւր յատկութիւն չէ այն ինչ իր իսկապէս, այլ այլ ինչ և օտար, և զանունն միայն ունի և ոչ զիսկութիւն։ Այսպէս ջուրն ունի զիւր յատկութիւն զովացուցիչ, հուրն զիւր այրիչ յատկութիւն, ուսուցիչն կամ վարդապետ զյատկութիւն վարդապետի։ Եթէ ջուր, հուր և վարդապետն չունիցին զիւրեանց էական յատկութիւնս, ոչ ջուրն ջուր է, ոչ հուրն հուր, և ոչ վարդապետն արդարեւ ուսուցիչ։ Լինելով միայն հեղուկ՝ ջուր ոչ է ջուր, և ոչ հուրն ունելով միայն զգոյն հրոյ, մարթի կոչել հուր։ Ամենայն

ինչ ՚յատկութեամբ իւրով ճանաչի և՛ որոշի յայլոց. և յայսմ է ճշմարտութիւն նորա. ապա թէ ոչ մոլորութիւն մեծ լինէր հակառակ զգայութեանց պնդել թէ է ջուր այն ինչ՝ որ չէ զովացուցիչ. նոյնպէս իմա և զայլոց. Աստուած զճշմարտութիւն իրաց կացոյց ՚ի յատկութիւնս նոցա, և զզգայութիւնս և զիմացականութիւն եդ վկայս.

Ըստ այսմ՝ ծիծաղականութիւն մարդոյ է յատկութիւն նորա, ապա մարդ որ ոչ ծիծաղի՝ չէ մարդ բանական, այլ կամ կապիկ է եթովպիոյ և կամ այլ ինչ անասուն. Նոյնպէս չէ հնար ծանօթ լինել հաւատացելոյ, այսինքն այնր՝ որ ունի հաւատս, այլուստ եթէ ոչ ՚ի գործոց առաքինութեան և շնորհաց. զի այսոքիկ իսկ են յատկութիւնք նորա. որ ոչն ունիցի զայնոսիկ, զիարդ կոչեսցուք զնա ուղիղ և ճշմարիտ կատարեալ հաւատացեալ. Զնոյն իմա և զբանաւոր մարդոյ որ ոչ կարիցէ յայտնել զմիտս իւր ոչ մերձաւորաց բանիւ, և ոչ հեռաւորաց գրով. և ոչ իսկ նշանաւ ինչ իբրև զհամերս, այլ իցէ իբրև զանասուն անբան, զիարդ մարթ իցէ ասել վասն նորա թէ իցէ բանաւոր.



# ԳԼՈՒԽ Զ.

*Ապացոյց նշանի, ճանաչման եւ յատկութեան հանդերձ շարագուգութեամբ ընդ միմեանս:*

---

Ի վեր անդր խօսեցաք ուրոյն զնշանէ, ըզ ճանաչմանէ և զյատկութենէ. աստ արժան համարիմք խօսել զնոցունց շարագոյգ կանոնաւ, եթէ զիրական, եթէ զգործնական և եթէ զբանական բանից, զիրաց, զնիւթոց և զգործոց:

Նշան տուընջեան է ծագումն լուսաբեր աստեղն. ճանաչումն տուընջեան է արշալոյսն, և յատկութիւն տուընջեան է ծագումն արեգական: Նշան հրոյ է ծուխն. ճանաչումն նորա է ջերմութիւն, իսկ այրելն և կիզուլ է յատկութիւն նորա: Նշան ջրոյ է ցրտութիւն, ճանաչումն նորա է խոնաւութիւն, յատկութիւն նորա է զովացուցանելն:

Նշան դարբնութեան է կռանն 'ի ձեռին. ճանաչումն նորա է հարուած կռանին ընդ սալ, և յատկութիւն նորա է շինել խոփ, տապար, մանգաղ, այլովքն հանդերձ: Նշան բժշկի է ունել և ճանաչել զնիւթս դեղոց, զզօրութիւն և զազդեցութիւն նոցա և զկանոն բաղադրելոյ զնոսա. ճանաչումն նորա է գիտել զպէս պէս ազգս հիւանդութեանց, զպատճառս նոցա և զբնաւորութիւն, և զանունս հիւանդաց.

յատկութիւն բժշկի է ազդու բանիւ մխիթարելով բժշկել հանդերձ դեղովք զհիւանդն, և առողջացուցանել ըստ վիճակի և ըստ հասակի նորա դարմանելով զնա ։

Նշան թագաւորի և իշխանի է զոյգ և հաւասար սիրել զամենայն հպատակս իւր. ճանաչումն թագաւորի և իշխանի է օրէնսդիր լինել յօգուտ և 'ի յառաջադիմութիւն հասարակաց և 'ի հաստատութիւն թագաւորութեան իւրոյ. իսկ յատկութիւնն է արդարութեամբ դատել զամենայն մարդ, զլաւս փառօք եւ պատուով պսակել և զչարս ըստ օրինաց պատժել 'ի զգուշութիւն և 'ի խրատ այլոց ։

Նշան վարդապետութեան է լինել համեստ, պարկեշտ և խոնարհ. ճանաչումն նորա է գիտել զարուեստս և զգիտութիւնս պիտանիս, եթէ զկրօնականս և եթէ զբարոյականս. յատկութիւն նորա է խրատել զտգէտս, և ուսուցանել նոցա գնալ բարւոք ընդ ժողովրդեան. հանապազ քարոզել զհաւատս, զյոյս և զսէր, սիրով և խաղաղութեամբ պահել զհաւատացեալս ։ Նշան մարդոյ է վարելն բանիւ. ճանաչումն նորա է խօսելն, և յատկութիւն՝ ծիծաղականութիւնն ։ Նշան մարդկութեան է իմացականութիւն, ճանաչումն է ճանաչել և ընտրել զբարին 'ի չարէն, զյոռին 'ի լաւէն և զուղիղն 'ի թիւրէն. իսկ յատկութիւն մարդկութեան է առաքինի լինել միշտ ։

բազումս. իսկ յատկութիւնն է ծախել զինչս իւր 'ի պէտս որբոց, այրեաց և կարօտելոց, նախ՝ վասն երկարութեան կենաց նոցա, երկրորդ՝ առ ուղղել զբարոյս նոցա, երրորդ առ 'ի բազմացուցանելոյ զմարդիկ, և չորրորդ վասն գործելոյ զերկիր արդաւանդ, և զայն՝ նախ 'ի փառս Աստուծոյ. երկրորդ 'ի ծառայութիւն Թագաւորի. երրորդ 'ի սէր և 'ի պատիւ անձին իւրոյ, չորրորդ վասն հասարակաց օգտի.

## ԳԼՈՒԽ Է.

### Յաղագս հաւատարմութեան:

Հաւատարմութիւն է անփոփոխն լինել յիրս, 'ի խորհուրդս, 'ի բանս և 'ի գործս զոր այլք հաղորդեն նմա, և պահել զգաղտնիս: Այր կատարեալ խորհի քաջ և ընտրէ թէ երբ կամ զիարդ և որչափ պարտ իցէ 'ի վեր հանել և յայտնել բանս ինչ կամ խորհուրդ եւ կամ գործ, նոյնպէս ընտրել զայն որում պարտի 'ի վեր հանել, և ըստ այնմ առնել.

Երկրորդ՝ այր կատարեալ յառաջ քան զառնելն ինչ խորհի ընդ մտերիմ և հանճարեղ բարեկամս, կշռէ ընդ նոսա զվախճան գործոյն և զայլ ևս հանգամանս:

Հաւատարմութիւնն պարտի տեւել մինչեւ 'ի ժամանակն որ եդեալ է նմա 'ի պահպանութիւն խոստման կամ իրաց. և կամ խորհրդոց․ և եթէ մշտնջենաւոր իցէ խոստումն, պարտի տեւել մինչեւ ցմահ։

## ԳԼՈՒԽ Ը․

Թէ ընդէր հաւատարմութիւնն եղաւ նշան հաւատոյ 'ի ցուցակի։

---

Հաւատարմութիւնն է հաստատութիւն 'ի միտս, 'ի բանս և 'ի գործս առ այն զոր ընկալաւ ոք իբրև ճշմարիտ։ Եւ զի հաւատք են ճանաչումն ճշմարտութեան, ապա հաւատացելոյն պարտ է լինել հաւատարիմ, այն է հաստատուն յայնմ զոր ծանեաւն և ընկալաւ։ Եւ զի ամենայն ինչ իւրով յատուկ նշանաւ ճանաչի, հաւատացեալն եւս ոչ այլով իւիք մարթի ծանօթ լինել եթէ ոչ հաւատարմութեամբն։ Զէ մարթ ումեք պահանջել զի այլք տացեն վկայութիւն հաւատոյ նորա, եթէ չցուցանէ նա զնշան հաւատոյն իւրոց։ Հաւատարմութիւնն իբրև նշան հաւատոյ այնպէս հաստատուն և հաւաստի է մինչեւ 'ի հաւատարմութենէ մակաբերել զհաւատս, որպէս 'ի հաւատոյ մակաբերեմք զհաւատարմութիւն. ուստի կարեմք ասել Այս ինչ

ոք է հաւատացեալ, ապա է հաւատարիմ. է հաւատարիմ, ապա է հաւատացեալ:

Այլ նախ հաւատարմութիւնն պարտի լինել հանդերձ բերկրութեամբ և գթութեամբ: Երկրորդ՝ պարտ է գիտել զի բաց 'ի նշանաց դոն և ճանաչումն և յատկութիւն: Տեսանելով զնշանն միայն չէ մարթ 'ի վերայ ածել թէ է հաւատացեալ. զի բազում անգամ նշանք խաբեն. ուստի պարտ է խնդրել յետ նշանաց զճանաչումն եւս և զյատկութիւն, զորոց 'ի ստորև խօսեսցուք:



## ԳԼՈՒԽ Թ.

Յաղագս ողջախոհութեան:



Ողջախոհութիւն է լինել ողջ, այն է՝ ուղիղ 'ի խորհուրդս, և 'ի կամս: Ապա ողջախոհութիւն է նախ ուղղութիւն 'ի դատել, միշտ մտադիւրութեամբ խորհել զուղիղն, զճշմարիտն և զմնայուն, և ոչ զսնոտին, զմոլարն և զանցաւոր: Երկրորդ՝ ողջախոհութիւն է զգաստութիւն 'ի կերակուրս և յըմպելիս, եւս և 'ի զգեստս, 'ի բանս, 'ի գործս և 'ի վարս: Երրորդ ողջախոհութիւն է մանաւանդ համեստութիւն կամ չափաւորութիւն 'ի ցանկու-

թիւնս , այն է՝ ազատ լինել 'ի վաւաշոտութենէ և յամենայնէ որ աղտեղեն զմիտս , զսիրտ և զլեզու ։ Միով բանիւ ողջախոհն զգուշանայ յամենայն զգայական ախորժակաց ։

## ԳԼՈՒԽ Ժ.

*Թէ ընդէր ողջախոհութիւնն եղաւ ճանաչումն հաւատոյ ։*

Ի նախընթաց գլուխ գրոցս ասացաք թէ զինչ իցէ ողջախոհութիւն ։ Իսկ վասն հաւատոց գիտեմք զի հաւատք են իմաստութիւն և խելամտութիւն ճշմարտութեան ։ Աստի յայտ է թէ հաւատացեալն որ իմաստունն է և խելամուտ ճշմարտութեան՝ 'ի հարկէ պարտի լինել ողջախոհ , այն է ուղիղ 'ի միտս , 'ի բանս , 'ի գործս և 'ի վարս իւր որով ճանաչի իսկ ։ Այլ ողջախոհութիւնն պարտի լինել համբերութեամբ և ներողութեամբ , զի համբերութիւնն և ներողամտութիւն արբանեակք են ողջախոհութեան ։

# ԳԼՈՒԽ ԺԱ.

*Յաղագս մեծանձնութեան։*

---

Մեծանձնութիւն է բարձրութիւն և պերճութիւն ոգւոյ որ արհամարհէ զամենայն ստորինս և անարժան ինչ իւր։ Մեծանձնութիւնն է աստուածանմանութիւն ըստ կարողութեան մարդոյ։ Զի որպէս Աստուած ոչ կարօտի իմիք և ոչ խնդրէ ինչ յումեքէ այլ շնորհէ միշտ առատութեամբ, նոյնպէս մեծանձնն ոչ խնդրէ 'ի մարդկանէ բայց 'ի լինել հարկի. յԱստուծոյ միայն խնդրէ, իսկ մարդկան յօժար է տալ մանաւանդ քան առնուլ 'ի նոցանէ։ Երկրորդ՝ մեծանձնն 'ի հաւատոց իւրոց առնէ զոր ինչ և կամի ըստ նախասահմանութեանն Աստուծոյ, զի գիտէ զօրինակ կալոյ յաղօթս, և Աստուած լսէ աղօթից նորա ըստ վճռոյ նախասահմանութեան իւրոյ։ Երրորդ՝ մեծանձնն ոչ լքանի, ոչ տաղտկայ, ոչ հառաչէ, ոչ տրտմի, ոչ պահէ ոխս։ Չորրորդ՝ մեծանձնն հաստատուն է 'ի միտս իւր և ծանր 'ի բանս և 'ի գործս. զի երկնչի թէ գուցէ լիցի սխալ կամ անիրաւութիւն ինչ, և յետոյ ստրջացի։ Միով բանիւ մեծանձնն որ է հաւատացեալ հաւատարիմ՝ բովանդակէ յինքեան զայն ամենայն զորոց խօսեցաք, իբրև թէութիւն հաւատոյ, յուսոյ և սիրոյ. այն է՝ ժրութիւն հանդերձ

համեստութեամբ, խոհեմութիւն հանդերձ պարկեշտութեամբ, արիութիւն հանդերձ խոնարհութեամբ․ ընտրել զհամակիրն, որոշել զյարմարութիւն տեղւոյն, ճանաչել զժամանակն փորձիւ և չափաբերութեամբ, այսինքն՝ թուելով համեմատել և գտանել․ արդարութիւն հանդերձ շնորհօք, սրբութիւն հանդերձ բարեխառնութեամբ, ճշմարտութիւն անփոփոխ։ Դարձեալ՝ գթալ առ ամենեսին, ներել յանցաւորին, բերկրել հանապազ, համբերել ըստ պայմանեալ ժամանակին, հաւատարիմ յամենայն գործս և իրս, ողջախոհ ըստ ամենայնի, մեծանձն, պատրաստ միշտ առնել շնորհս առ ամենայն մարդիկ, և առնուլ շնորհս յԱստուծոյ։

Մեծանձնութիւնն եւս ըստ օրինակի հաւատոց երեքկին է․ բնական, իմացական և քաղաքական։

Բնական մեծանձնն օգնէ զօրութեամբ մարմնոյ և ուժեղութեամբ․ է նա որպէս ձեռն Աստուծոյ, հասանէ 'ի վերայ տկարին, հիւանդի, ծերոյ և գերւոյ․ զօրացուցանէ զնոսա̀, դարմանէ, լինի նեցուկ և ազատիչ նոցա։

Որ իմացականութեամբ մեծանձնն է՝ է իբրև զբերան Աստուծոյ․ ուսուցանէ, խրատէ, մխիթարէ, կրթէ, այլովքն հանդերձ։

Որ մեծանձնն է քաղաքականապէս՝ յընչից և 'ի գոյից իւրոց լինի նպաստ։

# ԳԼՈՒԽ ԺԲ.

*Թէ ընդէր մեծանձնութիւնն իցէ յատկութիւն հաւատոյ։*

---

Ասացաք եթէ մեծանձնութիւնն է աստուածանմանութիւն ըստ կարողութեան մարդոյ, քանզի մեծանձնն յօժար է տալ մանաւանդ քան առնուլ։ Զիարդ հնար է մարդոյ ունել զայս յօժարութիւն, եթէ չունիցի ճշմարիտ և կատարեալ հաւատս յԱստուած որ տուիչն է ամենայն բարեաց, և հատուցանէ արդարութեամբ ըստ գործոց իւրաքանչիւրոց, ողորմած առ ողորմածս, և սիրէ զտուրս զուարթառատս։

Ապա յայտ է թէ յատկութիւն ճշմարիտ հաւատոյ է մեծանձնութիւն, որ ոչ այլուստեք կարէ յառաջ գալ եթէ ոչ 'ի հաւատոյ։ Եւ արդարև բարերարութիւն, ողորմութիւն, շնորհք, առատաձեռնութիւն, և ամենայն գործք մեծանձնութեան յառաջ գան 'ի հաւատոյ։ Նոքա որ ոչ ունին ճշմարիտ և կատարեալ հաւատս՝ չեն առատաձեռն, և տուրք նոցա չեն զուարթ և յօժարական, այլ կծծի, և առժամանակեայ։

Դարձեալ, և զի հաւատք են իմաստութիւն և խելամտութիւն ճշմարտութեան, և

մեծանձնութիւն է բարձրութիւն և վսեմու֊
թիւն ոգւոյ, իմաստունն և խելամուտ ճշմար֊
տութեան 'ի հարկէ ունի ոգի պերճ և գեր 'ի
վերոյ քան զամենայն գծուծս և ստորինս որ
են իրք երկրաքարշք և մարմնաւորք ։

Մեծանձն ոգւոց վայելէ արուեստ, իշխա֊
նութիւն, դատաւորութիւն, բժշկականու֊
թիւն, հողագործութիւն, հովուութիւն ըստ
երկրաւորին. և ըստ հոգեւորին՝ եպիսկոպոսու֊
թիւն, վարդապետութիւն. 'ի քաղաքականու֊
թեան՝ վաճառականութիւն, և պէսպէս ար֊
ուեստից տեսչութիւն ։ Ապա պարտ է թագա֊
ւորաց և ազգաց ընտրել զայր մեծանձն 'ի գործ,
զի արժան է ըստ գործոյն ընտրել զմարդ, և
ոչ մարդոյ գտանել գործ ։

---

## ԳԼՈՒԽ ԺԳ.

Յաղագս բերկրութեան ։

---

Բերկրութիւն է խնդութիւն և զուարթու֊
թիւն ընդ բարիս որ հաճոյն և ցանկալի են ան֊
ձին, եթէ իցէ իր, եթէ բան և եթէ գործ ։
Բարիք ընդ հանրապէս կախեալ կան զհաճու֊
թենէ կամաց կամ 'ի բերմանէ ներքին բաղ֊
ձանաց ։ Բարիք բաժանին 1. 'ի բնական կամ

զգայական. 2. 'ի բարոյական կամ 'ի հոգեւոր. 3. 'ի քաղաքական կամ ստացական:

Ի զգայականս և 'ի բանականս քաղաքական բարիք 'ի կրկին աղբերաց գան յառաջ. մի՝ յԱստուծոյ կամ 'ի բնութենէ, երկրորդ՝ 'ի խորհրդոց, 'ի կամաց կամ 'ի բարոյականութենէ մարդկան. Բարիքն որ յԱստուծոյ. և 'ի բնութենէ՝ մի են յաչս իմաստնոց. Իսկ վասն բարեաց որ են 'ի խորհրդոց և 'ի կամաց մարդկան՝ պարտ է գիտել զի չէ արժան վստահ լինել 'ի նոսա, եթէ չիցէ հաստատեալ վստահութիւնս այս 'ի պայմանս մուրհակօք, վկայիւք և ըստ կանոնաց եդելոց յօրէնսդիր իշխանութենէ, միջամտութեամբ կամ վաւերացմամբ գործադիր իշխանութեան. Այլ վասն բարեաց որ են յԱստուծոյ և 'ի բնութենէ՝ ոչ է այսպէս. 'ի նոսա մարթ է վստահ լինել. զի բնութիւն և Աստուած անփոփոխ են և անվրէպ, այլ մարդիկ փոփոխելիք և վրիպականք. վասն որոյ. որ յուսանն հաւատով յԱստուած և 'ի բնութիւն՝ կարող են համբերել, այն է՝ տոկալ, տեւել, կալ հաստատուն սպասելով ժամանակին յորում գիտեն թէ կատարելոց է անվրէպ և անխաբ այն որում ակն ունին, և թէ Աստուած 'ի բնութեան հաստատեալ և վըճռեալ է թէական վճռով, այսինքն՝ զի մարդն հասանիցէ բարեաց բնականաց եթէ առնիցէ զայս ինչ կամ զայն ինչ, եթէ վարիցի այսու

կամ այնու օրինակաւ, զորոց կախեալ կայ կատարումն իրացն ըստ անշարժութեան և միօրինակութեան բնութեան ։

Արդ բերկրելն ընդ զգալի բարիս է այնպիսեաց որ զգայուն միայն են, այն է՝ անասնոց. և բնական մարդիկ բերկրելով ընդ զգալի բարիս՝ հաւասարեն անասնոց. ապա բանական մարդոյ պարտ է բերկրել մանաւանդ ընդ իմացական բարիս, զոր համարիմք կամ մանաւանդ ընդունիմք լինել բարիս կշռելով հանճարով և տրամաբանութեամբ, կամ լաւեւս ասասցուք՝ հաւատով խելամուտ լեալ գիտեմք զի են նոքա արդարև բարիք. և զի 'ի ճշմարիտ հաւատոյ բխէ յոյս աներկեւան թէ բարիքն այն լինելոց են յերջանկութիւն մեր առյապա, ծնանի 'ի մեզ բերկրութիւն 'ի յուսոյ անտի՝ ուստի և յիրաւի ասեմք թէ բերկրութիւնն է նշան յուսոյ որպէս տեսցուք 'ի ստորեւ ։

Բերցուք օրինակ ինչ բերկրութեան ծագելոյ. 'ի յուսոյ ։ Ըստ յարմարութեան տեղւոյ կամ ըստ ժամանակի սերմանեմք ուրեք 'ի գարնան կամ յայլ եղանակս տարւոյ, և զի գիտեմք թէ արդիւնաւոր լինելոց է սերմն մեր վասն յարմարութեան տեղւոյն և ժամանակին, իսկոյն ծնանի 'ի մեզ յոյս աներկեւան ըստ չափոյ թէ վայելելոց եմք առյապա 'ի պտղոյն. և ահա յաջորդէ յուսոյն՝ բերկրութիւն. և զի-

տորդ հնար է չբերկրել, բայց եթէ մաղձոտ ոք իցէ կամ յիմար ։

Ասէ զհետ գայ թէ նա որ ոչ բերկրի՝ ոչ յուսայ, և որ ոչն յուսայ՝ ոչ յուսայ զի չունի հաւատս ։ Եւ որ ոչն ունի հաւատս չէ բանական այլ լոկ զգայուն կենդանի ։

## ԳԼՈՒԽ ԺԴ.

*Թէ ընդէր բերկրութիւնն իցէ նշան յուսոյ ։*

---

Ի բերկրել մարդոյ զուարթանայ և զուարճանայ սիրտն, զի տարածի արիւնն ընդ ամենայն երակս փոխանակ յորդելոյ և սեղմեալ պնդելոյ 'ի սրտի ։ Ի տարածել արեանն ընդ ամենայն անդամս 'ի ձեռն երակաց, մարմինն զօրանայ և ժրանայ, և ամենայն գործարանք դիւրաւ և բարւոք կատարեն զիւրեանց պաշտօն . Ջիղք և ուղեղն զիմացական գործողութիւնս, թոքք զտուրեւառ շնչոյն, նոյնպէս և այլք 'ի գործարանաց զիւրեանց պէտս պաշտամանն ։ Դարձեալ և միտք և կամք եւս զօրացեալ զդէմ ունին զգայական ախորժակաց և կրից, յստակագոյնս տեսանէ հոգին զճշմարտութիւն, կամքն յօժարագոյնս սիրեն զբարին, և այլ եւս բազում ինչ պատահեն

մարդոյ զորոց խօսել մի լուս միայն աւելորդ է։ վասն այսորիկ ոյր բերկրեալ առաւել զերծ է 'ի կրից քան զայլ ոք։ Արդ զինչ իցէ պատճառ այսպիսի և այսչափ փոփոխութեանց որ լինին 'ի ձեռն բերկրութեան. ապաքէն ոչ այլ ինչ է եթէ ոչ յոյս աներկեւան։ Զի յոյս է որ տայ մարդոյ ակնկալել բարեաց եթէ զգայականաց և եթէ քաղաքականաց, և մտաւանդ բանականաց, և հաճել և հանգչել այսու խորհրդով եթէ վայելելոց է առյապա, նա և 'ի մօտոյ իսկ յերջանկութեան և 'ի լաւութեան։ Ապա յայտ է թէ բերկրութիւն նշանակ է յուսոյ, այնպէս զի 'ի տեսանել մեր զոք զի չունի բերկրութիւն յանձին, իմանամք թէ զուրկ է 'ի յուսոյ կամ է 'ի յուսահատութեան. և չունելն յոյս յայտ առնէ զպակասութիւն հաւատոց, ապա և չէ այնպիսին բանական, այլ լոկ զգայուն կենդանի, որպէս ասացաք.

Այլ պարտ է գիտել զի բերկրութիւն ոչ է միշտ նշան յուսոյ. զի 'ի նշանաց խաբիմք, եթէ ոչ խնդրեսցուք զճանաչումն և զյատկութիւն նոյն յուսոյ, յորոց կարեմք ստուգել թէ դոյ արդարեւ յոյս. և եթէ դոյ յոյս, ապա դոն և հաւատք։ Զոր օրինակ մարթ է ումեք խաբել և կարծել թէ դոյ հուր տեսանելով զգոլորշի ինչ և համարելով զայն ծուխ. սոյնպէս մարթ է խաբել 'ի բերկրութենէ, որում հնար է յառաջ գալ երբեմն յանդգնութենէ

կամ յանմտութենէ ։ Ցայտ է թէ զայսպիսիս չէ արժան ընդունել իբրեւ զմարդ ճշմարիտ բանական, զի են զուրկ 'ի լուսոյ յաջողելոյ 'ի հաւատոց, և յայնպիսի լուսոյ միայն ծնանի ճշմարիտ բերկրութիւն ։ Իսկ թէ ճշմարիտ իցէ բերկրութիւն ուրուք, այն է՝ թէ իցէ՞ արդարև 'ի լուսոյ յաջողելոյ 'ի հաւատոց, ոչ այլով իւիք մարթ է ստուգել բայց 'ի ձեռն ճանաչման և յատկութեան լուսոյ ։

## ԳԼՈՒԽ ԺԵ.

### Յաղագս համբերութեան։

Համբերութիւնն է տոկալ վշտաց և նեղութեանց ։ այն է՝ հաստատութեամբ տանել նոցա, առանց չփոթութեան, վհատութեան և յուսահատ լինելոյ, այլ մանաւանդ ըստ կարի ջանալ առ ոչինչ գրել զնոսա դիւցազնութեամբ։

Դարձեալ համբերութիւնն է երկայնմտութիւն, այն է՝ ոչ լքանել 'ի դժուարութեանց և 'ի բաց կալ վաղվաղակի, զի համբերութեամբս այսուիկ որ է յարատեւութիւն՝ մարթ է յաղթել բազում դժուարութեանց որ զառաջինն թուին անհնարին առ յաղթել։ Այսպէս համբերութիւն կեցուցիչ է, վասն որոյ ասաց Տէրն թէ Որ համբերեսցէ իսպառ՝ կեցցէ ։

# ԳԼՈՒԽ ԺԶ․

*Թէ ընդէր համբերութիւնն եղաւ լինել ճանաչումն սիրոյ ։*

---

Գործ համբերութեան է աներկբայութիւնն յուսոյ 'ի ձեռն ուղիղ ճշմարիտ և կատարեալ հաւատոց ։ Յոյսն այն է շնորհ այնր ճշմարիտ և կատարեալ հաւատոյ ․ Նշան յուսոյն է բերկրութիւնն , իսկ 'ի բերկրութենէ անտի ծնանի առողջութիւն մարմնոյ , 'ի մարմնոյ առողջութենէ՝ ամփոփին միտք , և 'ի մտաց ամփոփմանէ անտի զօրանայ և լինի կատարեալ հանճարն ։ Յայնժամ հոգին 'ի ձեռն ամփոփ մտաց և զօրացեալ հանճարոյ իմանալի աչօք սկսանի յանդիման առնել իւր զբարիսն ապագայս որ աներեւոյթն են , և այնպէս չափաբերապէս , այն է՝ որոշ և ստուգիւ գիտէ զչափն և զկշիռ եղելոց , տակայ առանց տրտնջանաց և դժգոհութեան , ուստի և կայ մնայ անփոփոխ և հաստատուն մինչև 'ի ժամանակն զոր չափաբերապէս հաւաստեաւ ծանուցեալ գիտաց ։

Վերագոյնն խօսեցաք զբարեաց և զբաժանմանէ նոցա ․ ապա ցուցաք թէ բարիքն բնականք որ յԱստուծոյ են և 'ի բնութենէ՝ անշարժ և անփոփոխ են ըստ օրինաց բնութեան

որ միօրինակն և հաստատուն է։ Արդ ասեմք թէ ՚ի բարիս որ յԱստուծոյ և ՚ի բնութենէ են՝ պարտ է յուսալ աներկեւան. այս և համբերել հաստատութեամբ և վստահութեամբ առանց տրտնջելոյ և վհատելոյ։ Որ ունի զյոյս աներկեւան ՚ի Հաւատոց՝ ՚ի հարկէ ունի և ըզ համբերութիւնս զայս, վասն որոյ յիրաւի ասացաւ թէ համբերութիւնն է ճանաչումն յուսոյ. զի ՚ի համբերութենէ անտի ճանաչի հաւաստեաւ եթէ ունի այնպիսի յոյս աներկեւան ՚ի Ճշմարիտ և ՚ի կատարեալ Հաւատոց։



## ԳԼՈՒԽ ԺԷ·

Թէ զինչ իցէ պատրաստութիւն։

---

Պատրաստութիւնն է զատանել կազմ և յարդար յառաջագոյն քան զբան ինչ կամ զգործ կամ զիրողութիւն, ունելով որ ինչ կարեւորն և պիտանին է բանին, գործոյն կամ իրողութեանն որ առաջի կայ։

Պատրաստութիւն մարթի լինել ուսումն ինչ կամ նիւթ կամ գործի կամ կարգադրութիւն ինչ, այլովքն հանդերձ։ Յուշիք և ՚ի Ճշմարիտ Հաւատոց յուսամք աներկբայ, և ՚ի յուսոյ անտի բերկրիմք, և ՚ի բերկրութենէ

անտի համբերեմք. և համբերեմք, քանզի եմք կազմ և պատրաստ ամենայն կարեւորօք առ այն առ որ յուսամք դիտելով. այն է՝ հաւատալով թէ լինելոց և կատարելոց է ապաքէն։

Պարտ է դիտել զի 'ի պատրաստութեան՝ կազմութիւն մեր կամ հանդերձանք պէս պէս են։ Եթէ զպատուոյ իցեն բանք, պատրաստութիւն մեր պարտի լինել իմաստասիրութեամբ; այն է՝ զգաստութեամբ և իմաստութեամբ. եթէ զաստիճանէ իցեն բանք, պատրաստութիւնն պարտի լինել ուսմամբ և գիտութեամբ. եթէ զշահուց իցեն բանք, պարտի ունել 'ի պատրաստի ժրութիւն, համեստութիւն, խոհեմութիւն, պարկեշտութիւն (չափաւորութիւն), արութիւն, խոնարհութիւն։ Եթէ իցեն բանք զշինուածոց, պատրաստութիւն նիւթոց պահանջի, որպէս՝ փայտի և քարի և կրոյ, այլովքն հանդերձ։ Վասն ճանապարհի՝ պահանջի պաշար և հանդերձ, այլովքն հանդերձ։ Ապա ոչ է մարթ հաւատացելոյն յուսալ բերկրութեամբ և համբերել հաստատութեամբ առանց պատրաստութեան կարեւորացն։

# ԳԼՈՒԽ ԺԸ·

*Թէ ընդէր պատրաստութիւնն եղաւ յատկութիւն յուսոյ։*

---

*Գործ պատրաստութեան է, որպէս տեսաք 'ի նախընթաց գլխի, յառաջագոյն հոգալ և հայթայթել զպէտս կարեւորս։ Եթէ յուղիղ և 'ի ճշմարիտ հաւատոց ունիմք յոյս և համբերեմք, յայտ է թէ հոգացեալ և հայթայթեալ ունիմք զմիջոցս կարեւորս, ապա թէ ոչ զիարդ կարէ համբերութիւն մեր լինել հաւաստեաւ և իմաստութեամբ· այլ հարկ է զի այնպիսի համբերութիւն իցէ սուտ և ծաղրական և մոլորական· և անտի զհետ գայ թէ և յոյս մեր չէ աներկեւան վասն որոյ և ոչ 'ի հաւատոց։ Ապա զոր օրինակ աներկեւանութիւն յուսոյն որ 'ի հաւատոց՝ ճանաչի համբերութեամբ, ճանաչի ևս 'ի պատրաստութենէ իբրև 'ի յատկութենէ, այսինքն՝ իբրև 'ի պայմանէ առանց որոյ ոչ։ Զի Աստուած որ արարն զամենայն հաստատութեամբ և օրինօք զոր հաւատք ծանուցանեն մեզ, յորմէ և յուսամք անշուշտ թէ ըստ անվրէպ օրինաց նորա հասանելոց եմք այնմ զոր յուսամք, թէպէտ վճռով սահմանեալ է հասանել մեզ այնմ զոր հաւատով գիտացաք և յուսով ակն ունիմք և համբերեմք· և մին ևս 'ի թէութեանց անտի վճռոյն Աս-*

տուծոյ է պատրաստութիւն միջոցաց ։ Ցոյս որ առանց պատրաստութեան է՝ չէ ճշմարիտ յոյս , զի զուրկ է 'ի յատկութենէ իւրմէ ։ Որ յուսայն աներկեւան 'ի հաւատոց՝ պատրաստութեամբ միջոցաց է աներկեւան և նովին ճանաչի ։

Ցայսմ ամենայնէ ինքնին զհետ գայ եթէ ամենայն ինչ ունի զիւր պատրաստութիւն և զմիջոց ։ Այլ է միջոց թագաւորաց և դատաւորաց 'ի բարւոք վարել զժողովուրդս ․ այլ են միջոցք այնոցիկ որ 'ի բնութենէ յուսան ինչ կամ 'ի քաղաքականութենէ կամ յարուեստից , այլովքն հանդերձ ։ Ոմն պարտի ունել զիրաւագիտութիւն , այլ ոք զփիլիսոփայութիւն , միւս ևս ոք զայս ինչ ուսումն կամ զարուեստ կամ զգիտութիւն կամ զհմտութիւն կամ զփորձառութիւն ։ Այն որ ելանէ 'ի ճանապարհ և ակն ունի հասանել յուշ եդեալ նպատակն՝ չկարէ հասանել և 'ի զուր աշխատի , եթէ չունիցի զբուն և զսեպհական միջոց և զպատրաստութիւն առ այն յոր հասանելն 'ի մտի եդեալ է ։ Աստի յայտ է թէ այս ամենայն պատրաստութիւն , համբերութիւն , յոյս՝ ունին ըղ հաստատութիւն իւրեանց 'ի հաւատոց ։ Ունել պատրաստութիւն ըստ առաջիկայ իրին և գործոյ՝ անհրաժեշտ պիտոյ է , ապա թէ ոչ ամենայն ազգք ձախորդութեանց , չաջողութիւն , վնասք , տոյժք և կորուստք անվրէպ մօտալուտ և վերահաս են ։

## ԳԼՈՒԽ ԺԹ.

### Յաղագս գթութեան ։

Գթութիւն է շարժումն սրտի 'ի նպաստ ուրուք որ գտանի 'ի վիշտս ինչ կամ 'ի վտանգս. և ծնանի գութն ճշմարիտ յիմացականութենէ, այն է՝ 'ի հաւատոց որ քաջ հաստ առնէ վըտանգի անձին տառապելոյ, թէպէտ չիցէ նա 'ի յայտնի ինչ տառապանս կամ չզգայցէ զխուր վիճակ ցաւագին և զաղէտս որում նշաւակն է.

Գութն է երբեմն զգացումն լոկ, երբեմն ևս 'ի համակրութենէ 'ի բարեբարոյութենէ, այլովքն հանդերձ. Այլ ճշմարիտ գթութիւն է 'ի հաւատոց, կամ յիմացականութենէ, այն է 'ի ճշմարիտ ճանաչմանէ.

## ԳԼՈՒԽ Ի.

### Թէ ընդէր եղաւ գթութիւնն նշան սիրոյ։

Զգործոյ գթութեան ասացաք թէ է վըշտակից լինել և արգահատել նեղելոյն։ Ասացաք ևս թէ յայլ և այլ պատճառաց մարթի գալ յառաջ գթոյ. նախ՝ 'ի հաւատոց և յիմացութենէ, և գութն որ իմացմամբ և 'ի հա-

ւատոց է՝ զգացումն ինչ է անդրադարձ։ Երկրորդ՝ 'ի համակրութենէ եւ ծնանի գութ. և երրորդ 'ի բարեբարոյութենէ, այն է 'ի փափկութենէ զգածման. յայս գութ բաղում ինչ նպաստէ ունակութիւն, և կազմութիւն ջղաց և գործարանաց։ Այլ բուն և ճշմարիտ գութն որ յիմացականութենէ՝ է իմաստասիրական, բանաւոր և առաքինական։

Եւ զի սէրն է բերումն բնական և գութն է շարժումն այնր բերման, սակս յիրաւի է ասել թէ գթութիւն է նշան սիրոյ, զի յայս առնէ զգայութիւն սիրոյ 'ի սրտի գթացողին։ Իբրեւ գթամք հաւատարմութեամբ և բերկրութեամբ, անդէն և անդ ստուգեալ լինի սէր մեր։ Բայց և այնպէս տակաւին գթութեամբ լոկով ոչ ճանաչի սէր. հարկ է որոնել զճանաչումն և զկատարութիւն նորա։

## ԳԼՈՒԽ ԻԱ.

### Յաղագս թողութեան։

Թողուլն է արձակել զոք որ իցէ կալեալ կամ ըմբռնեալ։

Պարտ է գիտել նախ զի չորեքումբք օրինակօք ըմբռնի ոք. Իրօք, Ձեռամբ, Բանիւ և Մտօք. և չորեցունց ըմբռնմանցս տարբերու-

*թիւնք այլակերպք են 'ի միմեանց . թէպէտև անունն մի է , այլ գործն և օրինակ՝ այլազգ :*

*Ցայտ է թէ ոչ ոք լինի կալեալ կամ ըն-բռնեալ արդեամբք և օրինօք առանց իրիք յանցանաց . Ուստի պատճառք ըմբռնման են . Առաջին՝ մեղանչել կենաց և առողջութեան . Երկրորդ՝ մեղանչել պատուոյ ընկերին , և Երրորդ՝ մեղանչել ստացուածոց նորա : Վասն այսց երից կարգաց յանցուածոց ըմբռնին մարդիկ և արկանին 'ի կալանս , 'ի կապանս և 'ի մահ եւս մատնին :*

*Թողուլն է ներել վասն երեցունց եւս կարգաց յանցանացս . այլ ներելով կամ թողլով ոչ է պարտ իմանալ զարձակումն 'ի կապանաց յանցաւորին , այլ զարձակումն նորա 'ի կապանաց սրտի այնր առ որ մեղաւն :*

*Ապա որ թողուն՝ պարտի թողուլ զոխ , զվրէժ և զոգի հատուցանելոյ չարիս և զվնաս փոխարէն չարեաց և զվնասուց :*

## ԳԼՈՒԽ ԻԲ .

*Թէ վասն էր թողութիւնն եղաւ ճանաչումն սիրոյ .*

---

**Ի** *վերագոյն գրելոց անտի յայտ եղև թէ զինչ է թողութիւն . այժմ պարտ է մեզ զպատ-*

ճառէ նորա խօսել։ Երեք են որ յորդորեն ըզ մեզ թողուլ. Առաջին՝ վարդապետութիւն Աւետարանին. Երկրորդ՝ անգիտութիւն կամ տըկարութիւն յանցուցելոյն. Երրորդ՝ յամօթ առնելոյ վասն զնա։ Վասն միոյ այսց երից պատճառաց հարկ է մեզ թողուլ յանցուածոց ընկերին։

Իսկ նշանակք թողութեան են. չյիշել զյանցանս մեղուցելոյն. օգնել նմա անյիշաչարութեամբ 'ի վիշտս նորա ըստ կարի մերում ամենայն զօրութեամբ. տովին յայտնի լինի ուղղութիւն մտաց մերոց և անկեղծութիւն 'ի ներըն. վասն այսորիկ յիրաւի եղաւ թողութիւնն ճանաչումն սիրոյ. զի ուր չգուցէ սէր՝ անդ չիք ներել և անոխս առնել. և այնչափ առաւել ներէ ոք և անոխս առնէ զյանցանս և զթերութիւն ուրուք, որչափ առաւել սիրէ զնա։

Արդ քանզի ասացաւ թէ առաջին պատճառ թողլոյ մեր զյանցանս ընկերին է պատուէր Աւետարանին, այս պատուէր ստիպէ ըզ մեզ ներել մանաւանդ եղբարց հաւատակցաց։ Որ ոչն թողուցու ընկերին՝ զիարդ ունիցի համարձակութիւն խնդրելոյ ներումն յայլոց, մանաւանդ յԱստուծոյ։

Իսկ ներել այլոց վասն տկարութեան՝ է վասն այնորիկ զի և մեք ընդ նովին տկարութեամբ եմք, և 'ի վտանգի մեղանչելոյ առ

այլս ։ Այսմ եւս օրինակ Տէրն որ առողջս առնէր առ. Հայր թէ թող դոցա զի ոչ գիտեն զինչ գործեն ։

Երրորդ պատճառն ներելոյ է յանձն առնել զյանցուցեալն · զի ներելով կուտեմք կայծակունս հրոյ 'ի գլուխ նորա , այն է՝ ամաչեցուցանեմք զնա 'ի բաց կալ 'ի չարակամ մտացն վնասակարաց ·

## ԳԼՈՒԽ ԻԳ.

Յաղագս ողորմութեան ։

---

Ողորմելն է տալ տուրս կարօտելոց , այն է՝ առնել ողորմութիւն որոց ոչն ունիցին ինչ ։ Կարօտութիւնն երեքկին է · բնական , իմացական կամ բարոյական և քաղաքական ·

Բնական կարօտութիւն է թերութիւն ինչ կամ խեղութիւն մարմնոյ ունել · ողորմիլ սոցա է խնամել զնոսա · և ողորմութիւնն առ այս կարօտութիւն է բնական ողորմութիւն ·

Իմացականն կամ բարոյականն կարօտութիւն է թերութիւն մտաց և բարուց , որպէս խելագարութիւն և փառթամութիւն 'ի բարս ։ Ողորմել այսպիսեաց է դարմանելն և խրատել և ուսուցանել և այլքն որ 'ի կարգին ·

Քաղաքական կարօտութիւն է նեղութիւն և աղքատութիւն առ 'ի չգոյէ պիտոյից կենաց, որպէս կերակրոց և ըմպելեաց, հանդերձից և բնակութեան և այլոց իրաց կարևորաց, եւս և դուզնաքէից որ անհրաժեշտ պիտոյն են։ Ողորմել այսպիսեաց կարօտելոց է տալ զդեպահիկն նոցա և զայն՝ առանց որոյ 'ի վտանգի են կեանք տառապելոյն։ Օգնել քաղաքականապէս կարօտելոց պարտք են ամենայն մարդոյ, այլ այնպէս և այնչափ զի ոչ որ տայն ծանրասցի և նեղեսցի, և ոչ որ ընդունին յղփասցի. զի նպատակ այն է՝ հարկանել զպէտս կարօտելոյն, և ոչ մեծացուցանել զնա, կամ զայլ ոք աղքատացուցանել։



## ԳԼՈՒԽ ԻԴ.

*Թէ վասն էր եղաւ ողորմութիւնն յատկութիւն սիրոյ։*



Զգործոց ողորմութեան և զպէսպէս բաժանմանց նորա եղեն բանք 'ի նախընթաց գըլխի։ Արդ ողորմութիւն այնպէս կից է ընդ սիրոյ մինչև չէ մարթ ըմբռնել զսէր առանց ողորմութեան։ Քանզի արդարև եթէ ոչ հաւատամք, ոչ յուսամք. և եթէ ոչ յուսամք,

ոչ սիրեմք, եթէ ոչ սիրեմք, ոչ գթամք հանդերձ հաւատարմութեամբ և բերկրութեամբ. եթէ ոչ գթամք, ոչ թողումք հանդերձ ողջմտութեամբ և համբերութեամբ. և եթէ ոչ թողումք զյանցանս, ոչ ողորմիմք հանդերձ վեհանձնութեամբ և պատրաստութեամբ. Ապա արդարև ողորմելն է յատուկ սիրոյ. որ ոչն սիրէ՝ չկարէ ողորմել. և որ ոչն ողորմի՝ չունի սէր, զի զուրկ է 'ի յատկութենէ սիրոյ.



# ԳԻՐՔ ՉՈՐՐՈՐԴ



## ԳԼՈՒԽ Ա.

*Ցաղագս արգասեաց թէ զինչ իցեն։*



ԱՐԳԱՍԻՔ *են արդիւնք կամ պտուղ իրիք էական այսինքն՝ իրօք, կամ իբր էական այսինքն բանիւ։ Զոր օրինակ՝ պտուղ էական արգասիք են ծառոյ։ Արգասիք են այն ամենայն որ յառաջ գան 'ի վաստակոց կամ յաշխատութեանց. համբաւ և պատիւ և յարգանք են արգասիք առաքինական գործոց. բժշկութիւն է արգասիք դեղոց, ջերմութիւն է արգասիք հրոյ, տամկութիւն և զովացումն՝ ջրոյ։ Այսպէս իմա և զայլոց։*

*Ի ցուցակի մերում նշանակեալ են արգասիք բնական, իմացական և քաղաքական հաւատոյ, յուսոյ և սիրոյ. զի որպէս ամենայն իրաց են արգասիք, նոյնպէս և հաւատոյ, յուսոյ և սիրոյ հարկ է ունել արգասիս, զորոց յայսմ մասին ճառեսցուք մի ըստ միոջէ։*



# ԳԼՈՒԽ Բ.

Ցաղագս արգասեաց քաղաքական հաւատոյ, յուսոյ եւ սիրոյ։

---

Քաղաքական հաւատոյ արգասիք են Անդորրութիւն մտաց, Երկարութիւն կենաց և Ստացուածք արդարք դարուց 'ի դարս։

Արդ կայ մեզ առաջի քննել թէ ընդէր և զիարդ երեքին այսոքին իցեն արգասիք քաղաքական հաւատոյ, յուսոյ և սիրոյ, զորոց մի ըստ միոջէ ճառեսցուք։

---

# ԳԼՈՒԽ Գ.

Ցաղագս անդորրութեան մտաց։

---

Անդորրութիւն մտաց է հանդարտ, խաղաղութիւն և ապահովութիւն առանց յուզելոյ և առանց վրդովելոյ։

Նա որ ունի կատարեալ և ճշմարիտ հաւատս քաղաքական, այն է՝ վստահութիւն, յետ խօսելոյ կամ առնլոյ և տալոյ կամ գործելոյ ինչ ոչ խորհի զնոցունց, զի յառաջագոյն խօսեցաւ, առ և ետ և գործեաց ժրութեամբ և համեստութեամբ, խոհեմութեամբ և պար-

կեչտութեամբ, արիութեամբ և խոնարհութեամբ ըստ անձին, ըստ երբին, ըստ տեղւոյն և ըստ գործոյն, ըստ ժամանակին և ըստ քանակութեան, արդարութեամբ և շնորհօք, ողջութեամբ և բարեխառնութեամբ, յարաժամ և ամենեւին ըստ ճշմարտութեան։ Նա որ ունի հաւատս՝ գիտէ զայս ամենայն թէութիւնս, զօրինակ և զհանգամանս, և յամենայնի խնդրէ զնշան, զճանաչումն և զյատկութիւն հաւատոյ, յուսոյ և սիրոյ յանձին և յայլս․ զբանս, զիրողութիւնս և զգործս նոքիմբք սահմանէ, ընդ այնց համեմատէ, կարգէ, և ապա ձեռնամուխ լինի 'ի գործ․ և յետ առնելոյ զայս ամենայն՝ բնաւ ոչ խորհի զնոցունց, վասն այնորիկ ունի կատարեալ անդորրութիւն մտաց։ Այլ այս վիճակ մտաց յառաջ գայ 'ի կատարեալ քաղաքական հաւատոց, և է արդասիք նորա։

## ԳԼՈՒԽ Դ․

Յաղագս երկարութեան կենաց թէ զինչ իցէ։

---

Արարիչն բնութեան սահմանեալ է իւրաքանչիւր մարդոյ ժամանակ և սահման կենաց պայմանաւ կամ թէութեամբ և ոչ բացարձակ․

այնպէս զի 'ի ձեռս մարդոյ է կարճել զայն սահման և եղծանել զկեանս իւր 'ի ձեռն մոլութեանց և ազգի ազգի անկարգութեանց ։

Այլ նա որ ունի կատարեալ և ճշմարիտ հաւատս՝ հաւատովն այնուիկ ոչ է յիմար՝ այլ իմաստուն . ոչ է մոլի՝ այլ համեստ, պարկեշտ և զգաստ . չէ անօրէն՝ այլ միշտ և ըստ ամենայնի արդար, սուրբ և ճշմարտասէր ։ վասն այնորիկ ոչինչ գործէ 'ի վնաս առողջութեան և խառնուածոյ մարմնոյ իւրոյ, ուստի և ոչ կարճէ զսահման կենացն և ոչ եղծանէ զնա . նմին իրի կայ հանապազ 'ի ցնծութեան, 'ի բերկրութեան և 'ի հանդարտութեան . և այս է աւասիկ երկարութիւն կենաց ։ Այս վիճակ յառաջ գայ 'ի քաղաքական յուսոյ և է արդասիք նորա ։



## ԳԼՈՒԽ Ե.

Յաղագս արդար ստացուածոց թէ զինչ իցեն ։



Արդար ստացուածք այն են զի ոք 'ի կեանս իւր անդուլ և հանապազորդ աշխատութեամբ և չափաւորութեամբ 'ի շահուց արուեստին իւրոյ, եթէ ազատական իցէ արուեստըն, եթէ մեքենական և եթէ զբաղումն ինչ.

և ծառայութիւն, ստանայ ինչս և ստացուածս առանց խարդախութեան և անիրաւութեան, առանց բռնութեան և յափշտակութեան, և այլոց սոցին նման իրաց։ Եւ այսպիսի ստացուածք միայն և տեւեն դարուց 'ի դարս, զի ոչ ոք նախանձի ընդ նա, ոչ խանդայ կամ դաւ գործէ նմա, և ոչ խորհի հնարս յափշտակելոյ զգոյս նորա 'ի նմանէ, կամ նուազեցուցանելոյ կամ այլով իւիք հանելոյ զնոսա 'ի ձեռաց նորա։ Քանզի նա որ այնպէսն մեծանայ, որպէս ասացաք, ժիր է և համեստ, խոհեմ, պարկեշտ, արի, խոնարհ, ճանաչէ զհամակիրն ըստ իւրին, գիտէ զտեղին ըստ գործոյն, և որոշէ զժամանակն ըստ քանակութեան, արդար է հանդերձ շնորհօք, սուրբ՝ հանդերձ բարեխառնութեամբ, զճշմարտութիւն սիրէ յամենայնի և հանապազ. հաւատարիմ է 'ի բանս և 'ի գործս իւր հանդերձ բերկրութեամբ և գթութեամբ. ողջախոհ կամ ողջամիտ է յամենայնի հանդերձ համբերութեամբ և թողութեամբ. մեծանձն 'ի բնաւս հանդերձ պատրաստութեամբ և ողորմութեամբ։ Եւ պատճառ այսպէսն լինելոյ նորա է սէրն որ բղխէ 'ի յուսոյ յաջողելոյ հաւատով. վասն այնորիկ ասացաք թէ արդարութիւն ստացուածոց են արդասիք քաղաքական սիրոյ։



## ԳԼՈՒԽ Ջ.

*Թէ զինչ իցեն պատճառք արդարեաց քաղաքական հաւատոյ, յուսոյ եւ սիրոյ։*

---

Անդորրութիւն մտաց է պատճառ երկարութեան կենաց, երկարութիւն կենաց լինի պատճառ արդար ստացուածոց, և արդարութիւն ստացուածոց լինի պատճառ տեւողութեան նորա դարուց 'ի դարս։

Արդ մի ըստ միոջէ տեսցուք թէ զիարդ իւրաքանչիւրն 'ի սոցանէ, անդորրութիւն մտաց, երկարութիւն կենաց և արդար ստացուածք դարուց 'ի դարս՝ ծնանին 'ի քաղաքական հաւատոյ, յուսոյ և 'ի սիրոյ։

Նախ պարտ է գիտել զի, որպէս ասցաք, քաղաքական հաւատով իմացեալ լինի վստահութիւն։ Այս հաւատք կամ վստահութիւն լինի հաստատուն և ապահով հնգեդումբք իրօք. այն է՝ նախ յիրաւանց կամ յօրինաց. երկրորդ՝ 'ի սովորութենէ տեղւոյն որ են իբրև երկրորդ օրէնք. երրորդ՝ յօրինաւոր յարաբերութենէ առեւտրական օրինաց. չորրորդ՝ 'ի կանոնաց որ տիրեն 'ի մէջ արուեստագիտաց ըստ իւրաքանչիւր տեղւոյ և ժամանակի. հինգերորդ՝ յարքունական հրամանաց և 'ի կարգադրութեանց։ Որ և իցէ գործ կամ

իրողութիւն կամ դաշինք կամ պայման, եթէ լինիցին համեմատ ըստ հնգեցունց կարգացն այնոցիկ, լինին հաստատուն և տևական, ուստի և ծնանի հարկաւ վստահութիւն։ Որ ունին ուղիղ և ճշմարիտ և կատարեալ քաղաքական հաւատս կամ վստահութիւն՝ խօսին և գործեն զամենայն ժրութեամբ, համեստութեամբ, խոհեմութեամբ, պարկեշտութեամբ, արիութեամբ, խոնարհութեամբ. դարձեալ՝ ըստ իրին, ըստ անձին, ըստ գործոյն, ըստ տեղւոյն, ըստ ժամանակին և ըստ քանակութեան կարգեն, խօսին և գործեն։ Դարձեալ առնեն և խօսին արդարութեամբ, շնորհօք, սրբութեամբ, բարեխառնութեամբ, անփոփոխ ճշմարտութեամբ յամենայնի. դարձեալ՝ հաւատարմութեամբ, բերկրութեամբ, գթութեամբ, ողջախոհութեամբ, համբերութեամբ, թողութեամբ, մեծանձնութեամբ, պատրաստութեամբ և ողորմութեամբ։ Սոքա, որպէս յայտ է, են իսկ թէութիւնք հաւատոյ, յուսոյ և սիրոյ հանդերձ եղանակօք և պարագայիւք իւրեանց, և երիւք նշանօք, ճանաչմամբք և յատկութեամբք։ Որ միանգամ ըստ ամենեցուն սոցա գործեն և առնեն և խօսին՝ 'ի հարկէ վայելեն զանդորրութիւն սրտի։ Սմին հակառակ՝ որ առանց այսոցիկ գործէ և խօսի՝ յիմար է կամ մոլի. և յայտ է թէ 'ի յիմարութենէ և 'ի մոլութենէ ծնանի անհաւատութիւն և յանհաւատ֊

տութենէ՝ անօրէնութիւն, և յանօրէնութենէ ծնանին պէս պէս չարիք, վնասք և ձախողութիւնք. և զիարդ հնար իցէ այնպիսեաց ունել զանդորրութիւն սրտի, քանզի լինին միշտ 'ի կասկածանս և 'ի յոյզս: Եւ պատճառ սորա այն է զի ոչ են գործք կամ բանք նորա 'ի քաղաքական հաւատոց, քանզի չեն համեմատ օրինաց, սովորութեանց, ուխտից և այլ և այլ կարգաց և կանոնաց երկրին. Ապա յայտ է թէ անդորրութիւն մտաց ծնանի 'ի քաղաքական հաւատոց. կամ լաւ ևս ասասցուք, քաղաքական հաւատք կամ վստահութիւն են պատճառք անդորրութեան, որպէս և սմին հակառակ 'ի քաղաքական անհաւատութենէ կամ յանվստահութենէ որ ծագի յանհամաձայնութենէ ընդ քաղաքական օրինաց և կարգաց՝ ծնանին վարանք և կասկածք. և 'ի սոցանէ՝ այլ ևս չարիք մեծամեծք.

Ասացաք թէ յերկարութիւն կենաց են արգասիք քաղաքական յուսոյ. այսր ևս պատճառ յայտնի է և պարզ: Զի եթէ գործք մեր և բանք և ձեռնարկութիւնք են ըստ քաղաքական հաւատոց, և վասն այնորիկ ունիմք զանդորրութիւն մտաց, յայտ է թէ յոյս մեր ևս քաղաքական աներկեւան է, քանզի գիտեմք եթէ հասանելոց եմք 'ի կէտ նպատակի մերոյ. և 'ի լինել մտաց մերոց անդորր և աներկեւան յուսով՝ 'ի հարկէ յերկարին կեանք

մեր, զի միտք և խորհուրդք մեր չեն 'ի խղճի և 'ի խիլթի, 'ի յոյզս և 'ի խռովութեան և 'ի վարանս. Խայթ խղճի, խռովութիւն և յոյզք կամ աշխատութիւն մտաց՝ վնասակարագոյն են առողջութեան, խառնուածոյ և կազմածոյ և կենաց մարդոյ քան զաշխատութիւն մարմնոյ, որ բազում անգամ օգտակար ևս լինի, այլ ոչ երբէք աշխատութիւն մտաց.

Ասացաք դարձեալ թէ արդար ստացուածք դարուց 'ի դարս են արգասիք քաղաքական սիրոյ. Սորին ևս պատճառք յայտնի են. Նա որ ըստ սկզբանց քաղաքական հաւատոց, կամ վստահութեան, այսինքն՝ ըստ իրաւանց և օրինաց և սովորութեանց և կարգաց առնէ զամենայն զիւր ձեռնարկութիւնս, յայտ է թէ չունի 'ի մտի իւրում խորհուրդ կամ նպատակ վնասելոյ ումեք. և այս յառաջ գայ 'ի սիրոյ. զի որ ոչն կամի վնասել ումեք՝ ունի սէր առ նա, ապա թէ ոչ զի՞ փոյթ էր նմա թէ վնաս ինչ ծագիցի նմա կամ ոչ. Արդ որ այսպէս 'ի սիրոյ առ մարդիկ չկամի վնասել ումեք, և օրինօք և արդարութեամբ զամենեցուն միտս հաճելով ասէ և առնէ զամենայն՝ այնպիսին ոչ միայն արդարութեամբ շահի, այլ և չկրէ վնաս փոխարէն յումեքէ, և ստացուածք նորա տեւեն դարուց 'ի դարս.

Ապաքէն ինքնին յայտ է թէ որ օրինօք և իրաւամբք շահի և ստանայ՝ ստացուած և շահ

այնպիսւոյն արդար են և ոչ անիրաւ. Այլ դժուարին է հաւանեցուցանել զբազումս թէ ստացուածք այնպիսւոյն տեւեն դարուց 'ի դարս։ Գիտեմք զի բազումք անիրաւութեամբ և զրկանօք դիզեն մեծութիւնս և ինչս բազումս. դարձեալ խոստովանիմք եւս թէ ոմանց արդար ստացուածք երբեմն փճանին և դրեթէ ջնջին իսկ. Այլ ճշմարտութիւն բանից մերոց թէ արդար ստացուածք տեւեն դարուց 'ի դարս՝ ոչ եղծանի դիպուածովք ինչ, այլ հակառակ անթիւ և անհամար դիպօք և օրինակօք հաստատի. զի անհամեմատ առաւելութեամբ բազում են օրինակք տեւելոյ արդար ստացուածոց դարուց 'ի դարս, իսկ անիրաւ ստացուածոց 'ի սակաւ ժամանակի բնաջինջ լինելոյ. և զայս ցուցանեն մեզ փորձառութիւն և պատմութիւնք, վճիռք գրոց սրբոց, նաեւ արանց իմաստնոց արտաքնոց, եւս և հաւանութիւն հասարակաց մտաց, մինչեւ մարթ է ասել թէ իբրև բնական իմն ազդումն և բնածին ինչ գաղափար է 'ի միտս ընդհանուր ամենայն մարդկան թէ արդար ստացուածք տեւեն և անիրաւքն եղծանին և ջնջին.



# ԳԼՈՒԽ Է․

*Ցաղագս արգասեաց բնական հաւատոյ, յուսոյ եւ սիրոյ։*

---

*Վասն արգասեաց ասացաք 'ի վեր անդր թէ զինչ են։ Դարձեալ խօսեցաք զարգասեաց քաղաքական հաւատոյ, յուսոյ և սիրոյ։ Այժմ կայ մեզ խօսել զարգասեաց բնական հաւատոյ, յուսոյ և սիրոյ։*

*Արդ արգասիք բնական հաւատոյ, յուսոյ և սիրոյ են՝ Արիութիւն և հանճար, բերկրութիւն սրտի և իշխանութիւն երկրի ազգէ յազգ։*

---

# ԳԼՈՒԽ Ը․

*Թէ զինչ իցէ Արիութիւն եւ Հանճար։*

---

*Զարիութիւնն սահմանեցաք 'ի վեր անդր․ աստ միւսանգամ կրկնել աւելորդ է։ Խօսեսցուք զհանճարոյ։ Հանճար է համեմատել ընդ միմեանս զգաղափարս զորս ըմբռնեն միտք․ Համեմատութիւնս այս յերիս ազգս բաժանի․ Առաջին՝ 'ի մեծէ առ փոքր․ Երկրորդ՝ 'ի փոքուէ առ մեծ․ Երրորդ՝ 'ի հաւասարէ առ հաւասար։*

Իսկ նշանակութիւն հանճարոյ է՝ գտանել հնարս, ելս իրաց. և որ ունի զայս հանգա֊մանս՝ կոչի հանճարեղ կամ հնարագէտ։

## ԳԼՈՒԽ Թ.

### Թէ զինչ իցէ բերկրութիւն սրտի։

Զբերկրութիւն ևս սահմանեցաք իբրև նշան այլուր. աստ երկրորդել աւելորդ համարիմք։ Ասասցուք միայն համառօտիւ թէ զինչ իցէ սիրտ։

Սիրտն է 'ի ներքս զգայուն կենդանեաց պատճառ և սկիզբն կենդանանալոյ մարմնոյ. զի հիւթն սնուցիչ որ է արիւն՝ 'ի սրտէ անտի բաշխի ընդ ամենայն անդամս առ 'ի նորոգել և պահպանել զմարմին որ պահի 'ի լուծանելոյ և յեղծանելոյ։ Զնիւթոյ կամ զմասանց որ բաղադրեն զմարմին, զդրից և զկազմածոյ նորա և զայլոց ևս հանգամանաց որ ունին վերաբերութիւն 'ի շրջան արեանն՝ թողումք խօսել բնագիտաց. շատ լիցի մեզ զոր ասացաքն 'ի նպատակ առաջիկայ գործոյս։

# ԳԼՈՒԽ Ժ.

*Թէ զինչ իցէ իշխանութիւն երկրի ազգէ յազգ ։*

---

Աստ ունիմք 'ի մտի խօսել նախ զիշխանութենէ թէ զինչ իցէ, երկրորդ զերկրէ, և ապա ասասցուք թէ զինչ իմանամք ազգէ յազգըն ասելով ։

Իշխանութիւն է կարողութիւն բարոյական զոր մարդիկ տան ումեք զի առնիցէ զամենայն ինչ որ պիտոյ է յապահովութիւն իւրաքանչիւրում 'ի նոցանէ, պարտս դնելով ազատ կամօք 'ի վերայ անձանց հնազանդել ամենայն հրամանաց և կարգադրութեանց նորա զոր ազատ կամօք կարգեն իշխան, միայն թէ հրամանքն և կարգադրութիւնք իցեն այնու նպատակաւ և յայն սակս՝ վասն որոյ տուաւ նմա իշխանութիւնն ։

Պարտ է գիտել զի իշխանութիւն ոչ է տէրութիւն. տէրութիւն նախ լինի 'ի վերայ անշունչ իրաց ըստ օրինի և 'ի վերայ գերեաց սովորութեամբ իւիք որ չէ օրինաւոր. երկրորդ՝ որ ինչ ընդ տէրութեամբ է՝ ստացուած է, և է 'ի պէտս և 'ի հաճոյս տեառնն կամ ստացչին. իսկ որ ինչ ընդ իշխանութեամբ է՝ հպատակ կամ հնազանդեալ է, և ոչ է 'ի պէտս և 'ի հաճոյս իշխողին, այլ զպէտս ինչ իւր,

այն է զապահովութիւնն, անձն ունի յիշխանէն · երրորդ՝ տէրութիւնն է բացարձակ և ոչ ընդ պայմանաւ · ուր իշխանութիւնն է ընդ պայմանաւ կամ թէութեամբ · չորրորդ՝ տէրութիւն ոչ բղխէ 'ի ստացուածոյն որ է առարկայ տէրութեան, իսկ իշխանութիւնն բխէ 'ի հպատակաց որ են առարկայ իշխանութեան ։

Ապա յայտ եղև թէ զի՞նչ իմանամք իշխանութիւնն ասելով ։ Իշխանութիւն կրկին է · հոգևոր և մարմնաւոր, կամ կրօնական և ժամանակաւոր, որ կոչի ևս եկեղեցական և աշխարհական ·

Հոգևորն իշխանութիւն ճշդիւ խօսելով ոչ է իշխանութիւն այլ պաշտօն իմն կամ իրաւունք որ համարի առեալ ուղղակի կամ անուղղակի ոչ 'ի մարդկանէ այլ 'ի գերագոյն տեառնէ հոգւոց՝ պատմել զկամս նորա մարդկան, պահանջելով հնազանդութիւն առ այն, ոչ ընդ մարմնաւոր այլ ընդ հոգևոր կամ հանդերձեալ պատժով ։

Առ հոգևորն իշխանութիւն պահանջին Չիրք հոգւոյ ընդ որում պարտին միացեալ լինել իմն թէութիւնք, նշանք, ճանաչմունք և յատկութիւնք հաւատոյ, յուսոյ և սիրոյ ։ Ուստի որ զհոգևորն իշխանութիւն ունին՝ պարտին ունել ժրութիւն համեստութեամբ, խոհեմութիւն պարկեշտութեամբ, արիութիւն խոնարհութեամբ, արդարութիւն շնորհօք ;

արքութիւն բարեխառնութեամբ կամ չափաւորութեամբ , ճշմարտութիւն յամենայնի , հաւատարմութիւն հանդերձ ողջախոհութեամբ , և վեհանձնութիւն հանդերձ պատրաստութեամբ և ողորմութեամբ ։ Դարձեալ պարտին խնդրել զհամակրութիւն 'ի հոգևոր և 'ի մարմնաւոր իշխանաց և 'ի հաճութենէ ժողովրրդեան , այլովքն հանդերձ ։ Ցասացելոց աստի յայտ է թէ 'ի պակասել հոգևոր իշխանութեան յայսմ ամենայնէ՝ որչափ չարիք ալրդին 'ի մատակարարութիւն և յայլ ամենայն իրս որ ունին կախումն զայնր իշխանութենէ ։

Մարմնաւորն իշխանութիւն է բուն իշխանութիւն , զի առեալ ունի իրաւունս 'ի ժողովրդենէ հրամայելոյ , օրինադրելոյ , փարելոյ և պատժելոյ մարմնաւոր պատժովք ։ Առ այս իշխանութիւն պահանջին ոչ միայն ձիրք հոգւոյ այլ և մարմնոյ , որպէս քաջութիւն , ուժ , այլովքն հանդերձ ։ Ընդ ձիրս ընդ այսոսիկ պարտին միացեալ լինել ամենայն թէութիւնք , նշանք , ճանաչմունք և յատկութիւնք հաւատոյ , յուսոյ և սիրոյ , որք առ ամենայն բան , գործ և իրողութիւն բանական մարդոյ պիտոյ են , որպէս յայտ յանդիման երեւի յասացելոց անտի ցարդ ։

Ջիարդ և իցէ օրինակ և ընդարձակութիւն իշխանութեան , եթէ՝ իցէ որդի 'ի հօրէ , եթէ ընտրութեամբ և եթէ այլազգ , եթէ ապատ իցէ և եթէ հարկատու և ընդ այլով իշ-

խանութեամբ, կանոնք և հանգամանք նորա պարտին լինել այնպէս որպէս առացաքն, այն է՝ ըստ ամենայն հանգամանաց հաւատոյ, յուսոյ և սիրոյ.

Այս հանգամանք այնպէս կարևոր են վասն իշխանութեան, զի բազում անգամ որ ունիցին զայն հանգամանս, թէև իցեն 'ի ստորին կարգէ, լինին արժանաւորք ամբառնալոյ յիշխանութիւն, որպէս վկայեն պատմութիւնք, նաև մեզէն իսկ տեսեալ եմք զփորձ.

Երկիր ասելով իմանամք զգունդս յորում մեք բնակեալ եմք. այլ երկրաւ չէ պարտ իմանալ զհողագունտն բնական, այլ զերկիր՝ ըստ որում է բնակութիւն և ստացուած ազգի մարդկան հանդերձ բաժանմամբք նորա, որպէս յայտ է յաշխարհագրութենէ.

Իսկ ազգէ յազգն ասելով իմանամք զլինելն որդւոց յորդիս, կամ ազգատոհմէ յազգատոհմ.



## ԳԼՈՒԽ ԺԱ.

*Թէ զինչ են պատճառք արգասեաց բնական հաւատոյ, յուսոյ եւ սիրոյ:*



Երեքին հանգամանք զորոց յերկս նախընթաց գլուխս ճառեցաք, այն է՝ արխութիւն

և հանճար, բերկրութիւն սրտի և իշխանութիւն երկրի ազգէ յազգ, են արդասիք. առաջինն բնական հաւատոյ, երկրորդն բնական յուսոյ և երրորդն բնական սիրոյ։

Բնական հաւատք, որպէս յիւրում տեղւոջ ասացաք, են ծնունդ գիտութեան, հմտութեան և արուեստից ըստ իրաց, ըստ տեղւոյ և ըստ ժամանակի։ Որքօք լինին ուղիղ և ճշմարիտ հաւատք մեր, այն է բանականութիւն լինի կատարեալ և հաստատուն. բնական յոյս մեր լինի աներկեւան, և 'ի տեսանել մարդկան 'ի մեզ զամենայն թէութիւնս, զնշանս, զճանաչմունս և զյատկութիւնս բնական հաւատոյ և յուսոյ, 'ի հարկէ բնականապէս սիրեն զմեզ։ Ի լինել բնական հաւատոց մերոց ուղիղ և ճշմարիտ՝ ստանամք արիութիւն և հանճար. 'ի լինել բնական յուսոյ մերոյ աներկեւան՝ ստանամք զբերկրութիւն սրտի, և 'ի լինել մերում սիրելի ամենեցուն վասն հաւատոյ, յուսոյ և սիրոյ մերոյ, իշխանութիւն մեր 'ի վերայ երկրի լինի մշտնջենաւոր և տեւական, այն է ազգէ յազգ։

Զբնական հաւատոյ, զյուսոյ և զսիրոյ տեսանք ուր ընդարձակագոյնս ճառեցաք։



# ԳԼՈՒԽ ԺԲ.

Յաղագս արգասեաց իմացական կամ բարոյական հաւատոյ, յուսոյ եւ սիրոյ։

---

Յայտ է 'ի ցուցակի անդ մերում զի արգասիք իմացական հաւատոյ, յուսոյ և սիրոյ են Զայն երանաւէտ, Տեսութիւն աստուածային և վայելումն անզրաւ փառաց։

Հարկ է մեզ խօսել զոցցունց սահմանելով զնոսա։ Արդարև դժուարին է յոյժ սահմանել զնոսա, զի ոչ անկանին ընդ զգայութեամբք, այլ 'ի հաւատոց միայն գիտեմք եթէ ճշմարիտ են նոքա։ Ապաքէն ըստ Եզնկայ վարդապետի՝ Յորժամ զաներեւութէն և զնորին զմշտնջենաւոր զօրութենէն ճառիցէ ոք, քանզի մարմնաւոր լեալ է, պարտի զմիտս յստակել, և ըզ խորհուրդս որբել, զլոյզս շարժմանց պարզել զի յայն զոր առաջի եդ՝ հասանել կարասցէ։ Նա և որ ընդ ճառագայթս արեգական հայել կամիցի՝ պարտի զպղտորութիւն աչացն, զաղտըն և զբիժն 'ի բաց պարզել, զի մի մթարքն որ զբբօք շողայցեն՝ արգել հայելոյ 'ի յստակութիւն լուսոյն լիցին։

Զայս արարեալ և մեր ըստ կարի՝ մխեսցուք 'ի խնդիր ճառիցս։

## ԳԼՈՒԽ ԺԳ.

Յաղագս երանաւէտ ձայնի։

---

Ձայն ասի բարբառ ինչ զոր լուեալ հասու լինիմք իմիք. իսկ երանաւէտ ձայն այն է որ առնէ զլսողն երանելի և երջանիկ։ Սովին ձայնիւ է զի սուրբք և արդարք և ամենայն ճշմարտասէրք ցնծան և բերկրին և լինին երանելի։ Ձայնս այս ոչ իբրև զձայն կամ զբարբառ մարմնաւոր իրաց յառաջ եկեալ է 'ի բախմանէ օդոյ, և ոչ նման երգոց և նուագաց և գեղգեղեալ ձայնից դուսանաց և նուագարանաց և իբրև զդայլայլիկս հաւուց. այլ է բարբառ իմանալի որ հնչէ գեղեցիկ յունկն հոգւոյ, և որք լսենն զայն ձայն ոչ կարեն կալ 'ի քուն և 'ի թմրութեան կամ 'ի մեռելութեան, այլ յառնեն և կենդանանան յաւիտենական կենօք։ Այս երանութիւն արդասիք են իմացական կամ բարոյական հաւատոյ զորմէ խօսեցաք 'ի վեր անդր։

---

## ԳԼՈՒԽ ԺԴ.

Յաղագս տեսութեան Աստուծոյ։

---

Տեսութիւնս այս այնպիսի է զոր չէ հնար մտաց մարդոյ ըմբռնել, ոչ պատմել զնմանէ, կամ տալ ինչ օրինակ կամ նմանութիւն։

վասն այնորիկ ասէ Առաքեալն թէ Ակն ոչ ետես, և ունկն ոչ լուաւ և 'ի սիրտ մարդոյ ոչ անկաւ ։ Նա որ ունի զիմացական կամ զբա-րոյական հաւատս և 'ի հաւատոյ անտի զլոյսն իմացական՝ 'ի հարկէ հասանիցէ այսմ սքան-չելի տեսլեան որ է վերջին պտուղ և արդա-սիք այնր յուսոյ յաջողելոյ նովին հաւատով ։

## ԳԼՈՒԽ ԺԵ·

### Յաղագս վայելման անզրաւ փառաց ։

Վայելումն է ստացումն կամ ժառանգու-թիւն իրիք ըստ բոլորին, որ անզրաւ բառիւ լաւ եւս յայտ առնի ։

Այս վայելումն անզրաւ փառաց, այն է փառաւորեալ լինել առանց վախճանի և կա-տարածի՝ արդիւնք են իմացականն կամ բա-րոյական սիրոյ ։ Որովհետև իմացական հաւատք են գիտութիւն զիմացական իրաց որոց առա-ջինն և գլխաւոր է Աստուած, էն և Գոյն մըշ-տընջենաւոր և անբաւ, ճշմարտութիւն, սըր-բութիւն, արդարութիւն և գեղեցկութիւն 'ի վեր քան զամենայն, անպատում և անճառ, և որ ունի առ նա հաւատս՝ յուսայ 'ի նա ոչ աներկեւան միայն այլ և անճառ և երանաւէտ յուսով, յայտ է թէ 'ի յուսոյ անտի ծնանի սէր յաւիտենական առ Նա ։ այս սէր է որ անդէն և անդ ածէ վայելումն անզրաւ փառաց ։

# ԳԼՈՒԽ ԺԶ.

**Թէ զինչ են պատճառք արգասեաց իմացական կամ բարոյական հաւատոյ, յուսոյ եւ սիրոյ։**

---

Պատճառք արգասեաց իմացական կամ
բարոյական հաւատոյ, յուսոյ և սիրոյ են նո-
րին իսկ հաւատոյ, յուսոյ և սիրոյ թէութիւնք,
պարագայք, նշանք, ճանաչմունք և յատկու-
թիւնք։

Նա որ ժիր է հանդերձ համեստութեամբ,
խոհեմ հանդերձ պարկեշտութեամբ կամ չա-
փով, արի հանդերձ խոնարհութեամբ՝ ունի
զթէութիւնս ուղիղ և ճշմարիտ հաւատոց, և
՚ի հաւատոյ անտի հարկաւ կրէ յոյս և սէր կա-
տարեալ։

Ժիրն հանդերձ համեստութեամբ գոր-
ծունեայ է ՚ի գործս բարիս. որ խոհեմն է հան-
դերձ պարկեշտութեամբ՝ քննէ, ընտրէ և գը-
տանէ զճշմարտութիւն և միշտ զայնր զհետ եր-
թայ։ Որ արին է հանդերձ խոնարհութեամբ՝
հանապազ յաղթող է ընդդէմ կրից ոգւոյ և
բազմանաց մարմնոյ, նոյնպէս յաղթէ և այնո-
ցիկ որ պաշարեալն են նովին զգայական կրիւք
և մարմնաւոր ախորժանօք։

Ժիրն և խոհեմ և արի՝ ընտրէ անձինս բա-
րեպաշտօնս և համակիր է ընդ նոսա, ուստի
և որոշէ զյարմարն տեղի, քննէ զժամանակս

և գտանէ զյաջողն. և 'ի վերայ այսր ամենայնի արդարութեամբ վարի ընդ ամենեսին, սիրէ զորբութիւն հանդերձ բարեխառնութեամբ, և կայ միայն յամենայնի 'ի ճշմարտութեան:

Դարձեալ ճանաչէ 'ի ձեռն նշանաց զհաւատսն և զհաստատացեալն, զյուսալին և զյուսացողն, զսէրն և զսիրող. և 'ի հաւատոյ, 'ի յուսոյ և 'ի սիրոյ անտի է միշտ 'ի բերկրութեան, և համբերէ ամենայն առժամանակեայ նեղութեան և անարգանաց, և համբերութեամբն պատրաստէ զանձն 'ի վայելս այնց առ որս ունի հաւատս, յոյս և սէր:

Է դարձեալ գթած, թողու և ների եւ ողորմի այլոց, մանաւանդ եթէ առ տգիտութեան և առ սխալմանց յանցուցեալ իցեն: Առ այսպիսին յիրաւի ասի թէ Եկ օրհնեալ, այլովքն հանդերձ. և դարձեալ՝ Մուտ յուրախութիւն Տեառն քո, ուր են ժառանգութիւնն և վիճակ իմացականն հաւատոյ, յուսոյ և սիրոյ, այսինքն՝ Ջայն երանաւէտ, Տեսութիւն Աստուածային և վայելումն անզրաւ փառաց:



# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

ԵՒ

ՎԵՐՋ



*Ցուցացելոց աստի մինչեւ ցարդ յայտ եղեւ եթէ կէտ նպատակի մերոյ է, որպէս եւ ասացաւ իսկ 'ի յառաջաբանի անդ, յանդիման կացուցանել գրութիւն գործնական յուղղութիւն բարոյական վարուց եւ գնացից ընկերական մարդոյ ։ Եւ զի չիք բարոյականութիւն առանց բանականութեան եւ անձնիշխանութեան, վասն այնորիկ խօսեցաք նախ զկարողութեանց մտաց եւ կամաց ։ Չիք տարակոյս եթէ իմացական կարողութիւնք 'ի մարդն կացուցանեն զպատուականագոյն եւ զբարձրագոյն մասն բնութեան մարդոյ ։ Բայց առանց երկբայութեան է դարձեալ եթէ գոյ 'ի բնութեան աստ մերում միւս եւս մասն, որ թէպէտ խոնարհագոյն քան զիմացականն, հզօր եւ ուժգին է. այն է՝ զգայականն մասն, որ եւ մերթ եղեալ կռուի ընդ առաջնոյն. նա՝ ոչ կռուի միայն, այլ եւ բազում անգամ յաղթէ իսկ եւ ածէ ստուերածս 'ի վերայ յստակութեան բանաւոր մասին ։*

*Ամենեցուն որ զբարոյականութենէ գրեցին՝ ջանք այն եղեն. բառնալ կամ մեղմել զհակառակութիւնն որ 'ի մէջ բանականին եւ զգայականին ։ Ոմանք կամեցան ջնջել իսպառ կամ սպանանել*

զգայական մասն . այլք , իմաստնագոյնք քան զնոսա , հնարեցան միայն 'ի չափու ունել զնա եւ արկանել ընդ իշխանութեամբ բանական մասին ։ Մեր եւս ջան այս է . ոչ բնաջինջ առնել խորհիմք զզգայականն որ անհնարին է , այլ տալ բանական մասին տիրել 'ի վերայ նորա ։

Եդեալ մեր զայս կէտ նպատակի , խորհեցաք պարզ եւ դիւրին օրինակաւ յօրինել զմեր դրութիւն ։ Եւ աւասիկ համառօտ յատակագիծ նորա ։

Դիմումն զգայականին է յերջանկութիւն կամ 'ի վայելումն . այնպէս զի զոր ինչ եւ առնէ մարդ կամ կրէ՝ յուսայ անտի զիւր երջանկութիւն կամ վայելս ինչ . եւ այդ բնական իմն է ։ Մեք զերջանկութիւն կամ զվայելս կոչեմք սէր , կամ սիրով իմանամք զայն . իսկ դիմումն այն որ բնականն է՝ ըստ մեզ ոչ այլ ինչ է եթէ ոչ յոյս . յոյս է որ ցուցանէ զվայելս եւ տայ ձկտել յայն ։ Եւ զի դիմումըն այն 'ի բնէ կոյր եւ անսանձ է , բազում անգամ , գրեթէ միշտ , գահավէժ անկանի յայն զոր վայելս եւ երջանկութիւն կարծէ անձին . ուստի եւ նման է նաւու որոյ չիցեն ոչ ղեկք եւ ոչ նաւապետ ղեկավար ։ Ամենեցուն յայտ է թէ իմացականութիւն կամ բանաւորն մասն որ է 'ի մարդն՝ պարտի վարել զպաշտօն ղեկաց եւ ղեկավարի . այս տեսութիւն ճշմարիտ է , այլ ունի ինչ թերութիւն . այն է զի իմացականութիւն հանդերձ իւրովք կարողութեամբք մեծամեծօք՝ ոչ ինչ է առանց հրահանգչի ։ Եւ հրահանգիչն այն է զոր մեք հաւատս կոչեցաք , եւ բազմեցուցաք իբրեւ դշխոյ , առաջ-

նորդ ; լոյս, այլովքն համդերձ։ Յառաջնորդել յուսոյ 'ի հաւատոց՝ սէրն լինիցի ճշմարիտ․ այս է սկիզբըն մեր բացատրեալ․ մերով արուեստականն լեզուաւ, եւ առաւելն ասել կամիմք եթէ յառաջնորդել բնական դիպման զգայականութեան յիմացականութենէ լուսաւորելոյ գիտութեամբ (զգիտութիւն աստ ընդարձակ մտօք առնումք՝) երջանկութիւնն եւ վայելք լինին հաւատոյ․ եւ ապա զհետ գայ թէ մարդն լինի զերծ 'ի վնասուց։ Այս է աւասիկ յատակագիծ դրութեան մերոյ։

Առաջնորդեալ մեր 'ի փորձառութենէ եւ 'ի դիտողութենէ՝ խօսեցաք մանր զայնմ ամենայնէ որ են անհրաժեշտ կարեւոր հաւատոյ, կամ որ են տարերք նորա, յերիս դիրս կամ 'ի կացութիւնս մարդոյ, 'ի բնականին, յիմացականին կամ 'ի բարոյականին եւ 'ի քաղաքականին։ Զնոյն արարաք ըզ յուսոյ եւ սիրոյ իբրեւ բխելոց կամ ծագելոց 'ի հաւատոյ։

Արդ 'ի մերում դրութեան, թուի մեզ, մարդն 'ի բնէ զգայական՝ երեւի հաւատովք լեալ ճշմարիտ բանական, այն է մարդ՝ որոյ դիմումն (յոյս) յերջանկութիւն եւ 'ի վայելս իւր․ ('ի սէր) ուղիղ եւ անվրէպ է․ եւ զի կարեւոր է մարդոյ ճանաչել յանձին եւ յայլս զմարդ այնպիսի, զայս ցուցանեն թէութիւնք, նշանք, ճանաչմունք եւ յատկութիւնք հաւատոյ, յուսոյ եւ սիրոյ։ Զվիճակ կամ զբնաւորութիւն մարդոյ այնպիսւոյ ցուցաք 'ի վերջոյ համառօտիւ 'ի մասին որ 'ի վերայ արգասեաց։

Աւասիկ բովանդակութիւն մատենիս։ Որք մի-

# ՑԱՆԿ ՄԱՏԵՆԻՍ







## ԳԻՐՔ ԱՌԱՋԻՆ



## ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ



## ԳԻՐՔ ԵՐՐՈՐԴ



## ՎՐԻՊԱԿՔ

| ԵՐԵՍ | ՏՈՂ | ՍԽԱԼ | ՈՒՂԻՂ |
|---|---|---|---|
| 32. | 19. | եա. | եւա. |
| 50. | 23. | հատոց. | հաւատոց. |
| 72. | 9. | առանց. | արանց. |
| 93. | 17. | բարձրագոյն. | ստորին. |
| 98. | 12. | կանոնաւոր. | անկանոն. |
| 98. | 13. | 3) 2) 1) կանոնաւոր. | 3) 1) 2) անկանոն. |
| 195. | 2. | սիրոյ. | յուսոյ. |



## ԱՆՈՒԱՆՔ

### ՈՒՍՈՒՄՆԱՍԷՐ ԲԱՐԵՐԱՐԱՑ ՈՐ ՆՊԱՍՏ ԵՂԵՆ ԾԱԽՈՒՑ ՏՊԱԳՐՈՒԹԵԱՆ ՄԱՏԵՆԻՍ

ՔԱԺԻՆՔ

1․ Նարվերցի Պօղոս աղա Զաքարեան․

1․ Սեբաստացի Նշան աղա Խաչատուրեան Թաշճիեանց․

1․ » Մարտիրոս աղա Մ․ Մանուկեան Մեծմօրուքեանց․

1․ » Յովհաննէս աղա Աղապապեան Եազըճիեանց․

1․ » Օհան աղա Գալիկեան տէր Գապեանց։

1․ » Յովակիմ աղա տէր Յովհաննէսեան Վարժապետեանց․

2․ » Գերապատիւ Պետրոս վարդապետ Թահմիզճեանց․

1․ » Մ․ Ոսկեան աղա Մ․ Յարութիւնեան Մեծմօրուքեանց․

1․ » Խաչատուր աղա Մ․ Յովսէփեան Փանիկեանց․

1․ » Արժանապատիւ Յովհաննէս վարդապետ Մեսիեանց․

1․ » Արժանապատիւ Կարապետ վարդապետ Յովհաննէսեան․

1․ » Նշան եւ Կարապետ աղայք Զատրճիեանց․

1․ » Սարգիս աղա Կարապետեան Պէնկէօլեանց․

1․ » Կիւրեղ աղա Մ․ Աղապապեան Օտապաշեանց․

3․ Կ․ Պօլսեցի Մ․ Ճանիկ աղա Մ․ Սարգիսեան․

1․ » Ալիքսան աղա Համբարձումեան․

1. Կ. Պօլսեցի Յովհաննէս աղա Միքայէլեան ։
1. » Բարերար ոմն .
1. » Պուչագճեան Յարութիւն աղայի որդի 'ի տէր հանգուցեալ Եղիազար աղայի կտակն .
1. Տէվէքսեցի պարոն Սարգիս Տէրտէրեանց .
1. Թօտօրակցի տիրացու Մուրատ տէր Առաքելեան Ճոփոյեանց .
1. Արմուտանցի Կարապետ աղա Գաբրիէլեան Մաղիկեանց .
1. Թօտօրակցի Մ. Գալուստ Մ. Յարութիւնեան .
1. Թօտօրակցի պարոն Կարապետ Դաւթեան .
1. Թուզլասարցի պարոն Վարդան Յովհաննէսեան .
1. Թուզլասարցի պարոն Յովհաննէս Մկրտիչեան .
1. Ակնեցի Ստեփան աղա Դաւիթեան Մ. Դաւթեանց.
2. Քարհատու Ս. Աստուածածնի Ընկերութիւնն.
1. Սեբաստացի Մ. Յարութիւն Մուրատեան Ջօփապուռունեանց .
1. Ակնեցի Աւետիս եւ Մարտիրոս աղայք Քօլօլեանց.
1. Սեբաստացի Յակոբ եւ Օհան աղայք Մ. Շահինեան .
1. Եւդոկիացի Կարապետ եւ Յովհաննէս աղայք Սարգիսեան Խէտէմեանց .
1. Սեբաստացի պարոն Անդրանիկ Վարդանեան .
1. Սեբաստացի պարոն Տիգրան Յակոբեան Ահարոնեանց .
1. Քարհատցի Կարապետ Անդրէասեան .
1. Գինկէօլու Ս. Յակոբայ եկեղեցւոյն ընկերութիւնն.
1. Քարհատցի պարոն Մարգար Գարասմեան .
1. Խօրասանացի պարոն Գարասմ Յարութիւնեան .

